

*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1.1978

# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս
ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենա-
գրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդ-
վածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի
տեսությունները՝ 6—8 էջ։
Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հա-
յաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան
ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։
Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հե-
ղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը,
հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդ-
վածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ
է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։
Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկա-
վարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչնե-
րի աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղ-
վածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատու-
թյունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։
Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործ-
ված աղբյուրների համառոտ ցանկը։
Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդ-
վածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված
լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։
Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**1**

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՀՈՒՆՎԱՐ 1978
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



---








# Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## «ՊՐԱՎԴԱ»-Ի ԹՂԹԱԿՑԻ ՀԱՐՑԵՐԻՆ

ՀԱՐՑ: Այժմ, 1977 թվականի ավարտին, Ձեր կարծիքով, ի՞նչն է ամենից ավելի բնութագրում մեր երկրի միջազգային դրությունը, խաղաղության և լարվածության թուլացման օգտին գործադրվող նրա ջանքերը:

ՊԱՏԱՍԽԱՆ: Հենց վերջերս, հոբելյանական հանդիսությունների օրերին ես առիթ ունեցա բավական հանգամանորեն անդրադառնալ Սովետական Միության միջազգային դրության տարբեր կողմերին: Այնպես որ, կառանձնացնեմ միայն մի քանի մոմենտներ:

Նախ և առաջ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի տոնակատարությունը, ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունումը դարձան միջազգային ասպարեզում Սովետական Միության բարձր հեղինակության, համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա նրա անողազդեցության վառ ցույց: Աշխարհը վերստին համոզվեց, որ Հոկտեմբերի ծնունդ հանդիսացող պետությունը միջազգային ասպարեզում հետևողականորեն, սկզբունքորեն և մեծ հաջողությամբ է վարում ժողովուրդների բարեկամության ու խաղաղության քաղաքականությունը, ազնիվ ու արդարացի քաղաքականությունը: Մի խոսքով՝ այնպիսի քաղաքականություն, ինչպիսին որ պետք է վարի սոցիալիզմի երկիրը՝ Լենինի հայրենիքը:

Հոբելյանի օրերին մեր կողմից առաջ քաշված արտաքին քաղաքական նոր նախաձեռնությունները լայն և, ամբողջությամբ վերցրած, դրական արձագանք գտան: Դրանցից մի քանիսը արդեն գործնական շրջանառության մեջ են դրված, քննարկվում են տարբեր համաժողովներում, ներառյալ Միավորված ազգերի կազմակերպությունը և Բելգրադի հանդիպումը:

Սովետական Միության ջանքերն առաջիկայում ևս նպատակամղված կլինեն մինչև վերջ վերացնելու միջուկային պատերազմի սպառնալիքը, միջազգային հարաբերություններում տեղի ունեցող լավ փոփոխությունները դարձնելու կայուն, խորացնելու լարվածության թուլացումը, ընդլայնելու պետությունների խաղաղ համագործակցությունը:

Այս կապակցությամբ կցանկանայի հույս հայտնել, որ մոտ ժամանակներս Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարելիք իմ այցը, կանցլեր Շմիդտի հետ բանակցությունները կծառայեն ո՛չ միայն մի շարք բնագավառներում սովետա-արևմտագերմանական համագործակցության հետագա զարգացման գործին, այլև Եվրոպայում լարվածության թուլացման և խաղաղության առավել լայն շահերին:

Բառացիորեն օրերս ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեան ընդունեց շատ կարևոր և խիստ ժամանակին ընդունված մի փաստաթուղթ՝ դեկլարացիա, որը հատկապես նվիրված է միջազգային լարվածության թուլացման պրոցեսը խորացնելու և ամրապնդելու անհրաժեշտությանը: ՄԱԿ-ի անդամ բոլոր պետությունները, Չինաստանից և Ալբանիայից բացի, քվեարկեցին այդ դեկլարացիայի օգտին: Դա համաշխարհային կարծիքի վատ հայելի չէ: Նա ճշմարտացիորեն է արտացոլում ժողովուրդների լարվածության թուլացման ու խաղաղության ձգտումը: Իսկ որքան ուրիշ կոնկրետ և, ընդգծում եմ, ռեալորեն իրագործելի առաջարկություններ է արել Սովետական Միությունը, մասնավորապես, զինաթափման բնագավառում: Այդ ամենը կոմունիստական կուսակցության և սովետական պետության վարած արտաքին քաղաքականության դինամիկության և արդյունավետության համոզիչ վկայությունն է:

ՀԱՐՑ: Ցանկալի կլիներ իմանալ Ձեր կարծիքը, թե ինչպե՞ս են դասավորվում գործերը զինաթափման հարցերում:

ՊԱՏԱՍԽԱՆ: Արտաքին քաղաքական աշխատանքի մի այնպիսի կարևոր բնագավառ, ինչպիսին զինաթափումն է, մշտապես գտնվում է Կենտկոմի, նրա քաղբյուրոյի տեսադաշտում: Այս առումով, հասկանալի պատճառներով, ներկայումս կարևոր տեղ են գրավում հարձակողական ստրատեգիական սպառազինությունները սահմանափակելու սովետա-ամերիկյան բանակցությունները: Այդ բանակցությունները մինչև հաջող ավարտ հասցնելու պատրաստակամության պակաս մենք չենք զգում: Դրա համար, մեր կարծիքով, հնարավորություններ կան, ես կասեի նույնիսկ՝ լավ հնարավորություններ: Դատելով որոշ հայտարարություններից, ամերիկյան կողմը նույնպես որոշակի լավատեսություն է արտահայտում: Ցանկալի կլիներ, որ դա ամրապնդվեր նրա գործնական քայլերով: Կարծում եմ, որ նոր համաձայնագիրը մեծ ու լավ գործ կլինի ինչպես ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի համար, այնպես էլ ընդհանուր խաղաղության համար:

Ներկայումս զինաթափման բնագավառի բանակցությունները ընդգրկում են հարցերի մի լայն սպեկտր՝ բոլոր միջուկային փորձարկումների դադարեցումից և պատերազմ մղելու քիմիական միջոցների արգելումից մինչև Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման պրոցեսի ամրապնդում և ռազմական գործունեության կրճատում Հնդկական օվկիանոսի գոտում: Այս հարցադրումներում նախաձեռնությունը զգալի, եթե չասենք գերակշռող չափով, պատկանում է Սովետական Միությանը: Գլխավորն այժմ այն է, որ զինաթափման բանակցություններից անցում կատարվի ռեալ քայլերի, որոնք նշանավորեն զինաթափման սկիզբը: Դա, և միայն դա կարող է իսկապես պատասխանել ժողովուրդների իղձերին, որոնք կայուն խաղաղություն են տենչում և վճռականորեն դատապարտում նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը մեծացնելու գործողությունները, դատապարտում սպառազինությունների մրցավազքը:

Իսկ նման գործողություններ կատարվում են: Այլ կերպ ինչպես գնահատել, օրինակ, սպառազինությունների մրցավազքի ուժգին խթանումը ՆԱՏՕ-ի ռազմական դաշինքում: Դա անչափ վտանգավոր միտում է մարդկության համար: Դա է՛լ ավելի վտանգավոր է դառնում, որովհետև երևան են գալիս պատերազմ վարելու ավելի ու ավելի բարբարոսական միջոցներ:

Վերցնենք, օրինակ, նեյտրոնային ռումբը: Ներկայումս աշխարհին համառորեն պարտադրում են այդ անմարդկային զենքը, որն առանձնապես վտանգավոր է նրանով, որ այն ներկայացնում են որպես «տակտիկական», գրեթե «անմեղ»: Դրանով իսկ փորձում են ջնջել սովորական և միջուկային զենքի միջև եղած սահմանը, ժողովուրդների համար արտաքուստ ասես աննկատելի դարձնել անցումը միջուկային պատերազմի: Դա ամենաիսկական կեղծիք է, ժողովուրդների խաբեություն:

Նեյտրոնային ռումբը համառորեն առաջարկում են տեղաբաշխել Արևմտյան Եվրոպայում: Ինչ կա որ, թերևս նրանք, ովքեր հեռու են ապրում Եվրոպայից, դրան հեշտ ու հանգիստ են վերաբերվում: Սակայն եվրոպացիները, որոնք, պատկերավոր ասած, ապրում են նույն հարկի տակ, պետք է ենթադրել, որ այլ կարծիքի են: Նրանց հազիվ թե ձեռնտու լինի, որ իրենց այդ ընդհանուր տանիքին, որն առանց այդ էլ ճկվում է զենքի հսկայական ծանրության տակ, լրացուցիչ վտանգավոր բեռ դրվի:

Սովետական Միությունը վճռականորեն դեմ է նեյտրոնային ռումբի ստեղծմանը: Մենք հասկանում և լիովին պաշտպանում ենք աշխարհի բոլոր ծայրերի միլիոնավոր մարդկանց ձայնը, որոնք բողոքում են դրա դեմ: Բայց եթե այդ ռումբը ստեղծվի Արևմուտքում, ստեղծվի մեր դեմ, մի բան, որ ոչ ոք նույնիսկ չի թաքցնում, ապա այնտեղ պետք է իրենց պարզ հաշիվ տան, որ ՍՍՀՄ-ը պասիվ հայեցողի դերում չի մնա:

Մենք կկանգնենք այդ մարտահրավերին պատասխան տալու անհրաժեշտության առջև՝ սովետական ժողովրդի, նրա դաշնակիցների և բարեկամների



անվտանգությունն ապահովելու նպատակով: Վերջին հաշվով այդ ամենն է՛լ ավելի վտանգավոր մակարդակի կհասցնի սպառազինությունների մրցավազքը...

Մենք դա չենք ցանկանում, ուստի և առաջարկում ենք պայմանավորվածության գալ նեյտրոնային ռումբի արտադրությունից փոխադարձաբար հրաժարվելու շուրջը, որպեսզի աշխարհը փրկվի մարդկանց մասսայական ոչնչացման այդ նոր զենքի երևան գալուց: Այսպիսին է մեր անկեղծ ցանկությունը, այսպիսին է մեր առաջարկությունը Արևմուտքի տերություններին:

ՀԱՐՑ: Ի՞նչ կարելի է ասել Մերձավոր Արևելքի իրադրության ներկայիս զարգացման մասին:

ՊԱՏԱՍԽԱՆ: Մերձավորարևելյան գործերը սուր պրոբլեմ են: Վերջին ժամանակներս նրանում փոփոխություններ տեղի ունեցան, ընդ որում, ցավոք, բացասական կարգի: Եվ դրանք տեղի ունեցան այն ժամանակ, երբ թվում էր, թե գործն ընթանում է դրականորեն՝ դեպի Ժնևի հաշտության կոնֆերանսի հրավիրում, և այդ նպատակով ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի՝ որպես կոնֆերանսի համանախագահների համատեղ ջանքերով շատ բան էր արված: Մինչդեռ այսօր իրադրությունը խիստ բարդացել է:

Ժնևի կոնֆերանսի հրավիրումը և Մերձավոր Արևելքի պրոբլեմի համընդհանուր կարգավորումն է՛լ ավելի դժվարացան:

Վերջին ժամանակներս Մերձավոր Արևելքում տեղի ունեցած իրադարձությունների ընթացքը հայտնի է: Այստեղ ես կկամենայի շեշտել միայն հետևյալը: Սովետական Միությունը հետևողականորեն հանդես է եկել և հանդես է գալիս հօգուտ աշխարհի այդ շրջանում համապարփակ կարգավորման, որին պետք է մասնակցեն շահագրգռված բոլոր կողմերը, ներառյալ, բնականաբար, նաև Պաղեստինի ազատագրման կազմակերպությունը: Կարգավորում, որը նախատեսեր իսրայելական զորքերի դուրսբերում 1967 թվականին օկուպացված բոլոր արաբական տերիտորիաներից, Պաղեստինի արաբ ժողովրդի անկապտելի իրավունքների, ներառյալ նրա ինքնորոշման, սեփական պետության ստեղծման իրավունքի իրականացում. կոնֆլիկտին անմիջականորեն մասնակցող բոլոր պետությունների՝ ինչպես Իսրայելին հարևան արաբական պետությունների, այնպես էլ Իսրայելի պետության անկախ գոյության և անվտանգության իրավունքի ապահովում, պատերազմական վիճակի դադարեցում համապատասխան արաբական երկրների և Իսրայելի միջև: Միայն այս սկզբունքային դրույթների կենսագործման դեպքում Մերձավոր Արևելքում հաշտությունը կլինի իրոք ամուր և ոչ թե կդառնա սոսկ երերուն զինադադար:

Մենք ամենևին այն կարծիքին չենք, թե Իսրայելին միակողմանի զիջումներ անելու և նրա հետ անջատ բանակցություններ վարելու ուղին, ինչպես օրինակ, Եգիպտոսի և Իսրայելի ղեկավարների տխրահռչակ բանակցությունները, հանգեցնում են այդ նպատակին: Ընդհակառակը, դա հեռացնում է դրանից, խոր պառակտում ստեղծելով արաբական աշխարհում: Դա իսկական կարգավորումը վիժեցնելու, նախ և առաջ նախքան Ժնևի կոնֆերանսն սկսվելը այն խափանելու գիծ է:

Իսկ, այսպես կոչված՝ ուղղակի բանակցությունների, այսինքն՝ Իսրայելի հարձակմանը ենթարկված երկրներից յուրաքանչյուրի հետ նրա բանակցությունների երևակայական «առավելությունների» գովաբանումը, ըստ էության, ոչ այլ ինչ է, քան մի փորձ՝ արաբներին զրկելու ուժից, որը նրանց միասնության և բարեկամական պետությունների կողմից նրանց արդար գործը պաշտպանելու մեջ է:

Այդ իսկ պատճառով ՍՍՀՄ-ը կողմնակից է Ժնևի կոնֆերանսի հրավիրման, ընդ որում, այնպիսի պայմաններում, որոնք բացառեին նրա վերածվելը մի վարագույրի, որը քողարկեր անջատ գործարքները ի վնաս արաբների շահերի և արդարացի ու կայուն խաղաղության գործի: Այսպիսին է մեր դիրքորոշումը: Այն լիովին պաշտպանում է սովետական ժողովուրդը, և այն արժանանում է ողջ աշխարհի խաղաղասեր ուժերի հավանությանը:

(«ՊՐԱՎԴԱ», 24 դեկտեմբերի 1977 թ.)

# ՀԱՐՎԱԾԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ ԱՄՐԱՊՆԴԵՆՔ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ երկրորդ տարին՝ 1977 թվականը, մեր հայրենիքի, կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի պայքարի ու հաղթանակների հերոսական տարեգրության մեջ մտավ որպես Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի տոնակատարության, զարգացած սոցիալիզմի իսկական մանիֆեստի՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման տարի։*

*Այդ կարևորագույն իրադարձությունները, ՍՍՀՄ Գերագույն սովետի յոթերորդ արտահերթ նստաշրջանում, մեծ Հոկտեմբերին նվիրված հոբելյանական հանդիսավոր նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ Ի. Բրեժնևի խորիմաստ զեկուցումները քաղաքական և աշխատանքային աննախադեպ վերելք առաջացրին մեր լայնածավալ հայրենիքի բոլոր անկյուններում։ Ամենուրեք նոր թափով ծավալվեց համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ լենինյան կուսակցության կանխագծումները ժամկետից շուտ կատարելու համար։ Անձնվեր և ոգեշունչ աշխատանքը տվեց իր դրական արդյունքը. մեր երկրի աշխատավորները տնտեսական տարին ավարտեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, կուլտուրայի ու գիտության բնագավառում ձեռք բերած մեծ հաջողություններով։*

*Սովետական ժողովուրդն իր նվաճումների համար օրինական հպարտության զգացումով է թևակոխել 1978 թվականը։ Անցած տարում ՍՍՀՄ ազգային եկամուտն ավելացել է 8,4 տոկոսով, արդյունաբերական արտադրության աճը, պլանով նախատեսված 5,6-ի փոխարեն, կազմեց 5,8 տոկոս, իսկ ամբողջությամբ վերցրած՝ հնգամյակի երկու տարվա ընթացքում՝ 10,9 տոկոս, յուրացվեցին մոտ 7 հազար նոր արտադրատեսակներ։ Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումից ստացվեց 6 մլրդ ռուբլու խնայողություն, շուրջ 45 հազար արտադրատեսակներ արժանացան պետական որականիշի։ Հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 7,4 տոկոսով, դրա հաշվին ստացվեց արդյունաբերական արտադրանքի ամբողջ աճի գրեթե երեք քառորդը։*

*Գյուղատնտեսության համախառն արտադրանքի 1976—1977 թթ. տարեկան միջին ծավալը նախորդ հնգամյակի առաջին երկու տարվա համեմատությամբ մեծացավ 6,6 տոկոսով։ Հացահատիկի տարեկան միջին արտադրությունը, իններորդ հնգամյակի 181,6 մլն տոննայի դիմաց, կազմեց 209,6 մլն տոննա։ Անցած տարում ստացվեց բամբակի ռեկորդային բերք՝ 8,7 մլն տոննա։ Երկու տարում կատարվեցին մեծ ծավալի շինարարական աշխատանքներ, ժողովրդական տնտեսության զարգացման գործում ներդրվեց 240 մլրդ ռուբլի, հիմնական ֆոնդերն ավելացան 14 տոկոսով։*

*Հաջողությամբ իրականացվում է ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալական ծրագիրը։ Անշեղորեն բարձրանում են բնակչության ռեալ եկամուտները. մեկ շնչի հաշվով դրանց աճը երկու տարում կազմեց 7 տոկոս, ամբողջ երկրում լիովին ավարտվեց աշխատավարձի նվազագույն չափի բարձրացումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ 1976—77 թվականներին կառուցվեց ավելի քան 216 մլն քառակուսի մետր բնակտարածություն, որը թույլ տվեց բարելավել 22 մլն մարդու բնակարանային պայմանները։*

*Հոբելյանական տարին աշխատանքային նոր նվաճումներով ավարտեցին և նոր՝ 1978 թվականը արտադրական վերելքով ու բարձր տրամադրությամբ սկսեցին նաև Սովետական Հայաստանի աշխատավորները, որոնք, հավատարիմ լենինյան կուսակցության գաղափարներին, հետևողականորեն իրագործում են ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների որոշումները։*

*Ակտիվորեն մասնակցելով արդյունավետության և որակի հնգամյակի պետական պլանների կատարման համար մղվող համաժողովրդական պայքարին, հանրապետության արդյունաբերության աշխատողները ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 23-ին զեկուցեցին արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության և իրացման տարեկան պլանը կատարելու մասին։ Հնգամյակի առաջին երկու տարում արտադրության ծավալը, պլանով նախատեսված 15,7 տոկոսի դիմաց, աճեց 17 տոկոսով, որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի արտադրությունն ավելացավ գրեթե երկու անգամ և կազմեց թողարկվող արտադրանքի ընդհանուր ծավալի 10 տոկոսը։*

*Զգալի հաջողությունների հասան հանրապետության գյուղատնտեսության աշխատողները՝ ժամկետից շուտ կատարելով և գերակատարելով գյուղատնտեսական մթերքների վաճառքի պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները։ 1977 թ. հացահատիկի մթերումների պլանը կատարվեց 159,3 տոկոսով, բանջարեղենինը՝ 109,2, խաղողինը՝ 100,2, պտուղներինը՝ 120,5, շաքարի ճակնդեղինը՝ 160 տոկոսով և այլն։ Նոր բնագծերի հասան անասնապահները։ Հնգամյակի երկու տարում գյուղատնտեսական արտադրության միջին տարեկան ծավալը, անցած հնգամյակի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, մեծացավ 17,2 տոկոսով։ Հանրապետության հողագործների աշխատանքային հաղթանակի առթիվ նրանց ջերմորեն շնորհավորեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևը։ Կոմունիստական կուսակցության և սովետական պետության ղեկավարի ողջույնի նամակն առաջ բերեց հանրապետության հողագործների, ողջ աշխատավորների արտադրական և քաղաքական ակտիվության նոր վերելք։*

*Անցած տարին արդյունավետ եղավ նաև հանրապետության շինարարների համար, որոնք կառուցեցին և շահագործման հանձնեցին արտադրական տասնյակ նոր օբյեկտներ, 1.363 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, 30 հազար աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ, 5,6 հազար տեղով նախադպրոցական հիմնարկներ և այլն։*

*Հոբելյանական տարում Հայաստանի աշխատավորների ձեռք բերած նվաճումների, ինչպես նաև առաջիկա անելիքների մասին գործարար խոսակցություն տեղի ունեցավ ՀԿԿ Կենտկոմի դեկտեմբերի 19-ին տեղի ունեցած պլենումում, որտեղ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1977 թ.) պլենումի արդյունքների, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևի ելույթից բխող՝ հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը։ Միահամուռ հավանություն տալով ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներին, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում շարադրված դրույթներին ու հետևություններին, ՀԿԿ Կենտկոմի պլենումը միաժամանակ սահմանեց հանրապետության կուսակցական, պետական, տնտեսական մարմինների և հասարակական կազմակերպությունների կոնկրետ խնդիրները։ Պլենումը, վերլուծելով հնգամյակի երկու տարվա արդյունքները, քննարկեց նաև Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման 1978 թ. պետական պլանն ու բյուջեն, հավանություն տվեց դրանց և ներկա-*

լացրեց ՀՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ նստաշրջանի քննարկմանը։ Հանրապետության բարձրագույն օրգանը հաստատեց դրանք և նրանց տվեց օրենքի ուժ։

Տասներորդ հնգամյակի անցած երկու տարում տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում սովետական մարդկանց անձնվեր աշխատանքով ձեռք բերված նվաճումներն ու մեծագործությունները հաստատուն նախադրյալներ և ամուր հիմք են 1978 թվականին երկրի առջև ծառացած խնդիրների հաջող լուծման համար։ Երկրի տնտեսական և սոցիալական զարգացման ընթացիկ տարվա պետական պլանը, որ լիովին համապատասխանում է ՍՄԿԿ XXV համագումարի մշակած տնտեսական, սոցիալ-կուլտուրական զարգացման ուղղություններին, կապահովի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի առաջընթացը, երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդումը, ժողովրդի բարեկեցության մակարդակի բարձրացումը։

Իրենց ծավալով ու բարդությամբ ավելի մեծ են այն խնդիրները, որ դրվում են մեր երկրի աշխատավորների առջև հնգամյակի երրորդ տարում։ Դրանք պահանջում են ուժերի և ունակությունների գերագույն լարում, քրտնաջան և կազմակերպված աշխատանք։ Սակայն դրանց անթերի կատարման համար անհրաժեշտ է նաև խորապես վերլուծել և հիմնովին հաղթահարել այն բոլոր թերությունները ու բացթողումները, որոնք գոյություն ունեն ժողովրդական տնտեսության զարգացման գործում և խոչընդոտում են մեր երկրի սոցիալական առաջընթացը։ Ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը, դեռևս անբավարար են բացահայտվում և օգտագործվում ներքին ռեզերվները, դանդաղ են իրացվում արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, նոր կարողությունների գործարկման, արտադրանքի որակի բարձրացման ու ինքնարժեքի իջեցման առաջադրանքները, փոշիացվում են միջոցները, չեն կատարվում մի շարք արտադրատեսակների թողարկման պլանները, թույլ են տրվում պլանային և պայմանագրային կարգապահության խախտումներ։

Ելնելով ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառի դրույթներից և հետևություններից, պլենումը խնդիր դրեց կուսակցական կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների, սովետական, տնտեսական, կոմերիտական ու արհմիութենական բոլոր կազմակերպությունների առջև՝ ուշադրությունը կենտրոնացնել արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, ստեղծված տնտեսական պոտենցիալը ռացիոնալ օգտագործելու, կապիտալ ներդրումները գործարկվելիք կարևորագույն օբյեկտներում համակենտրոնացնելու և հիմնական ֆոնդերը ժամանակին գործարկելու, գիտատեխնիկական առաջընթացն ըստ ամենայնի արագացնելու և արտադրությունն ինտենսիվացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, խնայողության ռեժիմն ուժեղացնելու խնդիրների գործնական լուծման վրա՝ ի շահ սովետական ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներից, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառի դրույթներից լուրջ հետևություն պետք է անեն նաև մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները, տնտեսական, սովետական ու պլանային մարմինները։ Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1977 թ.) պլենումում, տասներորդ հնգամյակի երկու տարում մեր հանրապետության աշխատավորների ձեռք բերած հաջողություններն ավելին կլինեին, եթե տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման գործում, կուսակցական աշխատանքներում չլինեին էական թերություններ։ Իսկ դրանք քիչ չեն։ Բավական է նշել, որ 1977 թ. տասնմեկ ամիսների ընթացքում հանրապետության 59 արդյունաբերական ձեռնարկություններ չէին կատարել արտադրանքի թողարկման և իրացման, իսկ 77-ը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման պետական պլանները։ Արդյունաբերական մի շարք ճյուղեր ետ են մնում հնգամյա պլանով նախատեսված աճի տեմպերից։ Դեռևս դանդաղ է արմատավորվում նոր տեխնիկան, առաջավոր տեխնոլոգիան, վատ է կատարվում տեխնիկական վերազինումը։ Մի շարք արդյունաբերական ձեռնարկություններում թույլ են տրվում նյութական ռեսուրսների



մեծ կորուստներ, անբավարար է պայքարը արտադրանքի մեկ միավորի վրա կատարվող նյութական և աշխատանքային ծախսումները նվազեցնելու, խնայողության խիստ ռեժիմ հաստատելու համար։ Իսկ այս ամենը հետևանք է այն բանի, որ կուսակցական կազմակերպությունները, սովետական, տնտեսական մարմինները հետևողական աշխատանք չեն տանում և անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում հանրային արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու, եղած ռեզերվներն ու սարքավորումները լրիվ կարողությամբ օգտագործելու, հումքն ու վառելիքը խնայողաբար ծախսելու, հանրային արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը, ինչպես նաև աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու համար։

Լուրջ թերություններ կան կապիտալ շինարարության բնագավառում։ Պլանային առաջադրանքները չեն կատարում արդյունաբերական, գյուղական շինարարության մինիստրությունները, «Գլխհատուկմոնտաժշին»-ի մի շարք տրեստներ, վարչություններ և այլ կազմակերպություններ, խիստ ետ է մնում հիմնական ֆոնդերի և արտադրական կարողությունների գործարկումը։ Շատ օբյեկտներում ցածր է շինմոնտաժային աշխատանքների որակը։ Շարունակվում է նյութական և աշխատանքային ռեսուրսները բազմաթիվ օբյեկտների վրա փոշիացնելու պրակտիկան, չարդարացված կերպով աճում են անավարտ շինարարության ծավալները։ Առանձին կապալառու կազմակերպություններ, խախտելով հանրահայտ կանոններն ու պետական օրենքները, թույլ են տալիս հավելագրումներ, ինքնարժեքի թանկացում, մեծ չափերի հասնող նյութական կորուստներ, անարտադրողական ծախսեր։ Անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկվում՝ բարելավելու նախագծային-նախահաշվային գործը։

Գյուղատնտեսական արտադրության մեջ անհրաժեշտ պայքար չի տարվում հանրային արտադրության ինտենսիվացումը բարձրացնելու համար, շատ տնտեսություններում ոչ ռացիոնալ են օգտագործվում հողը, ջուրը, կապիտալ ներդրումները, նյութական և աշխատանքային ռեսուրսները։ Այդ է պատճառը, որ մի շարք կոլտնտեսություններ և պետական տնտեսություններ չեն կատարում գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։

Թերություններ շատ կան նաև պետական ու կոոպերատիվ առևտրում, բնակչության կենցաղային սպասարկման ոլորտում։

Ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում գոյություն ունեցող այդ թերությունների ու բացթողումների վերացումը կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների և տնտեսական մարմինների առաջնահերթ խնդիրն է, աշխատանքային կոլեկտիվների պատվի գործը։

Հնգամյակի ընթացիկ տարվա պետական պլանով նախատեսվում են հանրապետության էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի նոր վերելքի, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման խոշոր միջոցառումներ։ 1978 թվականին հանրապետության ազգային եկամուտը, նախորդ տարվա համեմատությամբ, կաճի 7 տոկոսով, կամ 250 մլն ռուբլով։ Ֆինանսական բոլոր աղբյուրներից ժողովրդական տնտեսությանը կհատկացվի 1.016 մլն ռուբլի, 6,2 տոկոսով ավելի, քան անցած տարի։ Արդյունաբերական արտադրանքի արտադրությունը կավելանա 7,1 տոկոսով, ըստ որում՝ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը պետք է կազմի արտադրանքի ընդհանուր ծավալի մոտավորապես 50 տոկոսը։ Պլանավորված է հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 5,9 տոկոսով և դրա հաշվին ստանալ ազգային եկամտի աճի 80, արդյունաբերական արտադրանքի աճի 63 տոկոսը և գյուղատնտեսական արտադրանքի ու շինմոնտաժային աշխատանքների ծավալի ամբողջ աճը։ Պլանով նախատեսված է իրականացնել նաև էներգետիկայի հետագա զարգացում, ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառության աճ, կենցաղային ծառայությունների, ժողովրդական կրթության և առողջապահական ցանցի ընդլայնում, բնակարանային և կոմունալ կենցաղային շինարարության ծավալի զգալի մեծացում։ Պլանային այս խնդիրները կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական

կազմակերպություններից, տնտեսական մարմիններից ու ղեկավարներից պահանջում են ավելի մեծ կազմակերպվածություն, նպատակասլաց ու եռանդուն գործունեություն:

ՀԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը շեշտեց, որ հանրապետության կուսակցական ու սովետական, տնտեսական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների հիմնական խնդիրն է՝ ապահովել յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, շրջանի, քաղաքի համար սահմանված առաջադրանքների ոչ միայն կատարումը, այլև գերակատարումը: Իսկ դրա համար կան բոլոր հնարավորությունները: Միայն հարկավոր է լավ աշխատել, բարձրացնել կազմակերպվածությունն ու կարգապահությունը: «Անհրաժեշտ է,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում,— պահպանել, ամրապնդել հոբելյանական մրցության աշխատանքային ավյունն ու ռիթմը: Այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, վաղն ավելի լավ, քան այսօր: Սա է օրվա լոզունգը: Իսկ ավելի լավ՝ նշանակում է շեշտը դնել որակի վրա, արդյունավետության վրա, աշխատանքի արտադրողականության աճի վրա: Հենց այստեղ է սոցիալիստական պարտավորությունների, ինչպես և մեր ամբողջ տնտեսական գործունեության միջուկը»:

Հարկավոր է է՛լ ավելի լայնորեն ծավալել արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և մյուս ճյուղերի աշխատողների մրցությունը՝ առանձնահատուկ ուշադրություն դարձնելով նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքների ձեռքբերմանը, առաջավոր փորձի, արտադրության նորարարների նախաձեռնությունների տարածմանը, մշտական հոգատարություն ցուցաբերել որակական ցուցանիշների բարելավման նկատմամբ, հասնել ավելի բարձր սոցիալիստական պարտավորությունների իրականացման:

Ժողովրդական տնտեսության զարգացման շահերը պահանջում են, որպեսզի լիովին ու ռացիոնալ իրագործվեն բոլոր ռեզերվները: Այս մասին ամենայն լրջությամբ խոսվեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում: Առաջին հերթին դա վերաբերում է մեր ամբողջ ունեցածի, ժողովրդական տնտեսության ամբողջ արտադրանքի հոգատար, ռացիոնալ օգտագործմանը, որն արդի փուլում տնտեսական գործունեության հիմնական խնդիրն է: Ելնելով դրանից, արտադրական ձեռնարկությունների ու տնտեսությունների ղեկավարները պետք է նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորմամբ, պլանավորման բարելավմամբ և տնտեսական լծակների առավել հմուտ գործադրմամբ իրենց կոլեկտիվներում հասնեն հումքի, առաջին հերթին մետաղի, էլեկտրաէներգիայի, վառելիքի մյուս տեսակների առավելագույն խնայողության: Շատ բան պետք է արվի նաև արտադրական կարողությունների առավել արդյունավետ օգտագործման, սարքավորումների պարապուրդների կրճատման համար: Այդ նպատակով անհրաժեշտ է ապահովել աշխատանքի հերթափոխայնության գործակցի բարձրացումը, հումքի, կոմպլեկտավորող առարկաների համաչափ մատակարարումը, ճիշտ տեղաբաշխել ուժերն ու միջոցները:

Տասներորդ հնգամյակն արդյունավետության և որակի հնգամյակ է: Դա նշանակում է, որ անընդհատ պետք է բարձրացնել արտադրության արդյունավետությունը և մեր ողջ աշխատանքի որակը: Այս խնդրի կատարումը հանրապետության արտադրական միավորումների, ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների և յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվի սրբազան պարտքն է: Արտադրության արդյունավետության բարձրացման գործում մեծ անելիքներ ունեն հանրապետության պետպլանը, արդյունաբերական մինիստրությունները, որոնք, գիտական հիմնարկների հետ միասին, պետք է մշակեն ու գործողության մեջ դնեն պլանավորման և գնահատման ցուցանիշների նոր համակարգ, որը հնարավորություն տա ճիշտ գնահատել արտադրական միավորման կամ ձեռնարկության աշխատանքի արդյունավետությունը: Կարևոր նշանակություն ունի և հանդիպական պլանների ու սոցիալիստական պարտավորություններով լրացուցիչ արտադրանքի թողարկման առաջադրանքի կատարման բովանդակության ճշտումը: Այս առումով դարձյալ հարկավոր է, որ ուշադրությունը կենտրոնացվի հատկապես խնայո-



ղության ռեժիմի, նյութական տնտեսման, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, առաջավոր փորձի արմատավորմանը, արտադրության պրոցեսների մեքենայացմանն ու ավտոմատացմանը:

Հանրային արտադրության արդյունավետության աճի խոշոր ռեզերվներ կան կապիտալ շինարարության և, առաջին հերթին, արտադրական կարողությունների գործարկման բնագավառում: Կուսակցությունը և կառավարությունը պահանջում են բարձրացնել կապիտալ ներդրումների արդյունավետությունը, միջոցները կենտրոնացնել ժողովրդական տնտեսության գործարկվելիք կարևորագույն օբյեկտների շինարարությունում, արագացնել դրանց գործարկումը, ապահովել շինարարության էժանացման առաջադրանքների կատարումը:

Հանրապետության շինարարական կազմակերպությունները, մինիստրություններն ու գերատեսչությունները, նրանց կուսակցական կազմակերպությունները պարտավոր են մինչև վերջ կատարել կուսակցության պահանջները, վճռական միջոցներ ձեռնարկել շտկելու այդ կարևոր ճյուղում տեղ գտած թերությունները: Ամենից առաջ հարկավոր է բարելավել շինարարական արտադրության պլանավորումը, նախագծումն ու կազմակերպումը, կրճատել շինարարության տևողությունը, ապահովել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինումն ու վերակառուցումը, արտադրական կարողությունների, բնակելի տների, կուլտուր-կենցաղային օբյեկտների ժամանակին գործարկումը, բարձրացնել շինմոնտաժային աշխատանքների որակը, ամրապնդել շինարարության ինդուստրիալ բազան:

Կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն վարում է գյուղատնտեսությունը սոցիալիստական էկոնոմիկայի բարձր զարգացած ճյուղ դարձնելու նպատակին ուղղված քաղաքականություն: Գործադրվում են տնտեսական այնպիսի լծակներ, որոնք նպաստում են աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանը: Ծավալուն աշխատանքներ են տարվում նաև գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման, մելիորացման ու քիմիացման նպատակով: Այդ բոլորի շնորհիվ բարձրանում է գյուղատնտեսության արդյունավետությունը, ապահովվում են ցանքատարածությունների բարձր բերքատվությունը, անասնապահական մթերքների աճը: Մեր հանրապետության գյուղատնտեսական արտադրության մի շարք արմատական հարցերի լուծման համար այս տեսակետից բացառիկ կարևոր, հիրավի պատմական նշանակություն ունի «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողատարածության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը: Այդ որոշման կենսագործումը հնարավորություն կտա ոռոգել տասնյակ հազարավոր հեկտար հողեր, ջրով ապահովել գյուղատնտեսությունը և էկոնոմիկայի մյուս ճյուղերը, յուրացնել աղուտների և խոպան հողերի նոր զանգվածներ: Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների խնդիրն է՝ հետևողականորեն կենսագործել Սովետական Հայաստանի և նրա աշխատավորների նկատմամբ հարազատ կուսակցության և սովետական կառավարության հոգատարության նոր դրսևորումը հանդիսացող այդ կարևոր որոշումը, ամեն պայման ստեղծել, որպեսզի մելիորացված հողերն օգտագործվեն արտադրողաբար և այդ նպատակին տրամադրված միջոցները մեծ փոխհատուցում տան: Հարկավոր է պլանաչափորեն իրագործել նաև միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հիման վրա հանրապետության գյուղատնտեսական արտադրությունը մասնագիտացնելու և համակենտրոնացնելու կոնկրետ միջոցառումներ:

Էկոնոմիկայի զարգացումն արագացնելու կարևոր պայմանը բոլոր ոլորտներում, տնտեսական աշխատանքի բոլոր բնագավառներում բարձր կազմակերպվածության, կարգ ու կանոնի, աշխատանքային, տեխնոլոգիական, պլանային կարգապահության հաստատումն է: Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, ադմինիստրացիայի հետ մեկտեղ, կոչված են յուրաքանչյուր կոլեկտիվում ստեղծելու դրա համար անհրաժեշտ հասարակական, քաղաքական կլիմա, ավելի լավ ու ավելի արդյունավետ աշխատանքի մթնոլորտ, անհանդուրժողականության իրադրություն կարգապա-

հությունը խախտողների նկատմամբ։ Պետք է ավելի հաստատակամորեն պայքարել տնտեսական աշխատանքում, ամենուրեք իսկական կուսակցական-ստեղծագործական ոճ հաստատելու համար, հատուկ ուշադրություն դարձնել պետական և պլանային կարգապահության խստիվ պահպանման համար արտադրության բոլոր օղակների ղեկավարների պատասխանատվության բարձրացմանը, ուժեղացնել պլանային առաջադրանքների կատարման նկատմամբ հսկողությունը։ Բոլորի համար ուղեցույց պետք է լինեն մեծ Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված հոբելյանական հանդիսավոր նիստում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ասած հետևյալ խոսքերը՝ «Բարձր կազմակերպվածություն կուսակցական, պետական ու տնտեսական ղեկավարման բոլոր մակարդակներում, բոլոր օղակներում, ամեն մի աշխատատեղում՝ սա է XXV համագումարի առաջադրած խնդիրների լուծման անհրաժեշտ, պարտադիր պայմանը»։

Ինչպես սովետական ողջ ժողովուրդը, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորները խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի ութերորդ նստաշրջանի որոշումները, որոնք նոր հեռանկարներ են բացում մեր երկրի առաջընթացի համար։ Այդ որոշումները, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում շարադրված տեսական դրույթներն ու գործնական հետևությունները հնգամյակի պլանների, ՍՄԿԿ XXV համագումարի կանխագծումների իրականացման ասպարեզում կուսակցության և ժողովրդի, աշխատանքային բոլոր կոլեկտիվների, տնտեսական կառավարման բոլոր օղակների գործունեության մարտական ծրագիր են։ Դրանք սովետական մարդկանց ոգեկոչում են ստեղծագործական նոր մեծագործությունների, նոր հայրենասիրական գործերի ու աշխատանքային սխրանքների, և նրանք ձգտում են ավելի խոր տիրապետել այդ ծրագրին, հստակորեն որոշել իրենց դերը դրա հաջող իրականացման համար մղվող պայքարում։

Հանրապետության կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ կոմունիստներին և բոլոր աշխատավորներին լրիվ հասցնել ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները, կազմակերպական-քաղաքական, գաղափարական-դաստիարակչական, տնտեսական ողջ աշխատանքը նպատակամղել աշխատավորների ստեղծագործական եռանդի ու նախաձեռնության ծավալմանը, նրանց ջանքերը մոբիլիզացնել այդ որոշումների կատարմանը։

Տասներորդ հնգամյակի տնտեսական և սոցիալական զարգացման երրորդ տարվա պլանը գործողության մեջ է։ Այն մեր հանրապետության աշխատավորների առջև դնում է բարձր ու պատասխանատու խնդիրներ։ Եվ, չնայած պետական պլանի լարվածությանը, պետք է պլանային առաջադրանքները դիտել որպես նվազագույնը, բոլոր անհրաժեշտ նախադրյալներն ստեղծել դրանց գերակատարումն ապահովելու համար։ Պետք է նոր թափ հաղորդել հանրապետությունում հնգամյակի բնագծերը նվաճելու համար ծավալված հայրենասիրական շարժմանը։ Ղեկավարելով այն, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի պաշտպանեն և տարածեն առաջավոր կոլեկտիվների՝ լարված հանդիպական պլաններ և բարձր սոցիալիստական պարտավորություններ ստանձնելու նախաձեռնությունները, դրանք ուղղեն արտադրության արդյունավետության և որակի բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի, նյութական և էներգետիկ ռեսուրսների խնայողական ծախսման, աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման նպատակին, ամեն ինչ անեն հոբելյանական տարվա արտադրական թափը շարունակելու և ամրապնդելու համար։ Ամենուրեք ընդլայնելով սոցիալիստական մրցությունը, կուսկազմակերպությունները պետք է ղեկավարվեն սոցմրցության կազմակերպման լենինյան սկզբունքներով, չթուլացող հսկողություն սահմանեն, վերացնեն դրանում ձևականության տարրերը, այնպես անեն, որ լիովին կիրառվեն հնգամյակի հարվածայինների, հաղթող կոլեկտիվների բարոյական ու նյութական խրախուսման նոր ձևերն ու հնարավորությունները։



Կուսակցությունը պահանջում է՝ չհանգստանալ ձեռք բերածով, շարունակ առաջ ընթանալ և հասնել առավել նշանակալի արդյունքնրի։ Ահա այսպիսի ձգտմամբ են համակված մեր հանրապետության աշխատավորները։ Հասումներն ու հաջողությունները չեն հանգստացնում, այլ նոր խիզախումների են մղում նրանց։ Այդ մասին են վկայում ամեն օր տեղերից ստացվող հաղորդումները։ Լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, աշխատանքային կոլեկտիվները նոր տարվա հենց առաջին օրերից ձեռնամուխ են եղել կուսակցության որոշումների և ստանձնած պարտավորությունների անվերապահ կատարմանը։ Արձագանքելով մոսկվացիների նոր նախաձեռնությանը, արտադրական շատ կոլեկտիվներ պարտավորվել են հնգամյակի երեք տարվա պլանները կատարել ՍՍՀՄ նոր Սահմանադրության առաջին տարեդարձի նախօրյակին՝ հոկտեմբերի 6-ին։

Տասներորդ հնգամյակի առաջին երկու տարվա արդյունքները, հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման՝ կուսակցության առաջադրած պլանների ռեալությունը, քաղաքական ու արտադրական ակտիվության վերելքը հաստատ վստահություն են ներշնչում, որ Սովետական Հայաստանի աշխատավորները, ղեկավարվելով ՍՄԿԿ և ՀԿԿ Կենտկոմների դեկտեմբերյան (1977 թ.) պլենումների որոշումներով, հաջողությամբ կկատարեն հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքները, 1978 թվականը կդարձնեն իսկական հարվածային աշխատանքի տարի և նոր նվաճումների կհասնեն կուսակցության XXV համագումարի կանխագծումների իրականացման ասպարեզում։

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Բ. Ն. ՊՈՆՈՄԱՐՅՈՎԻ զեկուցումը***

*ԿՐԵՄԼՈՒՄ, ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի վառ, խոր, բովանդակալից զեկուցման մեջ խտացված է ՍՄԿԿ-ի՝ որպես սովետական ժողովրդի ավանգարդի, միջազգային կոմունիստական և ողջ ազատագրական շարժման բաղկացուցիչ մասի, բազմաբնույթ փորձը և դրա հետ մեկտեղ ցույց է տրված մեր կուսակցության ստեղծագործական մոտեցումը մարքսիզմ-լենինիզմին, ՍՄԿԿ-ի հոգատարությունը հեղափոխական տեսության զարգացման և պրակտիկայում նրա մարմնավորման նկատմամբ։*

*Լենինյան տիպի ականավոր գործիչ ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, սոցիալիստական պետությունների, կոմունիստական կուսակցությունների ղեկավար գործիչների, երիտասարդ անկախ պետությունների առաջնորդների, ազգային-ազատագրական շարժումների պատվիրակների ելույթները համակողմանի բացահայտում են Հոկտեմբերյան հեղափոխության և սոցիալիզմի հետագա հաղթանակների համաշխարհային պատմական նշանակությունը բոլոր ժողովուրդների, միջազգային բանվորական շարժման և ամբողջ համաշխարհային զարգացման համար։ Այդ ելույթները, իսկ դրանք 100-ից ավելի էին, կենդանի ու տպավորիչ լուսաբանությունն են այն բանի, թե որքան այժմեական է այսօր Հոկտեմբերյան հեղափոխության ժառանգությունը, թե ինչպես անկասելիորեն աճում է նրա գաղափարների ազդեցությունը աշխարհում։ Դրանք համոզիչ վկայում են, որ Հոկտեմբերի գաղափարները հավետ երիտասարդ են, որ դրանք այսօր էլ շարունակում են ոգևորել աշխատավորների ազատության ու երջանկության համար պայքարող մարտիկներին։ Եվ հեղափոխականների յուրաքանչյուր նոր սերունդ առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխության համապարփակ փորձի, սոցիալիզմի կառուցման առաջին փորձի մեջ անսպառ աղբյուր է գտնում հետևությունների, դասերի, հեղափոխության և առաջընթացի օրենքներն ու շարժիչ ուժերն ըմբռնելու համար։*

*Մեծ Հոկտեմբերը վիթխարի չափով ընդլայնեց հեղափոխական պրակտիկայի, հեղափոխական-ազատագրական և վերակերտիչ գործունեության բազմապիսի փորձի մասշտաբները։ Հոկտեմբերի հաղթանակի հետ էականորեն*

** Այս զեկուցմամբ հեղինակը հանդես է եկել «Մեծ Հոկտեմբերը և արդի դարաշրջանը» թեմայով գիտատեսական կոնֆերանսում, որը տեղի է ունեցել 1977 թ. նոյեմբերի 10—12-ին, Մոսկվայում։*



*փոխվել է նաև տեսության դերը, նրա և պրակտիկայի փոխներգործությունը։ Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, հասել է «այն պատմական պահը, երբ տեսությունը վերածվում է պրակտիկայի, կենդանանում է պրակտիկայով, ուղղվում է պրակտիկայով, ստուգվում պրակտիկայով...» (***Երկեր***, հ. 26, էջ 507)։*

*I*

*Նշելով հեղափոխության 60-րդ տարեդարձը՝ մենք լիակատար իրավունքով կարող ենք ասել, որ մարդկության պատմության մեջ պարզորոշ կերպով ու վերջնականորեն ձևավորվել է հոկտեմբերյան դարաշրջանը։ Առաջինն ու գլխավորը, որ բնութագրում է այն, դա մարդկային հասարակության անկասելի շարժումն է դեպի սոցիալիզմ։*

*Սոցիալիզմը, որ սկզբում եղել է միայն երազանք, ապա՝ տեսություն, վերջապես՝ շարժում, 1917 թվականից հետո դառնում է նաև սոցիալ-տնտեսական և պետական-քաղաքական ռեալություն։ Հոկտեմբերի հայրենիքը դարձավ այն առաջին երկիրը, որտեղ դրվեցին սոցիալիզմի հիմքերը։ Շուտով ոչ կապիտալիստական, իսկ ապա նաև սոցիալիստական զարգացման ուղին թևակոխեց Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը։ Այնուհետև կապիտալիզմի հետ կապերը խզած երկրների շրջանն ուժգնորեն ընդլայնվեց երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիզմի դեմ ժողովուրդների տարած հաղթանակի շնորհիվ։ Այժմ սոցիալիզմն իրականացվում է արդեն Եվրոպայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի, Աֆրիկայի մի մեծ խումբ երկրներում։*

*Սոցիալիստական հասարակարգի առաջացման ու զարգացման գործում, սոցիալիստական պետությունների ներքին և արտաքին քաղաքականության որոշման գործում ղեկավար դեր են կատարում մարքս-լենինյան տեսությամբ զինված կոմունիստական կուսակցությունները։ Մեր տեսության նշանակությունն այժմ մեծ է՝ քան երբեք։ Այդ նշանակությունը պայմանավորվում է ամենից առաջ տեսության կիրառման ոլորտի վիթխարի ընդլայնմամբ, համաշխարհային հեղափոխական պրոցեսի մեջ նորանոր ջոկատների, վտակների ու հոսանքների ներգրավմամբ։ Այդ նշանակությունն աճում է նաև համաշխարհային սոցիալիզմի զարգացման խնդիրների բարդացման, սոցիալիստական երկրների միջև հարաբերությունների ձևավորման, զարգացած սոցիալիզմի փուլում տնտեսական, սոցիալական և կուլտուրական շինարարության նոր պրոբլեմների առաջացման, զարգացած կապիտալիզմի երկրներում արմատական սոցիալ-քաղաքական վերափոխումների համար նոր հնարավորությունների ստեղծման, ազգային-ազատագրական շարժման գոտում ստեղծված նոր իրադրության կապակցությամբ։ Յուրաքանչյուր մարքս-լենինյան կուսակցություն, գործելով իր երկրի պայմաններում, կարող է մասնակցել մեր ինտերնացիոնալ ուսմունքի ստեղծագործական զարգացմանը։*

*Կյանքը ծնում է նոր հասկացություններ, նոր տերմիններ։ Այսպես, առաջացել է «ռեալ սոցիալիզմ» հասկացությունը։ Երբեմն կարելի է լսել կասկածներ. օրինաչա՞փ է, արդյոք, նման հասկացությունը։ Ըստ երևույթին, հարկ կա համառոտակի անդրադառնալ դրան։*

*Իրոք, ի՞նչ նկատի ունեն, երբ խոսում են ռեալ սոցիալիզմի մասին։*

*Ռեալ սոցիալիզմը որոշակի* պետական-քաղաքական ռեալություն *է։ Դա նոր տիպի պետություն է, որտեղ իշխանությունը պատկանում է աշխատավորներին, որոնց գլխավորում են բանվոր դասակարգն ու նրա հեղափոխական ավանգարդը՝ կոմունիստական կուսակցությունը։ Հենց այդպիսի պետություն ստեղծվել է մեր երկրում Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ։ Այժմ միջազգային ասպարեզում գործում է սոցիալիստական պետությունների մի սիստեմ. դրանք դարձել են արդի միջազգային քաղաքականության աչքի ընկնող գործոն։*

*Ռեալ սոցիալիզմը, այնուհետև, որոշակի* տնտեսական ռեալություն *է։ Դա արտադրության որակապես նոր եղանակ է, որի հիմքում ընկած է արտադրության միջոցների հանրային սեփականությունը, որը վերացնում է մարդու շա-*

մոնիստական նախապաշարմունքների, բուրժուական գաղափարախոսության հիմքերը.

— ռեալ սոցիալիզմը ցուցադրում է ժողովուրդների եղբայրության և փոխօգնության հիման վրա կառուցված նոր, իսկական ինտերնացիոնալիստական միջպետական հարաբերությունների գերազանցությունը.

— այն ծառայում է որպես խաղաղության հզոր պատվար, իր բուն գոյությամբ ու քաղաքականությամբ արգելք է ստեղծում համաշխարհային պատերազմի սանձազերծման դեմ, կոնստրուկտիվ ներգործություն է ունենում միջազգային հարաբերությունների ողջ սիստեմի վրա, նպաստելով խաղաղության ամրապնդմանը, բանակցությունների միջոցով վիճելի հարցերի լուծմանը.

— սոցիալիզմը բարենպաստ է ազդում կապիտալի երկրներում դասակարգային պայքարի արտաքին, ինչպես նաև անուղղակիորեն նաև ներքաղաքական պայմանների վրա.

— ռեալ սոցիալիզմն օգնում է հարյուր միլիոնավոր մարդկանց, որոնք պաշտպանում են գաղութատիրությունից ազատագրված և ինքնուրույն զարգացման ուղին թևակոխած պետությունների ազգային անկախությունը։

Մարդկության զարգացման վրա սոցիալիզմի ներգործության անշեղ աճին նպաստում են մի շարք գործոններ։ Հոկտեմբերյան հեղափոխությունն արագացրեց այն ուժերի հասունացումն ու ձևավորումը, որոնք հանդես են գալիս կապիտալիզմը ժխտելու դիրքերից և ձգտում են դեպի սոցիալիստական իդեալը։ Դրա անմիջական ազդեցությամբ առաջացավ համաշխարհային կոմունիստական շարժումը՝ բանվորական շարժման մեջ որակապես այդ նոր ուժը։ Դրա ազդեցությամբ արագացավ հեղափոխական-դեմոկրատական շարժումների և կազմակերպությունների ձևավորումը գաղութային ու կախյալ երկրներում։ Այդ նոր ուժերը, որոնք տարբեր են իրենց բնույթով, բայց միավորված հակաիմպերիալիստական ուղղվածությամբ, ձեռք են բերել սեփական դինամիկա, խոր արմատներ գցել մասսաների, ազգային իրականության մեջ։ Հենվելով միջազգային հեղափոխական շարժման՝ արդեն կուտակած փորձի վրա, նրանք ընթանում են դեպի բոլոր ժողովուրդների համար ընդհանուր նպատակը՝ ազգային ու սոցիալական ազատագրությունը։

Կապիտալիզմի վերացումը, սոցիալիստական հիմունքներով հասարակության վերափոխումը ավելի ու ավելի են հանդես գալիս որպես օբյեկտիվ անհրաժեշտություն, որպես դարաշրջանի կենսական պահանջ։ Սոցիալիզմի գաղափարների ամենալայն տարածումը ծառայում է որպես ողջ հասարակական պրոգրեսի առաջընթաց շարժման տեսանելի ցուցանիշ։

Հարաճուն ուժով սոցիալիզմի օգտին են գործում կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի խորացումը, ինչպես նաև այն պրոցեսները, որոնք անմիջականորեն կապված են գիտատեխնիկական հեղափոխության հետ, համընդհանուր բնույթի այնպիսի պրոբլեմների սրման հետ, ինչպիսիք են էներգետիկ, պարենային, էկոլոգիական պրոբլեմները։ Միայն սոցիալիզմը և միջազգային հաղորդակցման՝ դրա ծնունդը հանդիսացող սկզբունքները կարող են ապահովել XX դարի խոշորագույն պրոբլեմների իրական լուծումը, ժողովուրդներին ու պետություններին ընձեռել գիտատեխնիկական, տնտեսական և կուլտուրական համագործակցության այն նոր, ավելի բարձր մակարդակը, որի անհրաժեշտությունը թելադրվում է ներկայի և ապագայի արտադրաուժերի բնույթով ու հզորությամբ։

## II

Հոկտեմբերյան հեղափոխության մեծագույն նշանակությունն այն է, որ նրա հաղթանակով որակական փոփոխություն տեղի ունեցավ մարդկության դարավոր պրոբլեմում՝ պատերազմի և խաղաղության պրոբլեմում։

Սովետական իշխանության առաջին հիմնարար փաստաթղթից՝ Հաշտության մասին լենինյան դեկրետից մինչև ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, սովետական պետության ամբողջ 60-ամյա պատմությունը համոզիչ ցույց է



տալիս, որ, Լ. Ի. Բրեժնևի խոսքերով ասած, «հաղթանակած սոցիալիզմի առաջին պետությունը իր դրոշակի վրա ընդմիշտ գրել է «Խաղաղություն» բառը՝ որպես իր արտաքին քաղաքականության բարձրագույն սկզբունք, որը համապատասխանում է սեփական ժողովրդի և մոլորակի մյուս բոլոր ժողովուրդների շահերին»։

ՍՄԿԿ-ն, սովետական պետությունը հետևողականորեն ու անշեղորեն վարում են սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունն ապահովելու, հասարակության կյանքից համաշխարհային պատերազմը բացառելու կուրս։ Այժմ այդ կուրսը վավերագրված է մեր պետության Հիմնական օրենքում։

ՍՍՀՄ Սահմանադրությունը ողջ մարդկության առջև հանդիսավոր կերպով հաստատեց, որ սովետական պետությունը ժողովուրդների բարեկամության և խաղաղության պետություն է։ Այն վերստին ցույց տվեց, որ սոցիալիզմի ու խաղաղության անբաժանելիությունը ո՛չ միայն նոր հասարակարգի ամենակայուն ավանդույթն է, այլ սոցիալիստական պետության բուն էության գլխավոր հատկանիշներից մեկը։

ՍՍՀՄ-ի, սոցիալիստական համագործակցության խաղաղասիրական և ինտերնացիոնալիստական քաղաքականությունը վիթխարի ազդեցություն է ունեցել միջազգային հարաբերությունների ողջ սիստեմի վրա։ ՍՍՀՄ-ի նախաձեռնությամբ և նրա պաշտպանությամբ ընդունվեցին դեկլարացիա գաղութային երկրներին և ժողովուրդներին անկախություն տալու մասին, դեկլարացիա միջուկային և ջերմամիջուկային զենքի կիրառումն արգելելու մասին, միջազգային պակտեր մարդու իրավունքների մասին և ՄԱԿ-ի շատ այլ փաստաթղթեր։

Խաղաղության սովետական քաղաքականությունը հրթիռամիջուկային դարում հիրավի կենսական նշանակություն ունի բոլոր ժողովուրդների, ողջ մարդկության համար, քանի որ իր ողջ զարհուրելի ռեալությամբ առկա է համաշխարհային պատերազմի հետ կապված մի վտանգ, որի մասին նախազգուշացնում էր Լենինը դեռ 1918 թվականին— մարդկային հասարակության գոյության բուն պայմանները խարխլվելու վտանգը։

Սանձել իմպերիալիստական ագրեսիայի ուժերը, որոնք «սառը պատերազմ» սանձազերծեցին Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների դեմ, հեռացնել ջերմամիջուկային աղետի սպառնալիքը, հասնել միջազգային լարվածության թուլացման՝ այս ամենը աներևակայելի բարդ գործ էր։ Այն պահանջեց վիթխարի լարում և հսկայական ռեսուրսների ծախսում, որոնք այնքան անհրաժեշտ են սոցիալիզմի մեջ թաքնված բոլոր հնարավորությունների ավելի լրիվ բացահայտման համար։

Չէ՛ որ խոսքը իմպերիալիզմին ներհատուկ, նրա էկոնոմիկայի և քաղաքականության հիմքերից բխող օրինաչափությունների ազդեցության վնասազերծման մասին էր, որոնք երկար ժամանակ մոնոպոլիստական կապիտալի գերակշիռ տիրապետության պայմաններում անխուսափելիորեն տանում էին դեպի համաշխարհային պատերազմներ։

Այդ գործում խոշորագույն դեր խաղաց ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագիրը։ Այդ ծրագիրն աշխարհում ամենուրեք լայն պաշտպանություն գտավ խաղաղասեր ուժերի կողմից և դարձավ մի հզոր լծակ՝ միջազգային հարաբերությունները խաղաղ գոյակցության սկզբունքների վրա վերակառուցելու համար։ Լավ է վերջերս ասել միջազգային կոմունիստական շարժման աչքի ընկնող գործիչ ընկեր Ռոդնեյ Արիսմենդին. «Եթե այսօր մենք կարող ենք ասել, որ պատերազմն արդեն անխուսափելի չէ, և հաջողությամբ վարում ենք խաղաղության և լարվածության թուլացման քաղաքականություն, ապա այդ ամենով մենք պարտական ենք Հոկտեմբերյան հեղափոխության 60 տարիներին»։

Այժմ, ինչպես հայտնի է, մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոն իրականացնում են խաղաղության և միջազգային համագործակցության համար, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիրը, որ նշել է XXV համագումարը։ Լարվածության թուլացումն ամրա-

պնդելու և խորացնելու հանգուցակետը մենք համարում ենք սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, պրակտիկ անցումը զինաթափման։

Սովետական Միությունը, գործելով մյուս սոցիալիստական երկրների հետ սերտորեն կոորդինացված, այդ բնագավառում հանդես է եկել հիրավի համապարփակ մի պլատֆորմով։ Եղբայրական սոցիալիստական պետությունների նախաձեռնություններն ընդգրկում են զինաթափման պրոբլեմի նկատմամբ եղած մոտեցումների ողջ դիապազոնը։

Վաղուց և քանիցս ՍՍՀՄ-ը հաստատում է իր պատրաստակամությունը՝ իրականացնելու ընդհանուր և լրիվ զինաթափում։ Այժմ այդ պատրաստակամությունն արձանագրված է Հիմնական օրենքում։

ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի վերջին նստաշրջանում Սովետական Միությունը կրկին արտահայտվեց այն բանի օգտին, որ անհրաժեշտ է անհետաձգելիորեն ընդհուպ զբաղվել միջուկային զինաթափման ողջ պրոբլեմով։ Աշխարհի բոլոր կառավարությունների սեղանին վաղուց արդեն դրված են սովետական առաջարկությունները միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու մասին համաշխարհային պայմանագիր կնքելու և միաժամանակ միջուկային զենքը ընդմիշտ արգելելու վերաբերյալ։

1977 թվականի նոյեմբերի 2-ին Կրեմլում՝ հանդիսավոր նիստում տված զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը առաջարկեց կատարել արմատական քայլ՝ համաձայնության գալ բոլոր պետությունների կողմից միջուկային զենքի արտադրությունը միաժամանակ դադարեցնելու մասին և ձեռնամուխ լինել արդեն կուտակված պաշարների աստիճանական կրճատմանը։ Այսպիսով, խոսքն այն մասին է, որ այսուհետև միջուկային նյութերն արտադրվեն միայն խաղաղ նպատակներով։ Ատոմը միայն խաղաղության համար։ Անտարակույս, այդ առաջարկության իրագործումը մի վիթխարի առաջընթաց քայլ կլինեի միջուկային պատերազմը կանխելու հարցը՝ մեր դարաշրջանի պրոբլեմների այդ պրոբլեմը, լուծելու գործում։

Միաժամանակ ընկեր Լ. Ի. Բրեժնևը հայտարարեց, որ ՍՍՀՄ-ը պատրաստ է, որ միջուկային զենքի բոլոր փորձարկումները որոշակի ժամկետով արգելելու հետ մեկտեղ հայտարարվի խաղաղ նպատակներով միջուկային պայթեցումների ընդհատում։ Այդ առաջարկության նպատակն է ճանապարհ բացել բոլոր միջուկային փորձարկումները լրիվ դադարեցնելու վերաբերյալ արդեն զգալիորեն նախապատրաստված համաձայնությունը կնքելու համար։ Որպեսզի այդ փորձարկումները չանցկացվեն ո՛չ միայն մթնոլորտում, տիեզերքում ու ջրի տակ, այլև գետնի տակ՝ վաղուց այդ են պահանջում ժողովուրդները։

Ահա արդեն տարիներ շարունակ մենք հանդես ենք գալիս միջուկային զենքը չտարածելու ռեժիմն ամրապնդելու արդյունավետ միջոցառումների օգտին։ Սովետական Միությանն է պատկանում մասսայական ոչնչացման զենքի նոր սիստեմների և տեսակների մշակումն ու արտադրությունն արգելելու վերաբերյալ պայմանագրի նախաձեռնությունը։ Մենք համառորեն պնդում ենք, որ շուտափույթ միջազգային համաձայնագիր կնքվի քիմիական զենքն արգելելու և կուտակված պաշարները ոչնչացնելու մասին, նման այն կոնվենցիային, որ արդեն կնքվել է մանրէական (կենսաբանական) և թունավոր զենքի մշակումը, արտադրությունը և պաշարների կուտակումն արգելելու վերաբերյալ։

Սովետական Միությունը ծավալուն առաջարկություններ է արել զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման վերաբերյալ, և այդ՝ ամենից առաջ Կենտրոնական Եվրոպայի շրջանում։ Մենք բազմիցս առաջարկել ենք համաձայնության գալ բոլոր պետությունների կողմից օտարերկրյա տերիտորիաներում եղած ռազմական բազաները վերացնելու և այդ տերիտորիաներից զորքերը դուրս բերելու մասին։ ՍՍՀՄ-ը անշեղորեն հանդես է գալիս ռազմական բյուջեները կրճատելու և այդ միջոցների մի մասը ազատագրված երկրներին տնտեսական աջակցություն ցույց տալու համար գործադրելու օգտին։ Սովետական նախաձեռնությունների թվում աչքի ընկնող տեղ է գրավում միջուկային զենք կրող նավերը համաշխարհային օվկիանոսի առանձին տարածք-



ներից դուրս բերելու առաջարկությունը։ Սովետական Միությունը պաշտպանում է խաղաղության գոտիների ստեղծումը, մասնավորապես Հնդկական օվկիանոսում։

ՍՍՀՄ-ը հետևողականորեն հանդես է գալիս նաև ռազմական բլոկների պահպանման դեմ։ Մենք քանիցս առաջարկել ենք իրականացնել ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի կազմակերպության միաժամանակյա ցրում և որպես առաջին քայլ՝ վերացնել նրանց ռազմական կազմակերպությունները։

Հնդկական կառավարական պատվիրակության ընդունելության առթիվ ընկեր Լ. Ի. Բրեժնևը հանդես եկավ Եվրոպայում քաղաքական լարվածության թուլացումը ռազմական լարվածության թուլացմամբ լրացնելու ծավալուն պլատֆորմով։ Այդ պլատֆորմը նախատեսում է պայմանավորվածություն այն մասին, որ չձեռնարկվեն այնպիսի գործողություններ, որոնք կարողանային հանգեցնել դեմ-հանդիման կանգնած ռազմաքաղաքական խմբավորումների ընդլայնման, և որ համաեվրոպական խորհրդակցության մասնակիցները պայմանագիր կնքեն միմյանց դեմ առաջինը միջուկային զենք չկիրառելու մասին։ Այդպիսի պայմանագրի նախագիծ, ինչպես հայտնի է, առաջարկել է Վարշավայի պայմանագրի քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեն։

Վերջապես, Սովետական Միությունը հանդես եկավ նոր նախաձեռնությամբ՝ փոխադարձ հիմքի վրա չանցկացնել զինավարժություններ 50—60 հազարից ավելի թվակազմով զորքերի մասնակցությամբ։

Պայքարը լարվածության թուլացման նյութականացման այդ լայն ծրագրի իրականացման համար անշուշտ հեշտ չէ։ Միանգամայն պարզ է, որ միջազգային հարաբերություններում կատարված դրական տեղաշարժերը չեն փոխել իմպերիալիզմի էությունը։ Միլիտարիստական, ագրեսիվ շրջանները մեկը մյուսի հետևից փորձեր են ձեռնարկում վիժեցնելու լարվածության թուլացումը։ Ընդսմին բոլորն էլ տեսնում են, որ նրանց հիմնական նպատակն է՝ թուլացնել Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության՝ որպես խաղաղության ուժերի գլխավոր նյութական և քաղաքական հենարանի դիրքերը։ Միջազգային իրադրության սրումը 1976 թվականի վերջին և 1977 թվականի առաջին ամիսներին ամենայն ակներևությամբ ցույց տվեց այդ։

Ըստ էության, ծավալվեց մի իսկական արշավանք լարվածության թուլացման դեմ։ Կասկածի տակ էր առնվել անգամ ինքը՝ այդ հասկացությունը։ Ընդսմին, ի՜նչ փաստարկներ ասես չէին բերվում։ Ոմանք պնդում էին, թե իբր լարվածության թուլացումը «միակողմ երթևեկություն ունեցող փողոց» է՝ շահավետ միայն սոցիալիստական երկրների համար, մյուսները դատում էին, թե իբր լարվածության թուլացման բնագավառում առհասարակ ոչ մի նվաճում չկա, որ դա պատրանք է։ Երրորդները փորձում էին լարվածության թուլացմանը հակադրել, այսպես կոչված՝ մարդու իրավունքների պաշտպանությունը և ազատությունների մասին դեմագոգիկ ճառերի աղմուկով վերադառնալ սուր առճակատման։

Առանձնահատուկ տագնապ է հարուցում մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների՝ նեյտրոնային ռումբերի, թևավոր հրթիռների և այլ զենքերի ու դրանք տեղ հասցնող միջոցների մշակումը։ Վերակենդանանում են «տեղայնացված», «սահմանափակ» միջուկային պատերազմի հնարավորության և նույնիսկ նպատակահարմարության վերաբերյալ «տեսությունները»։ Ռազմական բյուջեների ուռճացումն արդարացնելու համար նորից սկսել են սաստիկ վախեցնել «սովետական հարաճուն ռազմական սպառնալիքով»։ Այսպիսով, սկսել է ուրվագծվել սպառազինությունների մրցավազքի նոր շրջապտույտ, նոր մակարդակով միջուկային պատերազմի վտանգի վերստեղծման սպառնալիք։

Բայց վերջին ամիսների միջազգային իրադարձությունները ցույց տվեցին մի այլ բան ևս, այսինքն՝ այն, որ լարվածության թուլացման զարգացումը հենվում է օբյեկտիվ հզոր միտումների վրա, որ լարվածության թուլացումն արդեն խոր արմատներ է գցել արդի միջազգային կյանքում, որ այստեղ արդեն կուտակվել է կայունության նշանակալի պաշար։

Նեյտրոնային ռումբի արտադրության դեմ ծավալված բողոքների ալիքը ցույց տվեց, որ չարդարացան իմպերիալիստական պրոպագանդիստների այն հաշիվները, թե մարդիկ «սովորել են» ապրել միջուկային դամոկլյան սրի տակ, թե բնակչության մի զգալի մասի գիտակցության մեջ իբր բթացել է միջուկային պատերազմի սպառնալիքը։ Պարզվեց և այն, որ կապիտալիստական մի շարք երկրների ռեալիստորեն մտածող շրջաններ խոստովանում են սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության խաղաղասիրական բնույթը և պատրաստ են դիմադրություն ցույց տալ «սառը պատերազմի» դեմագոգներին։

Այդ ամենի շնորհիվ հաստատվեց լարվածության թուլացումը պահպանելու և ամրապնդելու ասպարեզում սոցիալիստական երկրների վարած հետևողական գծի կենսականությունը։ Եվ դրա հակառակորդների արշավանքը չտվեց այն արդյունքը, ինչ ակնկալում էին։

Իհարկե, դա ոչ մի չափով հիմք չի տալիս բարեհոգության համար։ Փաստ է, որ սպառազինությունների մրցավազքը ՆԱՏՕ-ի երկրներում հասել է աննախադեպ բարձր մակարդակի, որ դա հակասում է քաղաքական լարվածության թուլացմանը, Արևմուտքի պետական գործիչների այն հայտարարություններին, թե իրենք ձգտում են խաղաղության։ Այդ ամենը նշանակում է, որ լարվածության թուլացման միտումն իրականացվում և հաստատվում է ոչ թե ավտոմատ կերպով, այլ, առաջին հերթին, սոցիալիստական երկրների քաղաքականության շնորհիվ, ողջ մոլորակի խաղաղասեր ուժերի ակտիվ գործողությունների շնորհիվ։

Այժմ ամենահրատապ կենսական պրոբլեմն այն է, թե ինչպես վերջ դրվի զենքի շարունակվող կուտակմանը։ Չէ՛ որ զենքը, ինչպես պատմությունն է ցույց տալիս, եթե ժամանակին չպարպենք, սկսում է կրակել։ Առավել ևս, որ աշխարհում կան տարբեր տեսակ ուժեր, որոնք այնքան են կուրացել իրենց ագահությամբ ու դասակարգային ատելությամբ, որ կարող են դիմել աղետալի ռազմական կոնֆլիկտ սանձազերծելու ռիսկին։

Ահա ինչու պայքարը սպառազինությունների մրցավազքի դադարեցման համար, զինաթափման համար՝ իրեն դեմոկրատ, հումանիստ համարող յուրաքանչյուր մարդու սրբազան պարտքն է, չխոսելով արդեն կոմունիստների մասին։ Կարևոր է ընդգծել նաև այն, որ միայն խոսքով չես դադարեցնի նեյտրոնային ռումբերի կամ թևավոր հրթիռների արտադրությունը։ Խոսքով չես կանխի միջուկային զենքի տարածումը։ Հարկավոր են գործողություններ, և ակտիվ, մարտական, հարձակողական գործողություններ։ Անհրաժեշտ է բոլոր միջոցներով ուժեղացնել միլիտարիզմի և ագրեսիայի ուժերի դեմ մղվող պայքարի մասսայականությունը, թափը, ինտենսիվությունը։

Սպառազինությունների մրցավազքի դադարեցումը մի այնպիսի հարց է, որից իրոք կախված է մարդկության ապագան։ Եվ մենք՝ սովետական մարդիկ, սովետական երկրի կոմունիստներս, մեր ուժերի ներածին չափ արել և անելու ենք ամեն ինչ, որպեսզի միջուկային պատերազմի բոցը երբեք չբարձրանա մոլորակի վրա։

Լարվածության թուլացման հակառակորդներն իրենց ջանքերն ակտիվացնում են ո՛չ միայն սպառազինությունների արտադրության ոլորտում։ «Հոգեբանական պատերազմը» սոցիալիստական երկրների դեմ վաղուց արդեն այնպիսի շիկացման չէր հասել, ինչպես 1976 և մասամբ 1977 թվականին։ Զըրպարտչական պրոպագանդիստական այն կամպանիան, որ իրականացվում է մարդու ազատությունների և իրավունքների պաշտպանության կեղծ պատրվակով, ունի բազմանպատակ նշանակություն։ Ուղղակի, իսկ հաճախ անուղղակի, այդ կամպանիան սպասարկում է սպառազինությունների մրցավազքի քաղաքականությանը՝ նրա բոլոր հայտնի հետևանքներով։ Դրա օգնությամբ ցանկանում են մթագնել մասսաների գիտակցությունը կապիտալի աշխարհում, որը համակված է ամենածանր ճգնաժամով, մասսայական գործազրկությամբ, անզուսպ ինֆլյացիայով, որոնցից կապիտալիստական հասարակության պարագլուխները ոչ մի կերպ չեն կարող ելք գտնել։ Այդ իրադրության մեջ, երբ բացահայտորեն ու չտեսնված մասշտաբներով վարկաբեկվում են կապիտա-



լիստական կարգերը, երբ աճում է ձգտումը դեպի ճգնաժամային պրոբլեմների լուծման սոցիալիստական մեթոդները և ուժեղանում աշխատավորների պայքարը պետական-մոնոպոլիստական տիրապետության դեմ, հակասովետական, հակասոցիալիստական կամպանիաները կոչված են, դրանց կազմակերպիչների մտահղացմամբ, մասսաներին հեռու պահելու սոցիալիզմից, անդունդ բացելու սոցիալիստական երկրների և Արևմուտքի ժողովուրդների միջև։

Իմպերիալիզմը չի հրաժարվում նաև քայքայիչ պրոպագանդիստական կամպանիաների, ամեն տեսակ հերձվածողներին, սոցիալիզմի թշնամիներին պաշտպանելու միջոցով սոցիալիստական երկրների հասարակական կարգը «էրոզիայի» ենթարկելու իր փորձերից։ Որքան էլ անհուսալի լինեն այդ ջանքերը մեր ժամանակներում, դրանք թունավորում են միջազգային մթնոլորտը, քանի որ միջամտություն են սոցիալիստական պետությունների ներքին գործերին, չխոսելով արդեն այն մասին, որ դրանք ծառայում են նույն նպատակին՝ վարկաբեկել սոցիալիզմը և արդարացնել ռազմական նախապատրաստությունները նրա դեմ։

Նախկինում, թերևս, չտեսնված չափերով ծավալվել են իմպերիալիստական շրջանների ու դրանց հետ համերաշխորեն գործող Պեկինի ղեկավարության այն ջանքերը, որոնց նպատակն է պառակտել իմպերիալիզմին դիմադրավող ուժերի շարքերը։ Այստեղ կան և քաղաքական մանևրներ՝ սոցիալիստական երկրների հարաբերություններում երկպառակություն հարուցելու նպատակով։ Այստեղ կա և որոշ շրջաններում ծագող միջպետական կոնֆլիկտների բորբոքում։ Վերջին ժամանակներս առանձնապես ուժգնանում են սոցիալիստական և կապիտալիստական երկրների կոմկուսակցությունները միմյանց հակադրելու փորձերը։

Իհարկե, նման քայքայիչ գործողություններն ու մանևրները պատմական պլանով դատապարտված են խայտառակ ձախողման։ Եթե իմպերիալիզմը չկարողացավ նոր հասարակարգին հաղթել իր նյութական ուժով, երբ դեռ գերակշռություն ուներ տնտեսական և ռազմատեխնիկական ոլորտում, էլ ինչպես կարող է սոցիալիզմի հետ մրցել գաղափարական պայքարի ոլորտում։ Մի՞թե բնորոշ ու պարադոքսային չէ, որ բուրժուական գաղափարախոսները սոցիալիզմի դեմ գրոհները հաճախ վարում են «մարդասիրակա՛ն», «դեմոկրատակա՛ն» սոցիալիզմի գաղափարի պաշտպանության դրոշի ներքո։ Լավ կյանքից չէ, որ կապիտալիզմի ջատագովներն իրենց դնում են իրականում գոյություն ունեցող սոցիալիզմից «ավելի լավ սոցիալիզմի» պաշտպանների ծիծաղելի դրության մեջ։

Այդ ամենն այդպես է։ Բայց, դժբախտաբար, երբեմն բուրժուազիային հաջողվում է կեղծ միջոցներով թմրեցնել բնակչության որոշակի մասի ուղեղները։ Ահա ինչու նահանջը համերաշխության սկզբունքից, ռեալ սոցիալիզմի անհիմն քննադատությունը, դրանից խույս տալը միայն տեսական պրոբլեմ կամ կոմկուսակցությունների փոխհարաբերությունների պրոբլեմ չէ։ Այն ամենաանմիջական կապ ունի լարվածության թուլացման, պատերազմի կանխման հեռանկարների հետ։ Երբ այս կամ այն կապիտալիստական երկրում լայն հասարակայնությունը, ժողովրդական զանգվածները ճշմարտացի ինֆորմացիա են ստանում սոցիալիզմի երկրներում տիրող գործերի վիճակի մասին, ՍՍՀՄ-ի ու նրա քաղաքականության մասին, դա որոշակիորեն ներգործում է նաև կառավարող շրջանների վրա, իսկ նրանք, ովքեր ագրեսիվ մտադրություններ ունեն, իրենց ձգտումներին ընթացք տալուց առաջ մի քանի անգամ լըրջորեն կխորհեն։ Քանի որ նրանք կարող են ցասման ու զայրույթի բուռն ալիքի հանդիպել սեփական ժողովրդի կողմից, որը գիտե ճշմարտությունը և թույլ չի տա խաբել իրեն։

Իսկ սոցիալիզմի երկրների հասցեին եղած քննադատամոլությունը, նըպաստելով նրանց նպատակների ու քաղաքականության մասին խեղաթյուրված պատկերացմանը, թուլացնում է մասսաների դիմադրողականությունը ռեակցիոն շրջանների ագրեսիվ մտադրությունների նկատմամբ, նվազեցնում

նրանց երկուսը ժողովրդի հանդեպ այն դեպքում, եթե նրանք փորձեն սանձազերծել պատերազմ։

Կարելի է առանց չափազանցնելու ասել. աշխարհում դեռ երբեք չեն եղել այնքան հզոր հակապատերազմական ուժեր, որքան այժմ։ Դեռ երբեք այնքան մեծ չի եղել խաղաղության համար մղվող համաշխարհային պայքարի պոտենցիալը։ Բայց, որպեսզի այդ բոլոր ուժերը կարողանան այնքան անհրաժեշտ ավանդը ներդնել լարվածության թուլացումն ամրապնդելու և սպառազինությունների մրցավազքը սանձելու գործում, իսկական զինաթափման գործում, հարկավոր են ամենից առաջ բանվորական շարժման ավանգարդի՝ կոմունիստական կուսակցությունների ակտիվ ու համախմբված, նախաձեռնող գործողություններ։

Այդպիսի գործողությունների համար լավ հիմք է Բեռլինի 1976 թվականի կոնֆերանսի փաստաթուղթը։ Հավանաբար, մնում է, որ գործնական պայքարում ավելի լայնորեն ու ավելի հետևողականորեն օգտագործենք այն գաղափարներն ու առաջարկությունները, որոնք դրանում համատեղ ձևակերպել են եղբայրական կուսակցությունները։ Բեռլինյան պլատֆորմը, ինչպես հայտնի է, մշակվել է՝ հաշվի առնելով այն, որ գնալով ավելի ու ավելի է ուժեղանում դիալեկտիկական փոխադարձ կապը հանուն խաղաղության ամրապնդման մղվող պայքարի և սոցիալական առաջադիմության պայքարի միջև, խաղաղության պայքարի և բոլոր երկրների կոմունիստների ինտերնացիոնալիստական համագործակցության միջև։ Այդ իրադարձությունից հետո անցած ժամանակը հաստատեց այդպիսի մոտեցման ճշտությունը։ Կոմունիստական շարժման կարողությունը՝ ներգործելու միջազգային իրադարձությունների ընթացքի վրա, ապահովելու խաղաղության ուժերի հարաճուն գերակշռությունը պատերազմի ուժերի նկատմամբ, մեծապես պայմանավորված է եղբայրական կուսակցությունների փոխադարձ համերաշխության աստիճանով։

Ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու, պատերազմը համաշխարհային քաղաքականությունից բացառելու վեհ նպատակը գործնականորեն հասանելի է։ Բայց այդ նպատակի համար մղվող պայքարը հրամայաբար պահանջում է նորանոր ջանքեր, խաղաղասեր ուժերի փոխըմբռնման և միասնության ամրապնդում։

## III

Վերջին վեց տասնամյակի ընթացքում սոցիալական առաջընթացի բոլոր նվաճումներն սկզբնավորվում են 1917 թվականի Հոկտեմբերից, հանդիսանում տարրերը համաշխարհային հեղափոխական պրոցեսի, որն սկսվել է այն օրերին, երբ «ցնցվեց աշխարհը»։ Այժմ, 70-ական թվականներին, առանձնապես ակնհայտորեն երևում է, որ ազգային և սոցիալական ազատագրության ուժերը դուրս են եկել որակապես նոր բնագծեր։

Հոկտեմբերի գաղափարները, որոնք մարմնավորվել են սոցիալիզմի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժումների նվաճումներում, համաշխարհային հասարակական առաջընթացի հզոր և առավել ներգործուն արագացուցիչ են։ Միջազգային կոմունիստական շարժումն իր ձեռքում է պահում մարդկության կյանքի բոլոր հիմքերի հեղափոխական վերակերտման ջահը, որ վառել է Հոկտեմբերը։ Այդ շարժումն այժմ ապրում է իր զարգացման մի նշանակալի փուլ՝ հագեցած է խոշոր իրադարձություններով, հարուստ նոր հնարավորություններով։ Իսկ ընդհանուր առմամբ, որպես ինտերնացիոնալ ուժ՝ կոմունիստական շարժումը վերելք է ապրում։

Դա վերաբերում է նաև այն կուսակցություններին, որոնք բարդ ու դժվարին պայքար են մղում կապիտալիզմի միջնաբերդերում։ Դրանցից մի քանիսին հաջողվել է խոշոր նվաճումների հասնել, էապես ամրապնդել իրենց հեղինակությունն ու ազդեցությունը։ Կապիտալի աշխարհում չկա քաղաքական մի այլ ուժ, որն այդքան խոր ու լրիվ արտահայտի և անձնվիրաբար պաշտպանի աշխատավորների իրավունքները, իրենց երկրների ազգային շահերը, ընդառաջի սոցիալական առաջընթացի պահանջին, ինչպես այդ անում են կո-



մունիստները։ Նկատելիորեն աճել է կոմկուսակցությունների՝ որպես ազատագրական շարժումների հետ, իմպերիալիզմի ագրեսիվ ոտնձգությունների դեմ պայքարող մարտիկների և ռեակցիայի զոհերի հետ միջազգային լայն համերաշխության առաջատար գործոնի դերը։ Կապիտալիզմի տիրապետության գոտում նրանք եղել ու մնում են լարվածության թուլացման ամրապնդման, միջազգային անվտանգության համար, սպառազինությունների մրցավազքի դեմ մղվող պայքարի գլխավոր շարժիչ ուժը։

Այնպիսի ժամանակաշրջաններում, ինչպիսին այժմյանն է, երբ աչքի է զարնում նորը և տեսական մտքի առջև ծառանում են բազմաթիվ պրոբլեմներ, որոնց լուծմամբ մեծապես պայմանավորված է հեղափոխական պրոցեսի մոտակա բախտը, այդ ժամանակամիջոցներում հատկապես հրատապ է հնչում մասշտաբային պատմական փոփոխությունների նկատմամբ գիտական, մարքսիստական մոտեցման լենինյան պահանջը։ Վլադիմիր Իլյիչը ասում էր, որ անհրաժեշտ է «հաշվի առնել այդ նոր փոփոխությունները՝ «օգտագործել» դրանք, ընդգրկել դրանք,— եթե կարելի է այսպես արտահայտվել,— և միևնույն ժամանակ անօգնական կերպով անձնատուր չլինել հոսանքին, դեն չգցել հին բագաժը, պահել հիմնականը նաև գործունեության ձևերում, այլ ոչ միայն տեսության մեջ, ծրագրում, քաղաքականության սկզբունքներում» (Երկեր, հ. 17, էջ 163)։ Հաջորդայնությունը մարքս-լենինյան տեսության և քաղաքականության մեջ արտացոլում է համաշխարհային պատմական պրոցեսի օբյեկտիվ ինտերնացիոնալ միասնությունը և դրա զանազան փուլերի փոխադարձ խոր կապը։

ՍՄԿԿ-ն միշտ մեծ հետաքրքրությամբ ու հարգանքով էր վերաբերվում և այժմ էլ վերաբերվում է եղբայրական կուսակցությունների կողմից սոցիալիզմի պայքարի կոնկրետ ուղիների որոնումներին, երբ նրանք հաշվի են առնում իրենց երկրների ողջ առանձնահատկությունը, իրենց կուտակած փորձը։ «Սոցիալիստական հեղափոխության՝ բոլոր երկրներին հատուկ գլխավոր օրինաչափությունների ընդհանրության պարագայում,— ասված է մեր կուսակցության ծրագրում՝ ավելի քան 15 տարի առաջ,— պայմանականորեն գոյացած ազգային առանձնահատկությունների և ավանդույթների բազմազանությունը առաջացնում է հեղափոխական պրոցեսի սպեցիֆիկ պայմաններ, պրոլետարիատի՝ իշխանության գլուխ անցնելու ձևերի ու տեմպերի բազմազանություն»։

Իրենց երկրի սոցիալական կառուցվածքի վերլուծման և աշխատավորների բոլոր խավերի շահերի ու պահանջների հանգամանալի հաշվառման հիման վրա կոմկուսակցությունները մշակում են այնպիսի կարևոր սկզբունքային պրոբլեմ, ինչպիսին է ժողովրդի մեծամասնությունն ընդգրկող, լայն միությունների ստեղծումը, որոնք ունակ են իրականացնելու սոցիալիստական խոշոր վերափոխումներ։ Յուրաքանչյուր կուսակցություն փնտրում է մյուս ձախ, դեմոկրատական ուժերի, կուսակցությունների և կազմակերպությունների հետ գործողությունների միասնության՝ իր երկրի համար լավագույն ուղիներ ու ձևեր, պայքարում է նախաձեռնող, ավանգարդային դերի համար՝ քաղաքական դաշինքների ու բլոկների շրջանակներում։

Հասկանալի է, որ ինչպիսին էլ լինի հակամոնոպոլիստական կոալիցիայի սոցիալական կազմը, դրա առաջատար, ուղղություն տվող ուժը բանվոր դասակարգն է։ Եվ հասկանալի է, որ եղբայրական կուսակցություններն առանձնապես շեշտը դնում են բանվորների միջավայրում, այդ թվում անմիջականորեն ձեռնարկություններում իրենց դիրքերն ամրապնդելու վրա։

Այդպիսի դաշինքների ստեղծումը կնշանակեր աջ, ռեակցիոն ուժերի մեկուսացում և քաղաքական նախադրյալներ կստեղծեր համեմատաբար խաղաղ հասարակական վերափոխումների համար, որոնց վերջնական նպատակն է սոցիալիզմը։ Դրա հետ մեկտեղ հասկանալի է, որ սոցիալիզմի ուղին բոլոր պայմաններում դասակարգային պայքարի ուղին է։ Քանի որ երբեք և ոչ մի տեղ չի եղել և չի լինի այնպես, որ տիրապետող դասակարգը կամովին հրաժարվի իշխանությունից, իրենց հարստություններից ու արտոնություններից, առանց օգտագործելու բոլոր, այդ թվում, եթե հարկ լինի, ամենածայրահեղ

միջոցները՝ իրենց տիրապետությունը պահպանելու, հեղափոխությունը ջախջախելու համար։

Կապիտալիստական յուրաքանչյուր երկրի իրադրության առանձնահատկությունները, զանազան կոմունիստական կուսակցությունների ձեռք բերած փորձի բազմազանությունը, այն փաստը, որ նրանց կոնկրետ ստրատեգիական և տակտիկական դրույթները դեռևս բավարար չափով չեն ստուգվել պրակտիկայում, այդ ամենն ըստ էության նախազգուշացնում է հապճեպ ընդհանրացումների, սպեցիֆիկ որոշումներն ինքնաբավ դարձնելու, դրանք տեսական ճշմարտության աստիճանի բարձրացնելու դեմ։ «Ինչպիսի մարշրուտներ էլ ընտրվեն,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— վերջին հաշվով կոմունիստների կոչումն է՝ մասսաներին տանել դեպի հիմնական նպատակը, դեպի սոցիալիզմ։ Հոկտեմբերի հաղթանակի համար մղված պայքարի փորձը ցույց է տվել, որ հեղափոխական գործունեության մեջ միանգամայն հնարավոր են տակտիկայի փոփոխություն, կոմպրոմիսները՝ նոր դաշնակիցներ ձեռք բերելու համար։ Բայց մենք համոզվել ենք նաև մի այլ բանում. ոչ մի դեպքում չի կարելի սկզբունքները զոհաբերել՝ հանուն տակտիկական օգուտի»։

Ճիշտ քաղաքականության մշակման և իրականացման, նոր պրոբլեմների խիզախ ստեղծագործական, արդյունավետ լուծման պարտադիր պայմանը միշտ եղել է տարբեր երկրներում և տարբեր հանգամանքներում հեղափոխական ուժերի, ընդ որում, ինչպես կառավարող մարքս-լենինյան կուսակցությունների, այնպես էլ կապիտալիզմի դեմ անմիջական պայքար մղող կուսակցությունների, անցյալում կուտակած փորձի համակողմանի, ճիշտ, խոր իմացությունը։ Վաղուց հայտնի է, որ մարքս-լենինյան տեսության ողջ զինանոցի տիրապետումը լոկ գրքային, ակադեմիական պրոցես չէ։ Դա ամենից առաջ հեղափոխական պայքարի իր և ինտերնացիոնալ փորձի այնպիսի իմացություն է, որը հնարավորություն է ընձեռում դասեր քաղելու, ճիշտ կողմնորոշում սահմանելու պրակտիկ գործողությունների համար, հաշվի առնելու բոլոր վտանգներն ու ստորջրյա խութերը, գործողությունների բոլոր հնարավոր տարբերակները՝ իրադրության կտրուկ շրջադարձի ժամանակ։

ՍՄԿԿ-ն ոչ ոքի չի պատադրում սեփական, ի դեպ՝ անչափ հարուստ փորձից, ինչպես նաև ժամանակակից սոցիալիզմի միջազգային փորձից արած իր հետևությունները։ Բայց մենք համոզված ենք, որ կյանքը, հեղափոխական շարժումը ամենայն անվիճելիությամբ նորից ու նորից հաստատում են սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական շինարարության արմատական, անբաժանելի գծերի առկայությունը ամեն մի երկրում։ Սեղմ, տեսականորեն ընդհանրացված կերպով այդ գծերը ձևակերպված են ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Մեծ Հոկտեմբերը և մարդկության պրոգրեսը» զեկուցման մեջ։ Դա բոլոր աշխատավորների հետ դաշնակցած հանդես եկող բանվոր դասակարգի ներգործուն քաղաքական իշխանությունն է։ Դա այդպիսի իշխանության օգտագործումն է կապիտալիստների և մյուս շահագործողների սոցիալ-տնտեսական տիրապետության վերացման համար։ Դա բանվոր դասակարգի և նրա կոմունիստական ավանգարդի ոգեշնչող ու կազմակերպող դերն է սոցիալիզմի կառուցման պայքարում, աշխատավոր զանգվածներին համախմբելու գործում։ Դա աշխատավորների իշխանության ունակությունն է՝ հեղափոխությունը պաշտպանելու դասակարգային հակառակորդի անխուսափելի գրոհներից։ Այսպիսին է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու առավել ընդհանուր օրինաչափությունների մեր ըմբռնումը։

Կոմունիստական շարժման նվաճումները և աճող գաղափարաքաղաքական պոտենցիալը ակնհայտ տագնապ են առաջացնում դասակարգային հակառակորդի շրջանում։ Ճգնաժամի և իր քաղաքականության պատմական պարտությունների իրադրության մեջ իմպերիալիզմը մոբիլիզացնում է իր քաղաքական ու գաղափարական ռեսուրսները։ Կոորդինացված քայքայիչ կամպանիաները եղբայրական կուսակցությունների դեմ, մեր ողջ շարժման դեմ դարձել են իմպերիալիզմի ընդհանուր համապարփակ ստրատեգիայի անբաժան և առավել կարևոր բաղկացուցիչ մասը։ Ընդսմին, գործադրվում են բոլոր միջոցները. և՛ ամենազազանային ռեպրեսիաները, և՛ ֆաշիստական տիպի հակակոմունիս-



տական ջարդարարների, ինչպես նաև ձախերի պրովոկացիաները, և՛ պրոգրեսիվ մտածողների հալածանքը, օրինակ, ԳՖՀ-ի տխրահռչակ «Պրոֆեսիայի արգելքի մասին օրենքի» օգնությամբ, և՛, իհարկե, անընդմեջ զանգվածային ճնշումը՝ ինֆորմացիայի օրգանների միջոցով։

Թե արյունալի բռնության ինչպիսի ծայրահեղությունների է ընդունակ հասնելու մոնոպոլիստական բուրժուազիան, երբ շոշափում են նրա կենսական շահերը, ցույց են տալիս Լատինական Ամերիկայի իրադարձությունները։

Ի պատասխան ազատագրական շարժման հաջողությունների՝ իմպերիալիզմը և ներքին ռեակցիան այստեղ ձեռնարկեցին հակահարձակում, որը մեծ զոհեր ու տառապանքներ պատճառեց մայրցամաքի ժողովուրդներին։ Իմպերիալիզմին և տեղական օլիգարխիային հաջողվեց լուրջ հարվածներ հասցնել բանվորական և ազատագրական շարժմանը Չիլիում, Ուրուգվայում, Բրազիլիայում, մի քանի այլ երկրներում, մայրցամաքի հարավային մասում ստեղծել ֆաշիստական բռնության օջախ։ Այդ երկրների կոմկուսակցությունները ծանր կորուստներ կրեցին և ստիպված եղան անցնել խոր ընդհատակ։

Չնայած դրան, հիմքեր չկան խոսելու Լատինական Ամերիկայում ռեակցիայի և ֆաշիզմի հաղթանակի մասին։ Ազատագրական շարժումը չի մարել, այն ապրում է ու կրկին ուժեր կուտակում։ Այդ շարժման ավանգարդում են ընթանում կոմունիստական կուսակցությունները, որոնք կազմավորվել են Հոկտեմբերին հաջորդած առաջին տարիներին և ունեն իրենց երկրների աշխատավորների շահերի համար մղած անձնազոհ, հերոսական պայքարի ավելի քան կեսդարյա պատմություն։ Գործելով ամենադժվարին պայմաններում՝ նրանք մասսաներին են հասցնում մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, տարածում են ճշմարտությունը սոցիալիզմի մասին, վճռական պայքար մղում հակակոմունիզմի դեմ, աջ և «ձախ» օպորտունիզմի զանազան դրսևորումների դեմ։

Կոմունիստական շարժման պատմության մեջ հազիվ թե եղել է մի այնպիսի պահ, երբ բուրժուական պրոպագանդան եղբայրական կուսակցությունների հասցեին տեղար թունավոր խոսքերի այնքան աներևակայելի հեղեղ, ինչպես այսօր։ Այդ պրոպագանդիստական հեղեղի կազմակերպիչների նպատակները երևում են, ինչպես ասում են, չզինված աչքով։ Դրանց էությունն է՝ խարխլել կոմունիստական շարժման միասնությունը, կոմունիստական մի կուսակցությունը գժտեցնել մեկ ուրիշի հետ և, առաջին հերթին, սեպ խրել կապիտալիստական երկրների կոմկուսակցությունների և կառավարող մարքս-լենինյան կուսակցությունների միջև։ Բավական ակնհայտ է նաև պրովոկացիոն գործողությունների մեխանիկան։ Դասակարգային հակառակորդը փորձում է սեփական շահերի համար օգտագործել ինքնին բնական մի փաստ. այն պայմանների էական տարբերությունները, որոնցում գործում են եղբայրական կուսակցությունները, նրանց ներկայիս քաղաքական հնարավորությունների, նրանց մերձավորագույն նպատակների և խնդիրների տարբերությունները հարուցում են տարբերություններ նաև այս կամ այն հարցի նկատմամբ եղած գործելակերպում։ Վիճաբանությունների մեջ մտնել այդ հարցերի շուրջ, փորձել տարբերությունները դարձնել տարաձայնություններ, իսկ տարաձայնությունները՝ պառակտում— ահա որն է ներկայիս հակակոմունիստական կամպանիաների և, մասնավորապես, բուրժուազիայի հնարած «եվրոկոմունիզմի» հասկացության շուրջ բարձրացված պրոպագանդիստական աղմուկի նպատակը։

Ուստի, այսօր առանձնապես կարևոր է, որ զանազան կուսակցությունների տեսակետների ու փորձի լայն համադրումը, ընկերական վիճաբանությունները կոմունիստների միջև ընթանան սկզբունքային հիմքի վրա, փոխադարձ հարգանքի ոգով, պարտադիր կերպով հաշվի առնելով միմյանց շահերը, այսինքն՝ ըստ էության, մեր շարժման ընդհանուր շահերը։

Սովետական Միության, սոցիալիզմի մյուս երկրների փառապանծ պատմական փորձի սևացումը, նրանց փորձի և հեղափոխական շարժման հանդեպ ունեցած ծառայությունների անտեսումը, ինչպիսի նկատառումներով էլ որ պատճառաբանվի նման մոտեցումը, վերջին հաշվով, ջուր են գալիս հենց նրանց

դեմ, ովքեր ինչ-որ հաշիվներ են կապում դրա հետ։ Վերջին հաշվով՝ դիմել այդպիսի մեթոդների, նշանակում է խարխլել ու խախտել ժողովուրդների հավատը աշխարհի սոցիալիստական վերակառուցման նկատմամբ, նսեմացնել սոցիալիզմի հեղինակությունը։

Լենինյան ինտերնացիոնալիստական ավանդույթին հավատարիմ սովետական կոմունիստները հետևողականորեն համերաշխ են կապիտալի երկրների իրենց զինակիցների գործունեությանը, ջերմորեն համակրում են նրանց և նոր հաջողություններ ցանկանում բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերի համար նրանց մղած պայքարում։ Մյուս կողմից, արտասահմանի մեր դասակարգային եղբայրների ինտերնացիոնալիստական դիրքորոշումը, նրանց համերաշխությունը մեր հաջողություններին կարևոր խթան են սովետական մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության համար, աջակցում են սոցիալիստական հասարակարգի առջև ծառացող խնդիրների լուծմանը, բարոյաքաղաքական ասպար են մեզ համար։

Հենց այդ պատճառով էլ ՍՄԿԿ Կենտկոմը, որպես իսկական ինտերնացիոնալիզմի դրսևորում, բարձր է գնահատում եղբայրական կուսակցությունների, դեմոկրատական մյուս կուսակցությունների ու պետությունների բազմաթիվ ու հեղինակավոր պատվիրակությունների ժամանումը Հոկտեմբերյան տոնակատարություններին, նրանց ելույթները, նրանց հանդիպումը սովետական ժողովրդի հետ։

## IV

Առաջին սոցիալիստական պետության կազմավորման հետ մեկտեղ, ինտերնացիոնալիզմը դարձավ այժմ արդեն կառավարող կոմունիստական կուսակցության ներքին և միջազգային գործունեության ղեկավար սկզբունքներից մեկը։ Այժմ սովետական նոր Սահմանադրության մեջ այն ստացել է պետական օրենքի ուժ։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը խորացրեց ու ընդլայնեց աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության ձևերն ու բովանդակությունը։ Առաջացավ ու ամրապնդվեց դրա այնպիսի մի ձև, ինչպիսին է սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, որը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կիրառումն ու զարգացումն է սուվերեն սոցիալիստական պետությունների հարաբերություններում։

Ինտերնացիոնալիզմի զարգացումն արտահայտվել է նաև այն բանում, որ իմպերիալիզմի գաղութային սիստեմի խորտակումից և հակաիմպերիալիստական ու սոցիալիստական կողմնորոշում ունեցող մի քանի տասնյակ պետությունների առաջացումից հետո դրա սկզբունքները գործնականորեն կիրառվում են նաև սոցիալիստական պետությունների և համաշխարհային քաղաքականության ու սոցիալական առաջընթացի այդ նոր ակտիվ ուժի բազմապիսի հարաբերություններում։ Ինտերնացիոնալիզմի ժամանակակից բովանդակության տարողունակ սահմանումը, ինչպես հայտնի է, տվել է կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի խորհրդակցությունը. «Սոցիալիստական երկրների ժողովուրդներ, կապիտալի երկրների պրոլետարնե՛ր, դեմոկրատական բոլոր ուժե՛ր, ազատագրված և ճնշված ժողովուրդնե՛ր, միավորվեցե՛ք իմպերիալիզմի դեմ, խաղաղության, ազգային անկախության, սոցիալական առաջադիմության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող ընդհանուր պայքարում»։

Պատահում է, որ հետևություն է արվում, թե իբր ինտերնացիոնալիզմի այդպիսի «լայն», «նոր» հասկացության նկատմամբ արդեն անկիրառելի է «պրոլետարական» տերմինը։ Բայց չէ՞ որ այդ տերմինը Մարքսի և Էնգելսի ժամանակներում ևս չէր նշանակում, թե խոսքը միայն ու բացառապես տարբեր երկրների պրոլետարների համերաշխության մասին է։ Ժամանակի ընթացքում համերաշխության շարժումներին սկսեցին մասնակցել ամենատարբեր սոցիալական խավերին պատկանող ավելի ու ավելի լայն մասսաներ։ Մեր



կարծիքով, դա վկայում է ոչ թե այն մասին, որ ինտերնացիոնալիզմը կորցրել է իր պրոլետարական բնույթը, այլ այն մասին, որ ավելի է ամրացել նրա դասակարգային բովանդակությունը։ Իրոք, ինտերնացիոնալիստական համերաշխության կողմնակիցների թվի աճը խոսում է այն մասին, որ պրոլետարիատը հաջողությամբ առաջ է ընթանում իր համաշխարհային պատմական առաքելության՝ խաղաղության, դեմոկրատիայի, ժողովուրդների ազատության, սոցիալիզմի համար պայքարելու ունակ բոլոր մարդկանց ընդհանուր պլատֆորմի բազայի վրա համախմբելու միսիան իրականացման ճանապարհով։

«Պրոլետարական ինտերնացիոնալիզմ» տերմինը չի հնացել, այն այսօր ևս ճշտորեն ցույց է տալիս ինտերնացիոնալիզմի ծագումը, դրա դասակարգային սկզբնահիմքը, այն, թե ո՞վ է դրա գլխավոր և ամենահետևողական կրողը։ Բանվոր դասակարգն իր գաղափարների շուրջն է համախմբում աշխատանքի բոլոր մարդկանց՝ շահագործողների ու կեղեքիչների դեմ նրանց մղած պայքարում։ Եվ հրաժարվել այդ տերմինից, որը ցուցադրում է հեղափոխական մարտիկների հավատարմությունն իրենց ավանդույթներին, նույնքան անիմաստ է, որքան և փոխել «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» նշանավոր լոզունգը, օրինակ, այն հիման վրա, որ սոցիալիստական երկրներում արդեն չկան պրոլետարներ, այլ կա բանվոր դասակարգ՝ նոր հասարակարգի առաջատար սոցիալ-քաղաքական ուժը։

Երբեմն փորձում են ապացուցել, թե, իբր, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը արմատական վերանայման կարիք ունի, քանի որ, իբր, այժմ փոխվել է կապը ինտերնացիոնալիստականի և ազգայինի միջև մարդկության ընդհանուր զարգացման մեջ, և «առաջնությունը» մեր ժամանակներում պատկանում է ազգային սկզբունքին։ Իրականում հիմք չկա հակադրելու ազգայինը և ինտերնացիոնալը։

Անկասկած, կոմկուսակցությունները նշանակալի քաղաքական ուժի վերածվելու պրոցեսը հանգեցնում է նրանց համազգային խնդիրների ծավալի ընդլայնման, որոշ բաներում փոխում է նաև այդ խնդիրների բնույթը։ Ազգային անկախության և ինքնուրույնության պրոբլեմների հարաճուն նշանակությունը, ընդ որում, նաև զարգացած կապիտալիզմի պայմաններում, մեծացնում է հայրենասիրական պահանջների տեսակարար կշիռը կոմունիստների քաղաքականության մեջ, բարձրացնում նրանց դերը՝ որպես ազգի բուն շահերի առավել հետևողական ու տոկուն արտահայտիչների, որպես հասարակության բոլոր առողջ ուժերի համախմբման գործոնի՝ մոնոպոլիստական կապիտալի տիրապետության հետևանքով ստեղծված ճգնաժամային փակուղուց դեմոկրատական ելք գտնելու համար մղվող պայքարում։ Կոմունիստները հանդես են գալիս որպես նախաձեռնողներ ու գլխավոր ուժ համաշխարհային իմպերիալիզմի կողմից տվյալ երկրի վրա գործադրվող ճնշման դեմ, ամեն տեսակ վերազգային մոնոպոլիստական միությունների և կազմակերպությունների կողմից իրենց երկրների սուվերենության սպառնալիքի դեմ մղվող պայքարում։

Այդ բոլորը ճիշտ է։ Բայց եթե այդ պրոցեսներից ամեն մեկը դիտենք պատմական զարգացման ընդհանուր ընթացքից կտրված, բացարձակացնենք դրանք, ապա այդպիսի միակողմանիությունը կարող է հանգեցնել այն սխալ հետևության, թե, իբր, ինտերնացիոնալիզմի դերը զրեթե վերանում է։

Իսկ եթե իրականությունը դիտենք համակողմանի, ինչպես այդ պահանջում է մարքսիզմ-լենինիզմը, ապա դյուրին է տեսնել կոմունիստների, բոլոր առաջադեմ ուժերի ինտերնացիոնալ համերաշխության պրակտիկ նշանակության մեծացումը։ Ազգայինի և ինտերնացիոնալի փոխադարձ կապը կոմունիստական շարժման մեջ, ողջ հեղափոխական պրակտիկայում դարձել է ավելի խոր ու անհրաժեշտ։ Երբեք չի եղել, իսկ այսօր առավել ևս չկա և չի կարող լինել անտագոնիստական հակասություն տվյալ ժողովրդի, տվյալ կոմկուսակցության ազգային շահերի և համաշխարհային հեղափոխական շարժման ինտերնացիոնալ շահերի միջև։

Հասարակական կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսը, որ դեռևս XX դարի սկզբին նշել էր Լենինը, ուժեղացնում է միջազգային գործոնների ազդեցությունը ամեն մի երկրի զարգացման վրա, բոլոր ազգային հասարակա-

կան և քաղաքական շարժումների գործունեության վրա։ Դեռ երբեք պայքարի պայմաններն ազգային շրջանակներում այդքան մեծ չափով կախված չեն եղել միջազգային ասպարեզում ստեղծված ուժերի հարաբերակցությունից, սոցիալիստական երկրների միջազգային գործունեությունից, համաշխարհային հակաիմպերիալիստական շարժման մյուս բաղադրատարրերի ակտիվությունից։

Դրա հետ մեկտեղ այժմ ծագում են բազմաթիվ պրոբլեմներ, որոնք պահանջում են միավորում միջազգային պլանով։ Յուրաքանչյուր եղբայրական կուսակցության աշխատանքում բարձրանում է նաև իրենց էությամբ ինտերնացիոնալ խնդիրների տեսակարար կշիռը։ Դրանցից գլխավորն է լայն պայքարի ծավալումը համաշխարհային պատերազմի կանխման, ընդհանուր խաղաղության ամրապնդման համար, ընդդեմ սպառազինությունների մրցավազքի, իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների ու պլանների։

Նկատելիորեն ուժեղացել է, այսպես կոչված՝ բազմազգ կոմպանիաների բռնության դեմ համերաշխորեն հանդես եկող աշխատավորների դասակարգային պայքարի ինտերնացիոնալ բնույթը։ Առավել մեծ նշանակություն են ստանում ազատագրական, դեմոկրատական շարժումների միջազգային պաշտպանությունը, համերաշխությունը ռեակցիայի կալանավորների հետ։ Ինտերնացիոնալիզմի հրատապությունը որոշվում է նաև նրանով, որ այժմ աճում է մոնոպոլիստական կապիտալի ձգտումը՝ միավորելու իր ջանքերը միջազգային մակարդակով, համաձայնեցնելու գործողությունները հեղափոխական ուժերի դեմ մղվող պայքարում։

Ուշագրավ է այն հանգամանքը, որ սոցիալ-դեմոկրատական կուսակցությունները, ընդ որում, նաև սոցիալիստական ինտերնացիոնալի օգնությամբ, վերջին ժամանակներս ակտիվորեն ամրապնդում են կապերը միմյանց միջև և քաղաքական մյուս ուժերի հետ։ Առանց երկյուղելու, թե կարող են մեղադրել միջամտության և կուսակցությունների սուվերենությունը խախտելու մեջ, սոցիալիստական ինտերնացիոնալը կանոնավոր կերպով հրավիրում է իր կոնգրեսները, բյուրոյի և մյուս կենտրոնական մարմինների նիստերը, մի քանի կուսակցությունների ներկայացուցիչներից բաղկացած հանձնաժողովներ է ուղարկում աշխարհի տարբեր շրջանները, կարճ ասած՝ ամեն կերպ ուժեղացնում է հետաքրքրությունը միջազգային պրոբլեմների նկատմամբ։

Երբեմն ինտերնացիոնալիզմի էության մասին ծավալվող վիճաբանություններում դրան, ասես, հակադրում են եղբայրական կուսակցությունների փոխհարաբերություններում ամուր հաստատված սկզբունքներն ու նորմերը՝ յուրաքանչյուր կուսակցության ինքնուրույնությունն ու իրավահավասարությունը հարգելը, միմյանց ներքին գործերին չմիջամտելը, կուսակցությունների անվերապահ անկախությունն ու լիակատար ինքնուրույնությունն իրենց քաղաքականությունը որոշելու գործում։ ՍՄԿԿ-ն դեմ է այդպիսի հակադրությանը։ Ավելին, Բեռլինի կոնֆերանսի փաստաթղթին լիովին համապատասխան, նա գտնում է, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի ժամանակակից ըմբռնումը օրգանապես ընդգրկում է նաև այդ նորմերն ու սկզբունքները։

Բոլոր նրանց համար, ովքեր չեն ցանկանում ջուր պղտորել, ակնհայտ է, որ միջազգային կոմունիստական շարժման կենտրոնի գոյությունը պատկանում է անցյալին։ Եվ այդ անցյալի նկատմամբ ողջ հարգանքով հանդերձ, պատշաճը հատուցելով արդի դարաշրջանի հեղափոխական ուժերի կազմավորման գործում Կոմինտերնի աչքի ընկնող դերին, մարքսիստ-լենինյաններից ոչ ոք չի առաջարկում վերակենդանացնել այն որևէ ձևով։

Կոմունիստական շարժման հաջող զարգացումը ենթադրում է մշտական հոգատարություն այն մասին, որ եղբայրական կուսակցությունների փոխհարաբերությունների ձևերը համապատասխանեն պատմական տվյալ փուլի պահանջներին։ Մեր ժամանակներում կոմունիստների համաշխարհային ընդհանրության գաղափարները, ինտերնացիոնալ համերաշխության ավանդույթներն իրենց անդրադարձումն են գտնում միջազգային կամպանիաներում, միջկուսակցական լայն ու սիստեմատիկ կապերում, կոլեկտիվ տեսական աշխատանքում, երկկողմ և բազմակողմ հանդիպումներում, համաշխարհային



քաղաքականության կոնկրետ հարցերին վերաբերող համատեղ քաղաքական գործողություններում։

Անտարակույս, խաղաղության, լարվածության թուլացման և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի ամենալայն շրջանի արմատական հարցերի վերաբերյալ եղբայրական կուսակցությունների հայացքների ընդհանրությունը կոմունիստների գործողությունների ինտերնացիոնալ միասնությունն այսուհետ ևս զարգացնելու ու ամրապնդելու ամուր հիմքն է։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի հետ միասին համաշխարհային հեղափոխական պրոցեսի անբաժանելի մասը դարձավ ազգային-ազատագրական շարժումը։ Պատմությունը փայլուն կերպով հաստատել է Լենինի այն կանխատեսումը, որ սոցիալիստական հեղափոխությունը «չի լինելու միայն ու գլխավորապես յուրաքանչյուր երկրի հեղափոխական պրոլետարիատի պայքարը իր բուրժուազիայի դեմ, ո՛չ, այն կլինի իմպերիալիզմի կողմից ճնշված բոլոր գաղութների և երկրների, բոլոր կախյալ երկրների պայքարը միջազգային իմպերիալիզմի դեմ» (Երկեր, հ. 30, էջ 185)։ Առաջին սոցիալիստական պետության ծագումը, ապա և սոցիալիստական պետությունների սիստեմի կազմավորումը հուժկու զարկ տվեցին ազգային-ազատագրական պայքարին։ Պրոգրեսիվ մարդկությունը ծավալեց ու շահեց ճակատամարտը գաղութատիրության դեմ։

Այժմ աֆրիկյան մայրցամաքի հարավային մասում պայքար է տեղի ունենում ռասայական-գաղութային վարչակարգերի վերջին հենարանները ոչնչացնելու համար։ Աշխարհն ականատես է այն ծանր հանցագործություններին, որ կատարում են Նամիբիայի, Զիմբաբվեի, ՀԱՀ-ի աֆրիկյան բնակչության միլիոնավոր զանգվածների կեղեքիչները։ Մեր համակրանքը, մեր պաշտպանությունը ամբողջովին այդ երկրներում ազատության համար, մարդու կենսական իրավունքների համար, ապարտեիդի խայտառակ սիստեմի լիակատար ոչնչացման համար պայքարող մարտիկների կողմն է։ Մենք հաստատ համոզված ենք, որ հեռու չէ Աֆրիկայի Հարավի ժողովուրդների արդար գործի վերջնական հաղթանակի ժամը։

Ազգային-ազատագրական շարժումը թևակոխել է որակապես նոր փուլ։ Առաջին պլանում են տնտեսական և սոցիալական ազատագրության խնդիրները։ Դրանց լուծումը բացառիկ բարդ գործ է, քանի որ անհրաժեշտ է հաղթահարել դարավոր տնտեսական հետամնացությունը, գաղութային անցյալի ծանր ժառանգությունը, քանի որ հարկավոր է արմատախիլ անել արխայիկ սոցիալական ստրուկտուրաները, որը կապված է իմպերիալիզմի և տեղական ռեակցիայի դեմ մղվող ամենասուր պայքարի հետ։ Նեոգաղութատիրության այնպիսի լծակների օգնությամբ, ինչպիսիք են կապիտալի արտահանումը, գների և վալյուտային կուրսի հետ կատարվող մեքենայությունները, բազմազգ կորպորացիաների և միջազգային ֆինանսական կազմակերպությունների ճնշումը, իմպերիալիզմը փորձում է ամրացնել ազատագրված երկրների կախյալ դրությունը, հավերժացնել դրանց հետամնացությունը։ Իմպերիալիզմը երկպառակություններ է սերմանում ազատագրված պետությունների միջև, ձգտում է բորբոքել անցյալից եկող հակասությունները, հրահրում է եղբայրասպան ռազմական ընդհարումներ։

Ավելի է սրվում հետագա զարգացման ուղիների ընտրության շուրջ ծավալված պայքարը։ Այն սերտորեն կապված է ուժեղացող սոցիալական շերտավորման հետ։ Աշխարհի մի շարք շրջաններում նկատելի է դառնում հասարակական առաջավոր ուժերի և լայն մասսաների՝ սոցիալիստական ուղին ընտրելու ձգտումը։ Մեծանում է այն երկրների թիվը, որոնք ընտրել են սոցիալիստական կողմնորոշումը և թևակոխել նոր էկոնոմիկայի կառուցման ուղին՝ առանց օտարերկրյա ու տեղական կապիտալի տիրապետության։ Որոշ հեղափոխական-դեմոկրատական կուսակցություններ մարքսիզմ-լենինիզմը հռչակում են որպես իրենց գործունեության գաղափարական ու քաղաքական հիմք։ Այդպիսով, ազգային-ազատագրական շարժումն սկսում է միանալ գիտական սոցիալիզմին։ Եվ դա լրացուցիչ նախադրյալներ է ստեղծում, որպեսզի այդ

շարժումից աճած մի շարք պետություններ անցնեն սոցիալիստական վերափոխումների:

Արդի փուլում հսկայական նշանակություն ունի սոցիալիզմի աշխարհի հետ երիտասարդ ազգային պետությունների համագործակցությունը, որը հիմնված է իրավահավասարության և փոխադարձ շահավետության վրա: Երկկողմ կապերի հետագա խորացման ու զարգացման հետ միասին, որոնք նպաստում են այդ պետությունների էկոնոմիկայի արդիականացմանն ու սոցիալական առաջընթացին, այժմ ավելի ու ավելի մեծ դեր է խաղում նրանց համագործակցությունը սոցիալիստական երկրների հետ՝ հանուն համաշխարհային տնտեսական կապերի ողջ սիստեմի արմատական վերակառուցման, միջազգային իմպերիալիզմի կողմից ազատագրված պետությունների շահագործման հաղթահարման, ամբողջ աշխարհի խաղաղության և անվտանգության համար մղվող պայքարում:

Թևակոխելով Հոկտեմբերյան դարաշրջանի յոթերորդ տասնամյակը, սովետական ժողովուրդը, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, լավատեսությամբ ու վստահությամբ է նայում ապագային: Հոկտեմբերի բացած ու նրա լույսով լուսավորված ուղիներում, նրա արթնացրած ու ոգեշնչած հասարակական անհաղթահարելի ուժերը փնտրում և գտնում են մեր ժամանակի արմատական հարցերի լուծումը:

— Հոկտեմբերի պատմական փորձը, որը գիտականորեն ընդհանրացված է մարքս-լենինյան կուսակցությունների կողմից, հեղափոխական պայքարի միջազգային փորձը պարունակում է գաղափարա-քաղաքական վիթխարի լիցք, բոլոր երկրներում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների առավել մեծ տարածման գրավականն է և աշխարհի սոցիալիստական վերակառուցման գործում նորանոր հաղթանակների աղբյուրը:

— Համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության արմատական տեղաշարժը, որի սկիզբը դրեց Հոկտեմբերը և որն այժմ վերածվել է սոցիալիզմի, հասարակական առաջընթացի, դեմոկրատիայի և խաղաղության ուժերի անդառնալի պատմական գերակշռության, նախադրյալներ է ստեղծել համաշխարհային պատերազմի կանխման, կայուն խաղաղության հաստատման համար, ինչպես նաև մի շարք այլ գլոբալ սուր պրոբլեմներ՝ էկոլոգիական, հումքային, էներգետիկ, պարենային պրոբլեմները հօգուտ բոլոր ժողովուրդների շահերի լուծելու համար:

— Մի շարք երկրներում հաղաթանակած և հասունության շրջանը թևակոխած նոր հասարակարգն իր պլացդարմում՝ ՍՍՀՄ-ում, հաջողությամբ կենսագործում է Մարքսի և Էնգելսի ձևակերպած ու սովետական նոր Սահմանադրության մեջ որպես օրենք հռչակված վեհ սկզբունքը. «...Յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է»:

Այդ սկզբունքի իրագործումը պրակտիկայում նորանոր հաղթանակներ կբերի մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքին, խաղաղության և կոմունիզմի գործին:

«Коммунист» № 17, 1977 г.

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԱՆՀԱՏԸ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Ի. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը մշակեց մեր երկրի հետագա համակողմանի զարգացման սոցիալ-տնտեսական լայն ծրագիր, որն իրագործվում է ընթացիկ հնգամյակում: Դա կարևոր փուլ է նշանավորում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, նոր մարդու ձևավորման գործում: Կուսակցությունը տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրը համարեց ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը, որը միշտ եղել ու մնում է նրա տնտեսական ստրատեգիայի գերագույն նպատակը:

Այժմ առավել հրատապ է հասարակական կյանքի բոլոր կողմերի, այդ թվում մարդու կենսագործունեության ոլորտների գիտական կառավարումը: Վերջինս ենթադրում է գիտակցական, նպատակամետ բազմապիսի միջոցառումների իրականացում, կառավարման համակարգի բոլոր օղակներում մարդկային գործոնի դերի բարձրացում, նյութական ու հոգևոր արժույթների արդյունավետ օգտագործում: Այդ բոլորը պայմանավորված է սոցիալիստական շինարարության մասշտաբների աճով, գիտատեխնիկական հեղափոխության, ժողովրդական տնտեսության ինտենսիվ զարգացման պահանջներով, երկրի առջև ծառացած տնտեսական, քաղաքական և գաղափարական հարցերի լուծման անհրաժեշտությամբ:

Սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում սոցիալական պրոցեսների կառավարումը մշտապես դիտվել է որպես առաջադրված խնդիրների իրականացման կարևոր միջոց և պայման: Վ. Ի. Լենինը Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո երկիրը կառավարելու գործը համարեց սովետական իշխանության առաջնահերթ խնդիրը: «Մենք այժմ պետք է Ռուսաստանը կառավարենք... Սա ամենադժվար խնդիրն է, որովհետև գործը վերաբերում է տասնյակ և տասնյակ-միլիոնավոր մարդկանց կյանքի ամենախոր, տնտեսական հիմքերի նոր ձևով կազմակերպմանը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 287):

Սոցիալիզմը պլանաչափ զարգացող հասարակարգ է, որը լայն հնարավորություններ է ընձեռում անհատի կենսագործունեության բոլոր պրոցեսների գիտական կառավարման համար, հաղթահարում է աշխատանքի և սոցիալական հարաբերությունների օտարումը, վերացնում անհատի և հասարա-

կության շահերի միջև եղած հակադրությունը, ստեղծում սոցիալական հարաբերությունների կարգավորման օբյեկտիվ պայմաններ՝ կառավարման բոլոր մակարդակներում սուբյեկտի գործունեության ծավալման համար։

Սոցիալական պրոցեսների գիտական կառավարման ապահովումը պահանջում է խորապես ճանաչել հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքները, բացահայտել զարգացման առաջավոր միտումները, ընդունել գիտականորեն հիմնավորված որոշումներ, կատարելագործել կառավարման մեթոդներն ու ձևերը։ Այսպիսով, կառավարման համակարգի գործունեության բարելավումը ներառում է մարդկանց սոցիալական հարաբերությունները կարգավորող տնտեսական խթանների ու լծակների հմուտ օգտագործումը, սոցիալական պրոցեսների պլանավորման, կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործումը, երկրի կառավարմանը աշխատավորական զանգվածների մասնակցության ընդլայնումը և այլն։

Սոցիալիզմի պայմաններում կառավարման համակարգի գործունեության արդյունավետության բարձրացումն ապահովվում է, ամենից առաջ, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները տնտեսության վարման սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ օրգանապես միակցելու ճանապարհով։ Բանն այն է, որ հեղաշրջումները գիտության ու տեխնիկայի բնագավառում որակական փոփոխություններ են առաջացնում ո՛չ միայն հասարակության տեխնիկական բազիսում, այլև սոցիալական հարաբերությունների ողջ համակարգում, կառավարման բուն մեխանիզմում։ Դրա հետ կապված, փոփոխվում են նաև մարդու տեղն ու դերը կառավարման համակարգում։ Որպես կառավարման օբյեկտ, մարդն արդեն դիտվում է ավելի լայն հասարակական կապերի համակարգում, սոցիալ-տնտեսական, քաղաքական, իրավական ու բարոյական հարաբերությունների ամբողջության մեջ։ Այս դեպքում անհրաժեշտաբար կառավարման համակարգի առջև ծառանում է նոր մարդու ձևավորման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման պրոբլեմը։ ՍՄԿԿ XXV համագումարը, հատկապես կարևորելով այդ հարցը, պահանջեց, աշխատավորների տարբեր խմբերի առանձնահատկությունները հաշվի առնելով, ապահովել գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնությունը։ Անհատի դաստիարակության նկատմամբ կոմպլեքսային մոտեցման պահանջը պայմանավորված է մարդու էությամբ։ Մարքսի բնութագրմամբ, մարդու էությունը որոշվում է հասարակական հարաբերությունների ամբողջությամբ։ Ուստի, կյանքի հետ ունեցած այդ բազմակողմանի հարաբերությամբ էլ որոշվում է անհատի համակողմանի զարգացման մակարդակը։ Շեշտելով այդ միտքը, Մարքսն ու Էնգելսը գրել են, որ եթե անհատի կյանքն ընդգրկում է գործունեության լայն ու բազմազան բնագավառներ և աշխարհի նկատմամբ գործնական հարաբերության զանազան ձևեր և, այդպիսով, հանդիսանում բազմակողմանի կյանք, մտածողությունը կրում է նույնպիսի ունիվերսալ բնույթ, ինչպիսին նրա կյանքի մյուս բոլոր դրսևորումները (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т, 3. стр. 253)։ Անհատի ձևավորման համակողմանի, կոմպլեքսային ուսումնասիրումը հասարակական գիտությունների առաջնահերթ խնդիրներից է։

Անհատը հասարակական հարաբերությունների ու սոցիալական ճանաչման ամենաբարդ համակարգն է։ Հետևաբար, անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել նոր մարդու ձևավորման օրինաչափություններն ու առանձնահատկությունները, տեխնիկաարտադրական, կազմակերպչական, գաղափարական, բարոյական, սոցիալ-հոգեբանական գործոնները։

Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում անընդհատ փոխվում է մարդու կենսագործունեության սոցիալական միջավայրը, ընդլայնվում են անհատի գործունեության ոլորտները, կյանքի նկատմամբ նրա վերաբերմունքը դառնում է ավելի ինտենսիվ ու բազմակողմանի։ Այս պայմաններում ավելի է բարդանում սոցիալական կառավարումը, իսկ դա իր հերթին պահանջում է կառավարման գիտության զարգացում, հասարակական կյանքի կազ-



մակերպման նոր ձևերի ու մեթոդների իրացում, մարդկային հարաբերությունների կարգավորման օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնների ճիշտ զուգորդում, սոցիալական պրոցեսների հեռանկարային պլանավորում և ապագայի գիտական կանխատեսում։ Մարդը, որպես բիոսոցիալ էակ, ունի բազմապիսի պահանջմունքներ, շահեր, ձգտումներ, նպատակներ, որոնց իրականացման համար սոցիալիզմը ստեղծում է անհրաժեշտ հասարակական պայմաններ։

Կառավարման սուբյեկտի (տվյալ դեպքում հասարակության) խնդիրն է՝ մշակել անհատի պահանջմունքների բավարարման առավել օպտիմալ միջոցներ, իմաստավորել նրա բազմակողմանի ունակությունների զարգացման ու իրացման պրոցեսը։ Կուսակցության ծրագրում նշված է, որ կոմունիզմի օրոք անհատը պետք է հասնի համակողմանի, ներդաշնակ զարգացման, իր մեջ զուգակցելով հոգեկան հարստությունը, բարոյական մաքրությունը և ֆիզիկական կատարելությունը։ Կոմունիստական շինարարության պրոցեսում սոցիալական առաջընթացի ամեն մի քայլ գիտականորեն հիմնավորվում ու համադրվում է այդ նպատակի հետ, որի իրագործումը մեր օրերում դարձել է գործնական խնդիր։ Դրա համար հիմք են ծառայում սոցիալիզմի ստեղծած ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր նախադրյալները։ Հասուն սոցիալիզմի պայմաններում այդ հնարավորություններն ավելի են ընդլայնվում՝ կապված մարդկանց աշխատանքային պայմանների բարելավման, նյութական բարեկեցության բարձրացման, կրթության սիստեմի, սպասարկման ոլորտի կատարելագործման, կենցաղային ծառայությունների ընդլայնման հետ։

«Կոմունիզմի կառուցումը,— ասում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— անկարելի է առաջ շարժել առանց իր՝ մարդու բազմակողմանի զարգացման։ Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապատասխան բազայի»։ Ուրեմն սոցիալիստական շինարարության պրոցեսում աստիճանաբար ավելանում են այն պահանջները, որոնք ներկայացվում են անհատին՝ որպես սոցիալական գործունեության սուբյեկտի։

Անհատը սոցիալական կառավարման ո՛չ միայն օբյեկտն է, այլև սուբյեկտը։ Կառավարման համակարգում նրա գործունեությունն ընդգրկում է երկու բնագավառ. առաջինը տեխնիկական համակարգերի կառավարումն է (մարդ-տեխնիկա հարաբերություն), երկրորդը՝ սոցիալ-տնտեսական, հոգևոր պրոցեսների կառավարումը (մարդ-մարդ հարաբերություն)։ Կառավարումը մարդկային գործունեության հատուկ ոլորտ է, որը պահանջում է ճանաչողական ու ստեղծագործական բարդ աշխատանք։ Հասարակական արտադրության մասշտաբների ընդլայնման, սոցիալական պրոցեսների բարդացման պայմաններում մարդը կառավարման իր գլխավոր ֆունկցիան իրականացնում է կառավարման տեխնիկական միջոցների և կառավարման գիտության նվաճումների լայն կիրառմամբ։

Արտադրության մեջ, ինչպես նաև հասարակական կյանքի տարբեր ոլորտներում այժմ լայնորեն կիրառվում են էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, կառավարման հոսքային համակարգեր, կիբեռնետիկական սարքեր և այլ տեխնիկական միջոցներ։ Տեխնիկայի միջոցով մարդիկ մի կողմից բարձրացնում են իրենց աշխատանքի արտադրողականությունը, մյուս կողմից կատարելագործում հասարակական արտադրության և մարդկային գործունեության այլ ոլորտների կառավարման իրենց ունակությունները։ Տեխնիկան, ինչպես նյութական բարիքների արտադրության մեջ, այնպես էլ կառավարման համակարգում, միշտ միջոց է հանդիսացել մարդու՝ որպես հասարակության գլխավոր արտադրաուժի և կառավարման սուբյեկտի, ֆունկցիայի կատարման համար։ Պատմական զարգացման պրոցեսում մարդն անընդհատ կատարելագործում է արտադրության միջոցները, ընդլայնում գիտության և տեխնիկայի կիրառման ոլորտները։ Այս ճանապարհով մարդու և տեխնիկայի միջև ֆունկցիաների

որոշակի վերաբաշխում է կատարվում։ Մեքենան մարդուն ազատում է ծանր ֆիզիկական աշխատանքից, մտավոր աշխատանքի որոշ տեսակներից և կառավարման այնպիսի ֆունկցիաներից, որոնք ավտոմատացված արտադրության պայմաններում մարդու համար դառնում են անմատչելի ու դժվար։ Այս դեպքում մարդու մասնակցությունը հասարակական արտադրությանը և նրա կառավարմանը տեղի է ունենում ավելի շատ միջնորդավորված ձևով, քան անմիջական։ Նման պայմաններում, բնականաբար, անհատի առջև ծառանում են հասարակական արտադրության կառավարման ու սոցիալական կյանքի կազմակերպման ավելի բարդ խնդիրներ։ Արտադրության տեխնիկական ու գիտական բարձր հագեցվածությունը, արտադրական խոշոր միավորումների ու կառավարման համակարգերի ստեղծումը, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև արտադրական կապերի ընդլայնումը պահանջում են ո՛չ միայն տեխնիկատնտեսական, այլև սոցիալական բազմապիսի միջոցառումների կոորդինացում ու իրացում։ Այլ կերպ ասած, հասարակության կառավարումը, որն իրականացվում է բազմաթիվ օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների փոխներգործությամբ, ենթադրում է կառավարչական գործունեության՝ իմացաբանական և ստեղծագործական բնույթի այնպիսի տեսակներ, որոնք հատուկ են միայն մարդկանց։ Կառավարման տեխնիկական միջոցները, որքան էլ դրանք կատարելագործվեն, չեն կարող մարդուն լիովին ձերբազատել սոցիալական պրոցեսների կառավարման գլխավոր ֆունկցիայի կատարման պարտականություններից։ Ընդհակառակը, հասարակական կյանքի բարդացմանը համընթաց մշտապես կմեծանա մարդկային գործոնի դերն արտադրաուժերի համակարգում և առանձնապես կառավարման ոլորտում։ Իսկ դա իր հերթին պահանջում է անհատի գործունեության գնահատման նոր չափանիշներ, սոցիալ-բարոյական նոր արժեքավորում։ Այս պարագաներում անհատի կառավարման ունակությունների զարգացումը պայմանավորվում է նրա կրթական և ընդհանուր կուլտուրական մակարդակով, սոցիալական ակտիվությամբ, կամային ջանքերով և այլն։ Հասարակական արտադրության ինտենսիվ զարգացման պայմաններում տեխնիկական համակարգերը կառավարելու և դրանք արդյունավետ օգտագործելու համար պահանջվում են ոչ թե սոսկ էմպիրիկ աշխատանքային հմտություններ ու պրոֆեսիոնալ գիտելիքներ, այլ կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակ, կազմակերպական հմտություններ, հասարակական-քաղաքական լայն մտահորիզոն։ Այժմ ավելի ակնհայտ է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը, հասարակական արտադրության արդյունավետության մեծացումը, այդ պրոցեսի գիտական կազմակերպումը պայմանավորված են ո՛չ միայն գիտության և տեխնիկայի նվաճումների ինտենսիվ օգտագործմամբ, այլև անհատի հասարակական ակտիվությունը խթանող սոցիալ-հոգեբանական, բարոյական գործոններով, որոնք նոր լիցք են հաղորդում անհատի ստեղծագործական ունակությունների, նախաձեռնության զարգացմանն ու ծավալմանը։ Այդ օբյեկտիվ պահանջն ավելի մեծ չափերով արտացոլվում է կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանավորման պրակտիկայում, որը ներառում է մարդկանց աշխատանքի, կրթության, դաստիարակության, կենցաղի, հանգստի կազմակերպման հարցերը և այլն։

Գիտատեխնիկական հեղափոխությունն ավելի ինտենսիվ է դարձնում հասարակական կյանքի զարգացումը, փոխում է արտադրության և աշխատանքի բնույթը, բարձրացնում աշխատանքային պրոցեսի գիտական կազմակերպման նշանակությունը, ավելի ուժեղացնում տնտեսական ու սոցիալական պրոցեսների փոխկապվածությունը։ Այս ամենը նոր պահանջներ են առաջադրում անհատի սոցիալական ու հոգևոր զարգացմանը։ Այդ իմաստով, թերևս, սոցիալական կառավարման ամենաբարդ ու դժվարին բնագավառը սոցիալ-տնտեսական և հոգևոր պրոցեսների վարումն է, որտեղ գլխավորը մարդկային հարաբերությունների կարգավորումն է, այսինքն՝ մարդու կառավարումը։

Կառավարել մարդկանց նշանակում է ճիշտ որոշել նրանցից յուրաքանչյուրի սոցիալական դերը, նրա տեղը հասարակության մեջ, ֆունկցիաները,



իրավունքներն ու պարտականությունները, գիտականորեն հիմնավորված ձևով կազմակերպել նրանց աշխատանքը, հոգևոր կյանքը, կենցաղը, դաստիարակության ողջ պրոցեսը։ Այլ կերպ ասած, սոցիալական կյանքը պետք է այնպես կազմակերպել, որ անհատն ըստ ամենայնի ծավալի իր սոցիալական գործունեությունը, ճիշտ գիտակցի իր իրավունքներն ու պարտականությունները, իրավական ու բարոյական նորմերը։ Իսկ քանի որ մարդը որոշակի կոլեկտիվի, սոցիալական խմբի, դասակարգի անդամ է, որոնք ունեն առանձնահատուկ գծեր, պահանջմունքներ, շահեր, ապա նշանակում է, որ մարդկանց կառավարումը միաժամանակ աշխատանքային կոլեկտիվների, սոցիալական խմբերի, դասակարգերի միջև եղած հարաբերությունների կարգավորումն ու կառավարումն է։ Կառավարումը մասսաների կազմակերպումն է, նրանց շահերի ուսումնասիրումը, հաշվառումը և համատեղումը, ստեղծագործական պրոցեսների ակտիվացումը և հասարակության առջև դրված խնդիրների լուծման համար այդ ամենի միավորումը։ Տվյալ դեպքում մարդկային հարաբերությունների կատարելագործումը, սոցիալական պրոցեսների գիտական կառավարումը ծառայում են սոցիալիստական հասարակարգի առաջընթացի պահանջներին, նպաստում անհատի ու հասարակության շահերի մերձեցմանը և դրանով իսկ անհատի զարգացումը դարձնում ավելի նպատակային ու հասարակականորեն արժեքավորված։ Կոմունիստական կուսակցությունն ու սոցիալիստական պետությունը մշտապես հոգում են մարդկանց դաստիարակության գործում աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացման, նրանց իրավասության ընդլայնման մասին։ Ելնելով երկրի արտադրաուժերի զարգացման պահանջներից ու սոցիալական հարաբերությունների կատարելագործման անհրաժեշտությունից, սոցիալիստական հասարակարգի զարգացման արդի փուլում անընդհատ կատարելագործվում են հասարակական աշխատանքի կազմակերպման մեթոդներն ու ձևերը, որոնք նոր խթան են հանդիսանում արտադրական դեմոկրատիայի ընդլայնման, աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական ակտիվության, նախաձեռնության, ինքնուրույնության զարգացման համար։ Այս ամենի շնորհիվ համահասարակական հարցերի լուծման գործում ավելի է մեծանում աշխատավոր մարդու ավանդը։

ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարում արտասանած իր ճառում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սոցիալիստական հասարակության մեջ աշխատավոր մարդն այս կամ այն գործողությունների, այս կամ այն ցուցումների մեխանիկական կատարող չէ։ Նրա համար կարևոր են ո՛չ միայն սեփական ջանքերի անմիջական արգասիքը, այլև դրանց տեղն ու նշանակությունը ընդհանուր աշխատանքային պրոցեսում։ Ընդհանուր գործում իրենց անձնական ավանդը ներդնելու ձգտումն ու հնարավորությունն աշխատանքային գործունեության հսկայական խթան են, սովորեցնում են մտածել մասշտաբայնորեն, պետականորեն, ընդհանուր հոգսերն ընկալել որպես սեփական հոգսեր»։

Այս պայմաններում անհատի համար հատկանշական են դառնում սոցիալական այնպիսի որակները, ինչպիսիք են աշխատանքային ու հասարակական բարձր ակտիվությունը, գիտակցական կարգապահությունն ու կազմակերպվածությունը, բարոյական պատասխանատվությունը և այլն։ Անհատի այս հատկանիշները ձևավորվում են ակտիվ սոցիալական գործունեության շնորհիվ, որն իր կոնկրետ մարմնավորումն է գտնում նրա կողմից կատարվող հասարակական բազմապիսի ֆունկցիաներում։ Մարդկային հարաբերությունների կատարելագործման ու կառավարման արդյունավետության բարձրացման խնդիրը սերտորեն կապված է հասարակության յուրաքանչյուր անդամին կոմունիստական շինարարության ստեղծագործ պրոցեսի գործունյա սուբյեկտ դարձնելու հետ։ Վերջինս ենթադրում է գիտական աշխարհայացքի մշակում, մտավոր ունակությունների զարգացում, գաղափարական արժույթների, կառավարման գիտության հիմունքների տիրապետում։

Վ. Ի. Լենինը սոցիալիզմի կառուցման և հասարակության գիտական կառավարման գլխավոր գործոններից մեկը համարում էր ժողովրդական մասսաների կենդանի ստեղծագործությունը, երկրի կառավարմանը նրանց հաղոր-

դակից դարձնելը: Մենք ունենք մի հրաշալի միջոց, գրել է Վ. Ի. Լենինը, իսկույն, մի հարվածով տասնապատկելու մեր պետական ապարատը, դա աշխատավորներին, չքավորներին պետության կառավարման ամենօրյա աշխատանքին մասնակից դարձնելն է (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 120): Անհրաժեշտ է «որպեսզի բնակչությունն իսկապես գլխովին սովորի կառավարել և սկսի կառավարել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 327):

Կառավարման գործին անհատի մասնակցությունը հասարակական-քաղաքական ակտիվության բարձրագույն ձևն է: Հենց սոցիալական պրոցեսների կառավարմանը մասնակցելու միջոցով անհատը կարող է առավել նպատակասլաց ու արդյունավետ ներգործել իր կենսագործունեության վրա: Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կատարելագործումը զարգացած սոցիալիզմի պայմաններում ավելի է ընդլայնում անհատի սոցիալ-քաղաքական ու կառավարչական գործունեության շրջանակները, նախադրյալներ ստեղծում նրա ակտիվության իրացման համար: «Մեր սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարի հաշվետու զեկուցման մեջ,— մենք նախ և առաջ հասկանում ենք որպես հասարակության բոլոր գործերի կառավարմանն աշխատավորության ավելի ու ավելի լայն մասնակցության անշեղ ապահովում, որպես մեր պետականության դեմոկրատական հիմունքների հետագա զարգացում, որպես անհատի բազմակողմանի ծաղկման պայմանների ստեղծում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 128—129): Կուսակցությունը մշտապես շեշտում է, որ կոմունիստական շինարարության արդի փուլում, երբ վճռվում են սոցիալ-տնտեսական բարդ ու բազմապիսի խնդիրներ, հասարակությունը չի կարող նորմալ զարգանալ առանց աշխատավորների ինքնագործունեության ու նախաձեռնության աճի, առանց ամեն մի անհատի հասարակական-քաղաքական ակտիվ գործունեության: Դա սոցիալիստական հասարակարգի ներքին էությունից բխող օբյեկտիվ անհրաժեշտություն է: Աշխատավորների ստեղծագործական կարողությունների ծավալման անհրաժեշտ պայմանը սոցիալիզմի առավելությունների ու նրա ընձեռած հնարավորությունների լիակատար օգտագործումն է, նյութական ու բարոյական խթանների, կենտրոնացված կառավարման ու տեղական նախաձեռնության ճիշտ և արդյունավետ համակցումը: «Սոցիալիզմը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարում արտասանած ճառում,— ի լրումն, ինչպես ասում են, «վերևից» կատարվող լավ կառավարման, ունի տնտեսական աճի արագացման ևս մի հզոր ուժ: Դա «ներքևից», ավելի ճիշտ՝ հասարակության բուն խորքերից եկող միլիոնների ստեղծագործական ակտիվությունը, նախաձեռնությունը, աշխատանքային խանդավառությունն է»:

Սոցիալական կառավարման համակարգում անհատի բազմակողմանի ունակությունների դրսևորման ու իրացման ռեալ երաշխիքը սոցիալիստական դեմոկրատիան է, որը հասարակության տնտեսական, քաղաքական ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում ներգործող մեծ ուժ է: Սոցիալիզմի մեծագույն նվաճումներն իրենց առավել լիակատար ու խոր արտացոլումը գտան ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, որի համաժողովրդական քննարկմանը մասնակցեցին ավելի քան հարյուր քառասուն միլիոն մարդ, այսինքն՝ մեր երկրի չափահաս բնակչության ավելի քան չորս հինգերորդը: Ժողովրդական ակտիվության այդպիսի թափ աշխարհի ոչ մի երկիր դեռ չի իմացել: Մենք վստահությամբ ու հպարտությամբ կարող ենք ասել,— նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ Գերագույն սովետի արտահերթ յոթերորդ նստաշրջանում տված զեկուցման մեջ,— հենց ամբողջ սովետական ժողովուրդը դարձավ իր պետության Հիմնական օրենքի իսկական կերտողը:

ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունումը քաղաքական խոշոր իրադարձություն է մեր երկրի կյանքում: Այստեղ վավերագրված են հասարակական



կյանքի բոլոր ասպարեզներում սովետական ժողովրդի ձեռք բերած պատմա-
կան նվաճումները և նշված զարգացման հեռանկարները: Մեր կյանքի այդ
հիմնական օրենքի յուրաքանչյուր բաժին, հոդված տոգորված է անհատի
նկատմամբ հոգատարության ոգով: Սահմանադրության 48-րդ հոդվածում
հռչակված է պետական ու հասարակական գործերի կառավարմանը մասնակ-
ցելու յուրաքանչյուր սովետական քաղաքու իրավունքը և մատնանշված են այդ
իրավունքի ապահովման երաշխիքներն ու կոնկրետ ձևերը: 20-րդ հոդվածում
նշված է, որ «յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման
պայման է» կոմունիստական իդեալին համապատասխան, սովետական պե-
տությունն իրեն նպատակ է դնում ընդլայնել ռեալ հնարավորությունները, որ-
պեսզի քաղաքացիները զարգացնեն ու գործադրեն իրենց ստեղծագործական
ուժերը, ընդունակություններն ու ձիրքերը, որպեսզի ապահովվի անհատի հա-
մակողմանի զարգացումը: Այս ամենի մեջ արտահայտված են սոցիալիզմի
ռեալ հումանիզմը, սովետական ապրելակերպի խորագույն իմաստը: ՍՍՀՄ
նոր Սահմանադրության գործնական իրականացումը միլիոնավոր ու միլիո-
նավոր սովետական մարդկանց հնարավորություն կընձեռի առավել ակտիվո-
րեն ներգրավվել երկրի կառավարմանը:

Այժմ միայն սովետների միջոցով երկրի կառավարմանն ակտիվորեն
մասնակցում են ավելի քան 2 մլն դեպուտատներ ու 30 մլն ակտիվիստներ,
10,5 մլն ժողովրդական հսկիչներ և այլն:

Սովետական մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության
վառ արտահայտությունն է տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջող
կատարելու համար երկրում ծավալված համաժողովրդական սոցիալիստական
մրցությունը, որին մասնակցում են 97,5 մլն մարդ: Լայն թափ է ստացել աշ-
խատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, որի մաս-
նակիցների թիվը հասնում է 58,7 մլն մարդու:

Անհատի կառավարչական ունակությունների ձևավորումը, նրա սոցիալա-
կան ակտիվության զարգացումը տարերային պրոցես չէ, այն մեծապես պայ-
մանավորված է կոմունիստական կուսակցության, սոցիալիստական պետու-
թյան և հասարակական կազմակերպությունների կողմից տարվող գաղափա-
րադաստիարակչական, կազմակերպական աշխատանքի մակարդակով: Կուսակ-
ցությունը մշտապես հոգում է երկրի կառավարմանը աշխատավորների մաս-
նակցության ապահովման, նրանց նախաձեռնության ու ինքնագործունեության
զարգացման համար: Անհատի սոցիալական գործունեության հասարակական
կարգավորումը չի բացառում նրա ակտիվությունը, ինքնագործունեությունը:
Ընդհակառակը, անհատի սոցիալական ակտիվության շարժառիթները բխում
են նրա պահանջմունքներից ու շահերից, որոնց բավարարումն անհնար է
առանց անհրաժեշտ նյութական ու հոգևոր նախադրյալների ու պայմանների:
Դեռ ավելին, սոցիալական պրոցեսների գիտական կառավարման շնորհիվ
ավելի արդյունավետ են դառնում անհատի գործադրած սուբյեկտիվ ջանքերը,
իմաստավորվում նրա կատարելագործումը. անհատը ճիշտ է ըմբռնում իր սո-
ցիալական դերի հասարակական արժեքը, զգում իր ուժերի չափը, ընդլայնում
մտահորիզոնը: Ակներև է, որ անհատը, որպես կառավարման օբյեկտ, ենթակա
է հասարակության, կոլեկտիվի, սոցիալական միջավայրի ազդեցությանը: Բայց
այդ հասարակական արտաքին ներգործության արդյունավետությունը պայ-
մանավորված է անհատի սոցիալական ակտիվությամբ, կենսագործունեության
պայմանների վրա ունեցած նրա հակադարձ ազդեցության ուժով, հասարա-
կական հարաբերությունների անհատականացման մակարդակով և այլն: Այլ
կերպ ասած, անհատի սոցիալական գործունեության գլխավոր չափանիշը հա-
սարակական գործերի կառավարմանը նրա ոչ թե ձևական, այլ գործուն մաս-
նակցությունն է:

Անհատը, որպես կառավարման սուբյեկտ, իրեն դրսևորում է նաև ինքնա-
դաստիարակման, ինքնակառավարման մեջ: Անհատի այդ ունակությունը
դրսևորվում է հոգևոր զարգացման ու սոցիալական հասունության որոշակի

ստիճանում և դառնում օբյեկտիվ անհրաժեշտություն։ Ուստի, կառավարման համակարգը պետք է ամեն կերպ խթանի անհատի նախաձեռնության ու ինքնուրույնության զարգացումը, նրա մոտ հարուցի հասարակական պահանջներից բխող ինքնակատարելագործման ձգտում։ Այս պահանջը բխում է սոցիալիստական հասարակարգի զարգացման ներքին էությունից։

Սոցիալիստական ապրելակերպի հաստատմանն ու կատարելագործմանը զուգընթաց դաստիարակվում է և անհատի գործողություններն ու արարքները հսկելու ու կառավարելու, դրանք կոմունիստական բարոյականության դիրքերից գնահատելու, հասարակության հանդեպ իր քաղաքացիական պարտքն առանց հարկադրանքի կատարելու ունակությունը։ Այդ օրինաչափությունը սերտորեն կապված է անհատի ինքնուրույնության, ազատության և ինքնահաստատման բնական ձգտման հետ, որը նոր իմաստ ու բովանդակություն է ստանում զարգացած սոցիալիզմի պայմաններում։

Մարդու ինքնակատարելագործման անհրաժեշտությունը նույնպես պայմանավորված է կոմունիստական շինարարության օբյեկտիվ պահանջներով և համապատասխանում է ինչպես հասարակության, այնպես էլ անհատի համակողմանի զարգացմանը։ Այս դեպքում անհատը, ելնելով հասարակական պահանջմունքներից, կարողանում է ճիշտ ըմբռնել իր նպատակների էությունը և ճիշտ որոշել դրանց իրականացման միջոցները, հասկանալ իր գործունեության հասարակական իմաստն ու բարոյական արժեքը։

Հասուն սոցիալիզմը լայն հնարավորություններ է ընձեռում անհատի ինքնահսկողության, ինքնակառավարման ու ինքնազարգացման ունակությունների ձևավորման համար։

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԵՐՈՍԻ ՊՐՈԲԼԵՄԸ

**Վ. Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտի դիրեկտորի տեղակալ, բանասիրական գիտությունների թեկնածու

ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆԸ ՀԱՅՏՆԻ և ոչ մի հեղափոխություն հաղթանակից հետո չի արդարացրել ժողովրդի, ինչպես նաև այն մտածողների հույսերը, որոնք գաղափարապես նախապատրաստել են այդ հաղթանակը։ Ավելին։ Յուրաքանչյուր նոր իշխող, փոխարինելով հնին, առավել ամրացրել, կատարելագործել է աշխատավոր մարդկանց ստրկության կապանքները։ Որքան էլ տարիմաստ թվա, բայց իրողությունն այն է, որ աշխարհի տիրակալներն ամեն անգամ սարսափել են այն ուժերից, որոնց օգնությամբ նրանք պարտության են մատնել իրենց հակառակորդներին։ Օրինաչափ մի անարդարությամբ պատմության իսկական կերտողին բաժին էին ընկնում երջանկությունը՝ երկնքում և տառապանքը՝ երկրի վրա։ Բայց այդ անհետևանք չէր մնում, կուտակվում էր սոցիալական մեծ փորձ, կյանքի կոչելով նոր իդեալներ ու նոր մարդկանց։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը միակն է մարդկության ողջ պատմության մեջ, որ հուսախաբ չարեց աշխատավոր զանգվածներին, հնարավորություն ընձեռեց իրականացնելու նրանց դարավոր իղձերն ու երազանքները։

Հիրավի, մեծ Հոկտեմբերը հիմք դրեց մարդկային իսկական բարոյականության, որը խարսխված է սոցիալական հավասարության ու արդարության վրա։ Նոր կյանք կերտողները երախտագիտության զգացումով են դրվատում բոլոր նրանց, ովքեր համարձակ իդեալներ են փայփայել, թեև մտովի, բայց մեզնից առաջ ապրել, իրենց ստեղծագործություններում արտացոլել են այն գալիքը, որ մեզ համար վաղուց արդեն դարձել է խիզախումների իրականություն։ Մարդկային ողջ պատմության ընթացքում կեղեքվածները դասակարգային գոռ մարտերով մաքառել են իշխողների դեմ, փորձել իրականացնել մարդու սոցիալական ազատագրումը։ Բայց այդ ամենը վերջացել է պարտությամբ։ Այդ պայքարը ծնել է անձնուրաց հերոսներ, նոր մարդկանց նախատիպեր, որոնք հանդիսացել են առաջավոր գաղափարների ջահակիրները։ Եվ պատահական չէ, որ ՍՄԿԿ XXV համագումարում, հանրագումարի բերելով սոցիալիստական հասարակարգի նվաճումները, ընկեր Լ. Ի. Բրեժնեն իրավամբ շեշտեց. «...անցած 60-ամյակի կարևորագույն արդյունքն է սովետական մարդը։ Մարդ, որը կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտպանել ամենածանր մարտերում։ Մարդ, որը կառուցեց ապագան, չխնայելով ուժերը և դիմելով ամեն մի զոհաբերության։ Մարդ, որն անցնելով բոլոր փորձությունների միջով, ինքն էլ փոխվեց անճանաչելիորեն, իր մեջ միացնելով գաղափարական համոզվածությունն ու հսկայական կենսական եռանդը, կուլտուրան, գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը։ Դա մի այն-

պիսի մարդ է, որը լինելով ջերմ հայրենասեր, եղել է և միշտ կլինի հետևողական ինտերնացիոնալիստ»։

Այս առումով ևս մեր երախտապարտ հիշողության մեջ վերստին հառնում է Վլադիմիր Իլյիչ Լենինի կերպարը, որի գլխավորած հեղափոխության հոգևոր հասունացմանն ու հաղթանակին են անձնվեր ծառայել նրա գաղափարակիցները, նրանց գործունեությունն ու սխրանքներն արտացոլող գրականությունը։

Հեղափոխության և գրականության հենց այդ ընդհանրության տեսանկյունից էլ մենք կփորձենք արտահայտել մեր մտորումները գրականության մեջ նոր հերոսի պրոբլեմի լենինյան ըմբռնման մասին։ Այդ պրոբլեմը բարդ է, դժվարին, տարողունակ և խորապես արդիական։ Բարդ, որովհետև այն սոսկ գեղագիտական չէ, այլ անբաժանելի մասն է իրականության մարքս-լենինյան ըմբռնման։ Ուստի, ռուս և համաշխարհային առաջադեմ գրականության հարուստ փորձի գիտական յուրացման, Ռուսաստանում հասունացող, բայց իրականում ողջ մարդկության հասարակական-քաղաքական ու հոգևոր զարգացման կնճռոտ հարցերը լուծող սոցիալական պրոցեսներում պետք է տեսնել պատմական անխուսափելիությունը դասակարգային պայքարում առնականացող, առաջադիմական գաղափարներով տոգորված նոր հերոսի։ Չնայած այդ հերոսն անցյալի իրականության ծնունդն է, այսօր էլ նա առինքնող է, ընդօրինակման տիպար։ Հերոսները միշտ էլ ապրողների հետ են։

Նոր հերոսի ծնունդը, որպես սոցիալական երևույթ, զբաղեցրել է ո՛չ միայն գրականությանն ու գրականագիտությանը, հանդիսացել ո՛չ միայն արվեստի բոլոր բնագավառների լեյտմոտիվը, այլև համակել ողջ աշխարհի պրոգրեսիվ միտքն ընդհանրապես, Ռուսաստանինը՝ մասնավորապես։ Վերաբերմունքը հեղափոխության նկատմամբ վերաբերմունք է նաև այն կատարող հերոսի նկատմամբ։ Եթե Լենինը պատմական ստույգությամբ ու խորությամբ չճանաչեր այդ նոր հերոսին, եթե նրան անհայտ լինեին բոլոր հին հերոսների ուժն ու թուլությունը, նրանց պարտության ո՛չ միայն պատճառները, այլև նոր սերունդներ արթնացնող հետևանքները, վերջապես, եթե նա չկարողանար գտնել մարդկությանը տանջող, միաժամանակ նաև ոգեշնչող «ի՞նչ անել» հարցի ճշմարիտ պատասխանը, հեղափոխությունը Ռուսաստանում թերևս հաղթեր հին ձևով, և նոր հասարակության սկիզբ չէր դառնա։ Այդ առումով ո՛չ Հոկտեմբերյան հեղափոխությունն էր կրկնություն, ոչ էլ դրա հերոսը։

Հերոսների ծնունդը ևս դարավոր երկունք է պահանջում։ Հերոսը ծնվում է ժամանակի հետ, բայց ժամանակից առաջ է անցնում։ Դժվար է նկատել այդ իրական դիալեկտիկան։ Վերջինիս թյուր ըմբռնումը դաժանորեն պատժել է նույնիսկ հանճարներին։ Գրականության պատմաբանի համար,— գրել է Ռոմեն Ռոլանը,— հետաքրքրական կլիներ ստույգ ըմբռնել, թե Ռուսսոյի, Դիդրոյի և Վոլտերի ստեղծագործության մեջ ի՛նչն է, որ առաջ է անցնում նրանցից և պատկանում է ապագային, որից նրանք կհրաժարվեին, եթե կարողանային կանխատեսել այդ։ Այդպիսի գրողների շարքն էր նա դասում նաև Լև Տոլստոյին[1]։

Դժվար, թերևս նաև անհնար է հանճարի շարածի, նրա վաղվա վարքագծի մասին կանխագուշակումներ կատարել, առավել ևս՝ դրանք համարյա կատարված իրողություն դիտել։ Մենք այդ ասում ենք, նկատի ունենալով Տոլստոյի՝ մահից մեկ ամիս առաջ գրած հետևյալ տողերը. «Երեկ կարդացի Մոպասանի պատմվածքը և ցանկացա նկարագրել կյանքի գռեհկությունն այնպես, ինչպես ես դիտեմ, իսկ գիշերը միտք հղացա կյանքի այդ գռեհկության մեջ զետեղել հոգով առողջ մարդուն։ Օ՜, որքա՜ն լավ է այդ»։

XIX դարի ռուս մեծ արվեստագետներից ու մտածողներից և ոչ մեկի (Գոգոլ, Բելինսկի, Չերնիշևսկի, Պուշկին, Լերմոնտով, Դոբրոլյուբով, Պիսարև, Սալտիկով-Շչեդրին, Նեկրասով, Չեխով) ապագա վարքի մասին որևէ վերապահում անել չենք կարող։ Նրանք այն մեծ երազողներն էին, որ կարողանում էին ո՛չ միայն հասկանալ ներկան, որքան դա հնարավոր էր խավարի թագավորության պայմաններում, այլև ապագայից լույսի շողեր էին փոխադրում

[1] Տե՛ս **Ромен Роллан,** Собр. соч. том. XIV 1958, стр. 567.



ներկա։ Նրանք առավել կամ պակաս չափով նաև ապագայի մարդիկ էին և այն, ինչ կարող էին տեսնել վաղը, նրանց, թերևս, անակնկալի բերեր, բայց ահաբեկել՝ երբեք։

Լենինը քաջատեղյակ էր մարդկության պատմության կեռմաններին, նրա բոլոր կարևոր մակընթացություններին ու տեղատվություններին Արևմուտքում ու Արևելքում։ Ճիշտ են նկատել, որ երկար ժամանակ Ռուսաստանին, որպես օրինակ և օրինակելիություն, մատնացույց են արել Արևմուտքը կամ Արևելքը։ Այդ սնապարծ տեսակետի անարդարությունը ցույց տվին XIX դարի և XX դարի առաջին երկու տասնամյակների իրադարձությունները. Ռուսաստանը օրինակ դարձավ և՛ Արևմուտքի, և՛ Արևելքի համար ո՛չ միայն հեղափոխության տառապալից, անկասելի ընթացքով, այլև հոգևոր կյանքի վերածնությամբ։

Ռուս գրականության մեջ դժվար է հանդիպել նոր մարդկանց կերպարների, որոնց որոշակի նախատիպերը գոյություն չունենային իրականության մեջ, սկսած Ռախմետով, Վոլգին, Կիրսանով համաստեղությունից մինչև Վլասով, Նիլովնա... Հենց այդ իրողությունն է իրավունք տվել Պլեխանովին ասելու, թե ռուսական յուրաքանչյուր ականավոր հեղափոխականի մեջ ռախմետովականության հսկա բաժին կա, թե նրա ազդեցությամբ մարդիկ դարձել են ավելի մաքուր, ավելի կենսուրախ ու համարձակ։ Կյանքից՝ գրականություն և վերստին կյանք մտնող հերոսի ուղին ինքնատիպ էր Ռուսաստանում և ճշմարիտ. Նրա գործունեության հետ են կապել մի ամբողջ երկրի փրկության հույսը, ժողովրդի դարավոր անշարժության վերացումը, ստրկացնող սոցիալական նիրհից արթնացնելու առաքելությունը։

«Քիչ են նրանք, այդ ռախմետովները,— խոստովանել է Չերնիշևսկին իր «Ի՞նչ անել» հանրահայտ վեպում,— բայց նրանցով է ծաղկում բոլորի կյանքը։ Առանց ռախմետովների կյանքը կխամրեր և կթթվեր։ Քիչ են նրանք, բայց բոլոր մարդկանց շնչելու հնարավորություն են տալիս։ Առանց այդպիսիների մարդիկ շնչահեղձ կլինեին»[2]։ Ռախմետովները Ռուսաստանի «լավագույն մարդկանց ծաղիկն են, նրանք առաջմղիչների առաջմղիչներն են», «երկրի աղի աղը»։ Այդպիսի մարդկանց մեջ է Լենինը տեսել «մասսաների վրա հենվող» և «հեղափոխական մեծ ուժ դարձած» գաղափարակիրներին։

Ինչպես Լենինի, այնպես էլ նրա սիրած հերոսների համար աշխարհում և ոչ մի տեղ չկա միջինը և լինել չի կարող։ Ազատության և ստրկության միջինը դավաճանությունն է, ճշմարտության և կեղծիքի միջինը՝ երեսպաշտությունը, «այո»-ի և «ոչ»-ի միջինը՝ բարոյական ստրկամտությունը։ Արատներ, որոնցով օժտված են հեղափոխության բոլոր հակառակորդները։ Դեռևս Բելինսկին է դատապարտել այն մարդկանց, որոնք ջանում էին համոզել և՛ իրենց, և՛ ուրիշներին, թե անշարժությունը լավ է շարժումից։ Այդ մտայնությունը Հայնեն ծաղրել է, ասելով, մարդկային ցեղը անշարժության մեջ կարող էր ապրել նաև մեկ ոտքով։

Միայն հեղափոխական հետևողական պայքարն է ալեկոծում մասսաներին. որոշակի դարձնում նրանց դերը բարիկադների վրա։ Դատապարտելով անշարժությունը՝ Լունաչարսկին գրել է. «Ժողովուրդների կրծքին ծանրացած քարը թեև բազմաթիվ ճեղքեր ունի, բայց դրանից բնավ չի թեթևացել»։ Մինչհոկտեմբերյան դարաշրջանի բոլոր մեծ ու փոքր ընդվզումները պարտվել են կա՛մ ընթացքում, կամ էլ հաղթանակից հետո՝ ժողովուրդների կրծքին ծանրացած քարին ավելացնելով նոր ճեղքեր։ Ի պատիվ ռուսական հեղափոխության ասպետների՝ բոլշևիկների, պետք է ասել, որ նրանք տասնամյակներ տևած պայքարի և անթիվ զոհերի գնով կարողացան սկզբում մուժիկի, ապա պրոլետարի գիտակցությանը ըմբռնելի դարձնել ցարական ինքնակալության խորտակելիության գաղափարը, միաժամանակ նշելով դրա իրագործման ճշմարիտ ուղին։ Ցույց տալ, որ ժողովրդի կրծքին իջած քարը ծանր է, կարևոր ճշմարտություն է, բայց ի՞նչ անել այդ քարը։

Վճռողն այդ հարցի հեղափոխական լուծումն էր. ասում եմ՝ հեղափոխա-

[2] **Н. Г. Чернышевский,** Избр. соч., 1950, стр. 124.

կան, որովհետև կային նաև այլ կարգի «լուծումներ»՝ վերը նշված միջինի տեսակետից. «Բանականությունը,— գրել է Լև Տոլստոյը,— մեզ ուսուցանում է ոչ թե ինչ անել, այլ ինչ չպետք է անել»։ Ասել է թե՝ ատիր չարը, բայց մի՛ կալ հակառակ չարի, եթե անտանելի է կյանքը, մի՛ փորձիր փոխել այն, որովհետև ամեն ինչ ենթակա է մահվան։ Արժե՞ արդյոք մի մեռնողի փոխարինել մի այլ մեռնողով։ Ինչպես տեսնում եք՝ ռուսական իրականությունն ալեկոծած «ինչ անել»-ին հակադրվում էր «ինչ չանելու» սարկամիտ բարոյականությունը։ Ըստ էության, դա այն միջինն է, որը մարդուն անտարբեր է դարձնում նաև իր վիճակի նկատմամբ, դրդում է տառապել, բայց չըմբոստանալ, «քայլել, բայց տեղ չհասնել»։

Միջինի կերպարանք ստացած մարդու սոցիալական վտանգավորության դեմ ընդվզել են պրոգրեսիվ մտածողներից շատերը, բայց քչերին է հաջողվել ստեղծել այնպիսի մի կերպար, ինչպիսին Չերնիշևսկու Ռախմետովն է, գաղափարի ու գործի, պայքարի ու նպատակի այդ ամբողջական ներդաշնակությունը, որի ազդեցությամբ իր առաջին հեղափոխական քայլերն է կատարել նաև Լենինը։ Թե ինչպիսի սերտ կապ էր տեսնում Լենինը երկի գաղափարայնության և գեղարվեստականության, բովանդակության ու ձևի միջև, մեզ հայտնի է նրա բազմաթիվ հոդվածներից ու ասույթներից։ Հիշենք նրա կարծիքը «Ի՞նչ անել» վեպի մասին. ««Ի՞նչ անել» վեպը ապաշնորհ և պարզունակ համարելը հրեշավոր և տխմար միտք է... Դրա ազդեցությամբ հարյուրավոր մարդիկ հեղափոխականներ են դարձել։ Այն, օրինակ, խանդավառել է իմ եղբորը, խանդավառել է նաև ինձ։ Չերնիշևսկին ամբողջովին համակել, ինչպես ասում են, վերավարել է ինձ։ Ապաշնորհ երկերն այդպիսի ազդեցություն չեն ունենում»[3]։

Ինչպես տեսնում ենք, Լենինը մեկ չափանիշ է ունեցել մարդուն՝ կյանքում, հերոսին՝ գրականության մեջ գնահատելիս։ Կարելի է նաև պնդել, որ այդ երկուսին՝ մարդուն և հերոսին, Լենինը դիտել և արժեքավորել է հեղափոխականացող ռուսական իրականության տեսակետից։

Միատարր չէր այդ իրականությունը, ոչ էլ դրա մասին եղած պատկերացումներն էին միասնական։ Այդ իրականության մեջ կային նաև անտարբերության, առավել լայն առումով՝ անկուսակցականության քարոզիչներ։ Պատմականորեն անխուսափելի հոգեհարազատություն տեսնելով անտարբերության և անկուսակցականության միջև՝ Լենինը երկուսն էլ որակել է որպես լռելյայն պաշտպանություն իշխող հասարակարգի։ «Ով Ռուսաստանում անտարբեր է եղել ինքնակալության նկատմամբ՝ նրա տապալումից առաջ,— գրել է նա,— նա լռելյայն պաշտպանել է ինքնակալությունը։ Քաղաքական անտարբերությունը քաղաքական կշտության հետևանք է։ Այդ անտարբերությունն առավել վտանգավոր է դառնում, երբ հանդես է գալիս հայրենասիրության, խղճի և ազատության անունից։ Եվ Լենինը կրքոտ ու անզիջում պայքար է ծավալում՝ մերկացնելով սարկամիտ և սարկացնող «հայրենասիրությունը», դահճի հանդեպ գլուխ խոնարհեցնող խիղճը, շղթաների մեջ ապրելու ազատության քարոզների դասակարգային էությունը, կոչ անում «չհավատալ ֆրազներին»։

Իր «Ի՞նչ անել» հանճարեղ երկում Լենինը, ըստ էության, տվել է պատասխանն այն հարցի, որ դարերով զբաղեցրել և անհանգստացրել է ո՛չ միայն Ռուսաստանի, այլև մարդկության պատմությանը հայտնի բոլոր պրոգրեսիվ մտածողներին։

Ժողովրդի ինչ անելու ուղին ցույց տալու համար Լենինը խորապես ուսումնասիրել է նրա ապրելակերպը, սոցիալական ընդվզումների ուժն ու թուլությունը, պարտության արմատները, կռվելու, հաղթանակի ոգեկոչելու պոտենցիալ կարողությունը։ Լենինը լավ գիտեր ո՛չ միայն հեղափոխության ոգին, այլև հեղափոխություն կատարող ռուս ժողովրդի՝ դարերի խորքում ձևավորված բնավորությունը— ըմբոստություն, համբերատարություն, անտարբերություն, մի՛ կալ հակառակ չարի ըմբռնումը և ամեն ինչ հիմնովին ճանաչելու, նույնիսկ շղթաների մեջ երազելու, ինչ-որ լուսավոր, հուսադրող բան գալիքից ներկա

[3] **В. И. Ленин,** О литературе и искусстве, 1967, стр. 653.



փոխադրելու անհագ ծարավ։ Համբերատարությունը նոր ուժերի կուտակումն ու հասունացման ակտիվ դադար է նաև, լռելյայն զայրույթ, որ սպասում է պայթելու հարմար առիթի։

Ռուս դասական գրականության մեծագույն ուժի արտահայտություններից մեկն էլ այն է, որ տեսավ ո՛չ միայն ըմբոստացող մուժիկին, այլև նրան, որ չէր գիտակցում իր ով լինելը, պատմություն էր ստեղծում, բայց անտարբեր էր իր ստեղծածի նկատմամբ։ Ռուս գրականությունը խարազանել է այդ մարդուն, նզովել նրա ստրկությունը, միաժամանակ հավատացել ու վստահել նրան։ Այդպիսի հավատացող խարազանում, ժողովրդի մտքի ու հոգու խավարը ցրող այդպիսի անողոք լուսավորում դաժանությունների այն երկրում, որտեղ «նույնիսկ մտրակն էր իրեն հանճար կարծում», ուրիշ ոչ մի այլ գրականության մեջ գտնել չենք կարող։ Նա, ով դատապարտելով չի անհանգստացնում ժողովրդին, չի արթնացնում ազգային հպարտության նրա նիրհող զգացումը, բնական ու հավերժական համարելով ստրկությունը, նրա ուղին գիտակցաբար թեքում է դեպի ստորաքարշություն, որ ուրիշ այլ բան չէ, քան մարդկային արժանապատվության կորուստ և հրաժարում իր սոցիալական նշանակության գիտակցումից։

Այդ ամենի կորստով մարդը վաստակում է մի վախկոտություն, որի սոցիալական ակտիվությունը կամ պոտենցիալ մորթապաշտությունը միշտ էլ խոչընդոտել է հեղափոխության ուղին։ «Մենք նկատել ենք, որ անտանելի վիճակում գտնվող մարդու կամ դասակարգի պակասությունների մասին սուր խոսք կարելի է ասել միայն այն դեպքում,— գրել է Չերնիշևսկին,— երբ այդ վիճակը շարունակվում է իր իսկ սեփական մեղքով, և որ դրա բարելավման համար իր ճակատագիրը փոխելու ցանկություն ունի»[4]։ Այժմ արդեն ավելի քան պարզ է դառնում, թե ինչու «թշվառ ազգ, վերից-վար ստրուկ ազգ» Չերնիշևսկու խոսքերը Լենինը համարել է իսկական հայրենասերի զայրույթի արտահայտություն, ստրուկի գիտակցությունը հեղափոխականացնող դաժան ճշմարտություն։

Ռուս առաջավոր գրականությունը, ռուսական պրոգրեսիվ, հեղափոխական միտքը մոտ 150 տարի տենդորեն որոնել և անհուն տառապանքների, խիզախումների գնով գտել է մարդկության երազած ի՞նչ անել հարցի ճշմարիտ պատասխանը։ Բայց գտնելուց առաջ հարկավոր էր հերքել միասնական ու միաձույլ Ռուսաստանի՝ մոլորեցնող առասպելը և տեսնել այն վիհը, որ հետըզհետե լայնանում էր հալածողի ու հալածվողի միջև։ Ռադիշչևը այն նոր ու համարձակ մտածողն էր, որի համոզմամբ «չկա ու մինչև աշխարհի վերջն էլ թերևս անհնարին է, որ ցարը, գահ բարձրանալով, իր իշխանությունից որևէ բան կամավոր զիջի ճորտին»։ Շղթաներն այն միակ սեփականությունն են, որ հին աշխարհի տիրակալները կտակել են աշխատավոր մարդկությանը և հայտարարել անձեռնմխելի։ Այդ շղթաները փշրողին տեսնելը, նրան կացնի և ոչ թե հնազանդության կոչելը ռուս գրականության պատմական լավատեսության սխրանքներից է։ «Ավելի լավ է մեղադրված լինել մարդկային առաքինության մեջ, քան ապրել ստրկական վիճակում, քան անվերջ ունկնդրել, թե ինչպես են մեզ մեղադրում կամավոր ստրկության մեջ»։

Գերցենը երազում էր այն հերոսին, որ պիտի գա սթափեցնելու գյուղացուն այդ թմբիրից։ Եվ այսպես, հեղափոխականանում են ռուս մարդը, նրա փիլիսոփայությունը, գրականությունը, քննադատական հայացքը։ Կյանքի վրա ծանրացած դարավոր քարացածությանը փոխարինելու է գալիս հեղափոխական հզոր մի շարժում, որի գլուխ են կանգնում ժամանակի լավագույն մարդիկ։ Պատմությանը հայտնի և ոչ մի առաջադիմական միտք այդպիսի երկար ու տառապալից ճանապարհ չէ անցել, ոչ էլ ծնել է իրար հաջորդող տիտանների սերունդներ, որոնցից յուրաքանչյուրի պարտությունը կյանքի է կոչել նոր խիզախների։ Գլխատվել, կախաղան են բարձրացվել Ռուսաստանի լավագույն մարդիկ, բայց նրանց գլխավորած շարժումը շարունակվել է։

Կա մի ճշմարտություն, որ Ռուսաստանում դահիճներն իսկ չեն կռահել։

[4] **Н. Г. Чернышевский,** Избр. соч., 1950, стр. 760.

*Սպանելով աշխարհի լավագույն մտածողներին՝ ակամա բարձրացրել են այն գաղափարի հեղինակությունը, որին անձնվիրաբար ծառայել են նահատակները։ Եթե պրոգրեսի թշնամիները կարողանային գտնել գաղափարները խեղդելու, սպանելու հնարը, երևի նրանք ազատ թողնեին մարդկանց։ Գաղափարի և գաղափարազրկության շարժման և քարացածության, ճշմարտության և կեղծիքի մենամարտը Ռուսաստանում նույնպես դարեր է տևել։ Ինքնին հասկանալի է, որ դարերի միջով անցած գրականությունը չէր կարող չտեսնել գաղափարի ու գործի մարդկանց, չէր կարող իր մեջ չառնել ժողովրդի լեռնացող ցասումը, որ նույնպես անհնար էր սպանել։ Գրականությունը լիովին բաժանել է իր արտացոլած մարդկային պատմության ճակատագիրը, միաժամանակ նաև ազդել այդ պատմության առաջընթացին։*

*Ռուս գրականությունն ուժեղ է ո՛չ միայն ժողովրդին սոցիալական ակտիվ գործունեության կոչող գաղափարներով, այլև ապագայի հերոսներով։ Երբ Մարքսն ու Էնգելսն ասում էին, թե մարդկությունն իր առջև միայն այնպիսի խնդիրներ է դնում, որ ի վիճակի է լուծել, անշուշտ, հաշվի էին առել նաև հեղափոխական հերոսների դերն ու նշանակությունը, որ առաջ է անցնում իրադարձությունների բնական ընթացքից, միաժամանակ ազդելով այդ ընթացքի վրա։ Եթե մարդը զուրկ լիներ երազելու ունակությունից և չկարողանար ժամանակ առ ժամանակ առաջ անցնել, հեռվից դիտել ու գնահատել իր իսկ ստեղծածը, ապա նա չէր կարող հավատալ իր գործի հաղթական ավարտին։*

*Հեղափոխական դեմոկրատ Պիսարևին համամիտ է եղել Լենինը և վկայակոչել նրան իր «Ի՞նչ անել» գրքում։ Նշանակալից է, որ մեծ առաջնորդը հերոսների կարևորությանն է անդրադարձել հեղափոխական շարժման, դասակարգային պայքարի և ժողովրդական զայրույթի կայծը բորբոքելու ու հրդեհի վերածելու առնչությամբ։ Այդ իմաստով ռուս գրականությունն ստեղծել է հրատապ խնդիրներ լուծող մեծ հերոսների կերպարներ։ Առանց դրան անհնար կլիներ լույսի շող տեսնել խավարի թագավորության մեջ, հստակ պատկերացում կազմել դժվար ժամանակի մասին և զգալ, որ մոտենում է ցարական ինքնակալության տապալման օրը։ Առանց դրա նույնիսկ անհնար կլիներ ճանաչումը մեղավորի և անմեղի, որովհետև այդ ամենը նկատելով է մարդը գիտակցում իր անելիքն ու նպատակը։ Աննպատակ հերոսները Լենինը համարել է դատարկ հերոսություն, որի քաղաքական աստառը՝ սարկամտության ոսկեզօծումն է։*

*Ռուս գրականության մեջ կերպավորվել է մի հերոս, որի կրողները կային իրականության մեջ, կամ որոնց աշխարհ գալն անխուսափելի էր։*

*— Ո՞ւր է այն մարդը, որ ռուսական ոգուն հարազատ լեզվով կարողանար ասել մեզ ամենազոր «հառա՜ջ» բառը. կշտամբանքով, բայց և հավատով բացականչել է Գոգոլը։ «Դարերն անցնում են դարերի հետևից, իսկ Ռուսաստանում հազվադեպ է ծնվում այն մարդը, որ ընդունակ լինի արտասանել այդ ամենազոր բառը»։ Այդ կոչը, որին վաղուց և համառորեն սպասում էր Ռուսաստանը, արել են Ռադիշչևը, դեկաբրիստները, Գերցենը, Բելինսկին, Չերնիշևսկին, Դոբրոլյուբովը, Պիսարևը, Սալտիկով-Շչեդրինը, հեղափոխական նարոդնիկները։ Այդ բառը յուրովի են ասել Պուշկինն ու Լերմոնտովը, Գոնչարովն ու Տուրգենևը, Նեկրասովն ու Չեխովը, Կորոլենկոն ու Գորկին։ Այդ բառը, հակառակ Տոլստոյի ուսմունքի, ասել է նրա հանճարեղ հերոսը՝ ճշմարտությունը։*

*Հիրավի, դրանք «պատմության այն բարձրագույն ընտրյալներն են, որոնց առջև հիացմունքով պիտի խոնարհվեն բոլոր սերունդները, ընտրյալներ, որոնք կարողացան սրբության և արդարության ուժ հաղորդել ժողովրդի հառաչանքին ու պայքարին, և այդքան իրական լինելով հանդերձ, նաև ապագայի մարդկանց համբավ վաստակել»[5]։ Ու եթե պատմությունը դիտենք այդ մտածողների ու արվեստագետների կերտած նոր մարդկանց տեսանկյունից, ապա կտեսնենք նույն հառաչանքն ու բողոքը, նույն պայքարն ու հերոսները և նույն ատելությունը Ռուսաստանը դեպի ետ տանող արակչեևների և մոլչալինների դեմ։*

[5] **Н. А. Добролюбов**, Избранные философские произведения, 1948, стр. 500.



*Լենինն էր, որ բացահայտեց երկու Ռուսաստանի գոյությունը, դրանց անհաշտ հակասությունները. նա ո՛չ միայն մշակեց ցարական ինքնակալության տապալման և պրոլետարիատի հաղթանակի անխուսափելիության գաղափարը, այլև նշեց դրա կենսագործման ուղիները։ Ըստ էության, Ռուսաստանում բախվում էին երկու աշխարհ, մարդկության երկու ճակատագիր։ Իր տևականությամբ, մասշտաբայնությամբ ու նպատակասլացությամբ այդպիսի բախումը բացառիկ է մարդկության պատմության մեջ։ Հետևաբար բացառիկ պետք է լինեին նաև այդ բախման մասնակիցները կյանքում ու գրականության մեջ։ Այդ իմաստով իսկ անկրկնելի են թվում (բայց ո՛չ անփոփոխ) ո՛չ միայն Ռախմետովը, այլև Օբլոմովը, ո՛չ միայն Ինսարովը, այլև Մոլչալինը, Վոլգինն ու Բելիկովը, Վլասովն ու Սամգինը։*

*Լենինյան հանճարեղության արտահայտություններից մեկն էլ այն է, որ նա կյանքում ու գրականության մեջ տեսավ նոր մարդկանց, նոր գաղափարակիրների, առաջադիմության նոր դրոշակակիրների, ինչպես և նրանց, ովքեր պատմության բերումով ավելորդ են և մղձավանջի նման ծանրացել են Ռուսաստանի ճակատագրի վրա։ Սկսվել էր դարեր տևած անմարդկայինի, ոչ բանականի վերացման հզոր մի շարժում. ով հավերժորեն մեղավոր էր ճանաչվել, դառնում էր մեղադրող, ով ոչինչ էր համարվել, դառնում էր ամեն ինչ։ Ինքնին հասկանալի է, որ կյանքում՝ Արակչեևը, գրականության մեջ Օբլոմովը չէին կարող անվրդով տանել այդ փոփոխությունը և հանգստությամբ հեռանալ պատմության ասպարեզից, որ վերուստ տրված անձեռնմխելի սեփականություն էին համարում, ինչպես հողն ու գյուղացուն, ինչպես ապրողին ու մեռյալին, ինչպես «շարժվող», բայց միշտ ետ տանող անշարժությունը։*

*Ժողովրդի պատմության ամենաբախտորոշ պահերին մի առանձին սրություն ու կարևորություն է ստանում անցյալի ժառանգության, առանձին անհատների դերի ու նշանակության գնահատման հարցը։ Ըստ էության, դա ներկայի հարց է, որ վճռվում էր անցյալի նյութի վրա։ Հայտնի է, որ հեղափոխության հակառակորդները մշտապես ջանացել են ֆետիշացնել մեծ մարդկանց թույլ կողմերը, ընդգծելով դրանց համամարդկայնությունը։ Այս առումով հատկապես կարևոր էին Լենինի հոդվածները՝ գրված այս կամ այն արվեստագետի, մտածողի կամ հասարակական գործչի հոբելյանի առթիվ, որոնցում անողոք ներկայացված է ռուսական լիբերալիզմը՝ իր ռուսական ու համաշխարհային տարատեսակներով։ Այսպես, Գերցենի ծննդյան 100-ամյակի առնչությամբ Լենինը գրել է. «Բանվորական կուսակցությունը պետք է հիշի Գերցենին ոչ թե ի սեր քաղքենիական փառաբանության, այլ իր խնդիրները պարզելու համար, ռուսական հեղափոխության նախապատրաստման գործում խոշոր դեր կատարած գրողի պատմական ճշմարիտ տեղը պարզելու համար։ Ռուսաստանի լիբերալ պնակալեզության ասպետները փորձում էին Գերցենի լիբերալ տատանումները ներկայացնել որպես հրաժարում դեմոկրատիայից ու հեղափոխությունից»[6]։ Գերցենը, որ նույնպես «գիտակցաբար ելել էր ակնհայտ կործանման, որպեսզի նոր կյանքի արթնացնի երիտասարդ սերնդին և մաքրի դահճության ու ստրկության միջավայրում ծնված երեխաներին», լիբերալների «բնութագրմամբ» դառնում էր ստրկամտության, հաճոյակատարության, երեսպաշտության և հլու-հնազանդության արտահայտիչ, այսինքն՝ այնպիսին, ինչպիսին իրենք էին։*

*Լիբերալ երեսպաշտության առավել նուրբ, հետևաբար, առավել վտանգավոր վարքագծին Լենինը հանգամանորեն անդրադարձել է նաև Լև Տոլստոյին նվիրված հոդվածներում։ Հանրահայտ են Տոլստոյի այն խոսքերը, թե ռուս ժողովուրդն արտակարգ արագությամբ սովորել է հեղափոխություն կատարել։ Բայց մեզ հայտնի է նաև, որ այդ հեղափոխությանը մասնակցել է այն գյուղացիությունը, որի հոգում ճորտատիրական ճնշման դարերը «ատելության, զայրույթի ու անողոք վճռականության լեռներ են կուտակել», որն ատում էր կյանքի տերերին, բայց դեռևս չէր բարձրացել նրանց դեմ գիտակից, մինչև վերջ հետևողական պայքարի գիտակցության։*

[6] **В. И. Ленин**, О литературе и искусстве, 1967, стр. 187.

Եվ Լենինը ցույց է տալիս պատմության նոր ուժին՝ պրոլետարիատին, առանց որի ռուս ժողովուրդը չէր կարող ձեռք բերել իր ազատությունը, խորտակելով Տոլստոյին այնքան ատելի հին աշխարհը։ Լիբերալներին, ըստ էության, ոչ թե հետաքրքրում էին Տոլստոյի փառքն ու մեծությունը, նրա իրական տեղը դարաշրջանի հոգևոր ալեկոծումներում, այլ ձգտում էին ռուս ժողովրդին հեռու պահել իր սեփական թուլությունների ու մոլորությունների գիտակցումից, հետևաբար նաև՝ ազատագրական պայքարից։ Ավելին, նրանք նույնիսկ ամրացնում էին Տոլստոյի այն թուլությունները, որոնց մեջ մարդուն անհանգստացնող ինչ-որ բան կա։ Արվեստագետի այն պնդումը, թե «Չի կարելի հեղափոխություն կատարել— ավելի վատ կլինի, չի կարելի հնազանդվել նույնպես ավելի վատ կլինի», անխուսափելիորեն առաջ է բերում **իսկ ի՞նչ պետք է անել** դարաշրջանային հարցը՝ մարդու միտքը մղելով նոր որոնումների։

Հայ «ազատամիտ» մտավորականության կեղծավորությունը, տգիտությունը և ստրկահոգությունն է դատապարտել ականավոր լենինյան Ստեփան Շահումյանը Ղազարոս Աղայանի գրական ու հասարակական գործունեության 40-ամյա հոբելյանին նվիրված իր ճառում։ Շահումյանը հասարակական գործիչ է համարում այն մարդուն, ով «ուսումնասիրել և ըմբռնել է ժողովրդի առաջադիմության պայմանները և զինված է պարզ ու որոշակի գործունեության ծրագրով։ Այդ իմաստով,— շեշտում է նա,— Աղայանը հասարակական գործիչ չէր, որովհետև չի կարողացել ըմբռնել իր ժամանակի հիմնական պահանջները և ձեռնարկել այնպիսի մի գործի, «որին նվիրվեր իր ամբողջ հոգով, որին ծառայեր մինչև իր կյանքի վերջին շունչը»։ Հայ լիբերալներն Աղայանի առավելությունն էին համարում հենց դրա բացակայությունը, այսինքն՝ նրա թուլությունը և փառաբանում նրա կուլտուրական գործունեությունը մի երկրում, «որտեղ չկա քաղաքական ազատություն, չկա ազատ խոսք, մամուլ, որտեղ օրենքի տեղ բռնություն ու կամայականություն է տիրում»[7]։

Դեռևս ոչ մի հասարակարգ չի տապալվել խոսքով, բարի ցանկությամբ կամ փոխադարձ զիջումներով։ Մինչդեռ հայ լիբերալները նույնպես լուսավորություն էին քարոզում, առանց խարխլելու խավարի թագավորության հիմքերը։ Խաղաղ ճանապարհով ստրկության վերացման նպատակն այդ նույն ստրկության հավերժացումն էր։ Շահումյանին հայտնի էին այդ խաբեության ո՛չ միայն քաղքենիական, այլև քաղաքական ակունքները։ Շեշտելով Աղայանի գործունեության ուժեղ և թույլ կողմերը, Շահումյանը չի հանձնում նրան հայ հետադիմականներին, այլ առավել որոշակիությամբ հայտարարում է, որ Աղայանը, իր թուլություններով հանդերձ, կռվողների կողմն է, թեև կռվող չի եղել։ Կարողանալ «հայկական ճահճում բարոյական մաքրություն պահպանել» և «զգալ տալ մեզ հայերենի քաղցրությունն ու գեղեցկությունը»՝ հոգևոր սխրանք էր։ Այս առումով Աղայանը, իհարկե, զինվոր է եղել։ Ահա թե ինչու հոբելյանական իր ճառը Շահումյանն ավարտում է հետևյալ ոգեշունչ խոսքերով. «Կեցցե՛ նա, ով եղել է միաժամանակ և՛ զինվոր հայ ժողովրդի համար, և՛ վերքեր է ստացել ծերուկ հասակում։ Կեցցե՛ մեզ, երիտասարդներիս, մինչև անգամ իր սխալներով, անհաջողություններով դեպի կյանք, դեպի գործ տրամադրող Ղազարոս Աղայանը»։

***

Լենինը ժառանգել և գլուխ էր կանգնել այնպիսի մի վիթխարի շարժման, որին մասնակցում էր նաև ռուս գրականությունը։ Այդ գրականության կուսակցականության լենինյան պահանջը նաև հերոսին ներկայացվող պահանջ էր։ Լենինյան գեղագիտական ժառանգությունը դարձավ սովետական արվեստի ու գրականության կուսակցականության, սոցիալիստական ռեալիզմի գաղափարական հիմքը։ Հայտնի է, թե Լենինը որքան բարձր է գնահատել Գորկու «Մայրը», որը Չերնիշևսկու «Ի՞նչ անել» վեպից հետո ամենաազդեցիկն է և տասնյակ

7 Ստ. Շահումյան, Գրականության մասին, *1948*, էջ *15, 25, 29*։



հազարավոր հեղափոխականներ է դաստիարակել։ Այն, ինչ համարձակ երազանք էր Ռախմետովի մոտ, դառնում է Վլասովի կյանքի գործն ու նպատակը։

Դժվար է եղել երազելը, բայց առավել դժվար դրա իրականացումը՝ հեղափոխական պայքարը, որից ոչինչ չէր կարող շեղել Լենինին։ Լենինն ամբողջովին հեղափոխության մեջ էր և ամբողջությամբ նվիրված էր դրան։ «Իր մտքի ողջ պաշարը՝ արվեստը, գրականությունը, գիտությունը, Լենինը մոբիլիզացրել է գործունեության համար». գրել է Ռոմեն Ռոլանը և ավելացրել. «Լենինին հատուկ է իրականի զգացումը։ Դա հզոր, մշտական և երբեք նրան չդավաճանող զգացում է։ Իրականի այդ զգացումը նա նույնիսկ ներմուծում էր արվեստի երազանքի մեջ»[8]։

Մաքսիմ Գորկու փայլուն բնութագրմամբ, Լենինն այնքան լավ էր ճանաչում անցյալը, որ կարողանում էր ապագայի բարձունքից դիտել ներկան, իսկ այսօրվա իրականությունը նրան նյութ էր ծառայում ապագայի կերտման համար։ Պատմության այդ երեք իրականությունների բարդ փոխներթափանցումների դիալեկտիկական ընթացքը, հանճարեղորեն դրսևորվել է Լենինի երկերում։ Պրոլետարիատի արվեստագետը նկատել ու հիացել է Լենինի բնավորության այնպիսի մարդկային գծերով, որոնցով պետք է օժտված լինեն սոցիալիստական գրականությունն ու նրա հերոսը։

Այն հեղափոխությունը, որի առաջնորդն էր Լենինը, ուներ մարդկային բարոյականության անխախտ սկզբունքներ։ Կարեկցող անտարբերության փոխարեն Հոկտեմբերյան հեղափոխությունը խոր հավատ բերեց ժողովուրդների ճակատագրերի միաձուլության, ընդհանրության նկատմամբ։ Ժողովրդի տառապալից ինքնաճանաչման գրականություն էր նաև ռուսական գրականությունը՝ իր նոր հերոսներով։ Լենինը բազմիցս անդրադարձել է ռուս պրոգրեսիվ գրականության հերոսներին, որոնք ոգեշնչել են սոցիալական պայքարի մարտիկներին, մարմնավորվել նրանց էության մեջ, հեղափոխական գործելակերպում։ Այսօր մենք վստահ կարող ենք ասել. ռուսական դասական գրականության դրական հերոսները սովետական գրականության կերպարների նախատիպերն են՝ միշտ մոտ ու հոգեհարազատ։

Սովետական արվեստն ու գրականությունը հարուստ են բազում օրինակներով, ուր արտացոլված են կոմունիստական ապրելակերպի նորմերը, սոցիալիստական դարաշրջանի բարոյագեղագիտական վսեմ իդեալները։ Հենց այդ էլ պայմանավորել է սովետական արվեստում նոր հերոսի, մարդ-մարտիկի, կյանքը վերափոխողի կերպարը, որը միաձուլել է միլիոնավոր ռեալ մարդկանց կոնկրետ հատկանիշները, մարմնավորել ժողովրդի կոլեկտիվ փորձը։

Սովետների երկրի տարբեր ազգերի ու ժողովուրդների ինքնատիպ գեղարվեստական գործերի հերոսն է այդ նոր մարդը՝ իր հումանիստական վեհ գաղափարներով, ոգեշունչ սխրանքներով։

8 **Ромен Роллан**, Собр. соч., т. 14, стр. 559.

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

**Մ. Գ. ՄԿՐՏՉՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ

*ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ կարևոր իրադարձություն են սկզբնական կուսակցական կազմակերպությունների կյանքում: Դրանք հանրագումարի են բերում անցած մեկ տարում կուսկազմակերպությունների բազմաբեղուն գործունեության արդյունքները, ցուցադրում կուսակցության առաջադրած տնտեսական-քաղաքական, սոցիալ-կուլտուրական հոյակապ կանխագծումների իրականացման գործում կոմունիստների անսասան կամքն ու վճռականությունը:*

*1977 թվականին սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներն անցան գաղափարական-քաղաքական բարձր մակարդակով, կոմունիստների ակտիվության պայմաններում, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում: Հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին հաշվետու-ընտրական ժողովներ անցկացվեցին հանրապետության 4.953 սկզբնական կուսակցական կազմակերպություններում, իսկ 143 կազմակերպություններում, որտեղ կան կուսկոմիտեներ, կոմունիստները մասնակցեցին արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսխմբերի հաշվետու-ընտրական ժողովներին:*

*Անցած տարվա հաշվետվություններն ու ընտրություններն ընթացան ՍՄԿԿ XXV համագումարի գաղափարների հսկայական ներգործության ներքո: Այդ ժողովներում մեկ անգամ ևս համոզիչ կերպով դրսևորվեցին կուսակցական շարքերի միաձույլ համախմբվածությունը, կուսկազմակերպությունների բարձր մարտունակությունը, կոմունիստների աճած կազմակերպվածությունն ու ակտիվությունը: Ժողովներին մասնակցեց կուսկազմակերպություններում հաշվառման վերցված կոմունիստների 97,3 տոկոսը, մտքերի փոխանակությանը՝ ժողովների մասնակիցներից գրեթե յուրաքանչյուր երրորդը:*

*Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները միահամուռ հավանություն տվեցին ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1977 թ.) պլենումի արդյունքներին, ՍՍՀՄ Գերագույն սովետի 7-րդ արտահերթ նստաշրջանում և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձին նվիրված հանդիսավոր նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած դրույթներին ու եզրահանգումներին:*



*Անցած հաշվետու-ընտրական կամպանիայի գլխավոր առանձնահատկությունն այն է, որ դա անցկացվեց մեծ Հոկտեմբերի 60-ամյակի նախաշեմին և պանծալի հոբելյանի, ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման հետ կապված աշխատավորական մասսաների հսկայական քաղաքական ու աշխատանքային վերելքի պայմաններում:*

*Ինչպես հայտնի է, վերջին տարիներին ՀԿԿ Կենտկոմը, կուսակցության քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները հսկայական և հետևողական աշխատանք են ծավալել կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման, նեգատիվ երևույթների վերացման, աշխատավորական կոլեկտիվներում նորմալ բարոյաքաղաքական մթնոլորտ ստեղծելու համար: Իսկ ավարտված հաշվետու-ընտրական կամպանիան մեկ անգամ ևս ցույց տվեց, որ նախկինում թույլ տրված սխալների ու տեղ գտած թերությունների վճռական հաղթահարման կուրսը ոչ միայն արժանացել է բոլոր կոմունիստների ջերմ պաշտպանությանը, այլև տալիս է իր դրական արդյունքները, օգնում աշխատավորական կոլեկտիվներին՝ հաջողությամբ հաղթահարելու տևականորեն ետ մնալը:*

*ՀԿԿ Կենտկոմի, կուսակցական կոմիտեների կողմից էկոնոմիկայի նկատմամբ կուսակցական ղեկավարության կատարելագործման, կադրերի պատասխանատվության բարձրացման, կազմակերպչական ու քաղաքական այլ բնույթի արմատական միջոցառումները հնարավորություն ընձեռեցին ապահովելու հանրապետության էկոնոմիկայի արագ վերելքը:*

*Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ հանրապետության աշխատավորությունը հաջողությամբ կատարեց հնգամյակի առաջին տարվա պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները, որի համար հանրապետությունը հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:*

*Հանրապետության ժողովրդական տնտեսությունը դինամիկ և պլանաչափ զարգացում ապրեց նաև հնգամյակի երկրորդ տարում: Արդյունաբերության աշխատողները ժամկետից մեկ շաբաթ շուտ զեկուցեցին արտադրանքի իրացման և արտադրատեսակների մեծ մասի թողարկման տարեկան պլանային առաջադրանքների կատարման մասին: Արտապլանային կարգով իրացվել է մեծ քանակի արդյունաբերական արտադրանք: Արտադրության ծավալի աճը զգալիորեն գերազանցում է պլանային առաջադրանքը: Մեծ աշխատանք է տարվել արտադրանքի որակի բարելավման ասպարեզում: Այժմ հանրապետությունում թողարկվում է պետական որականիշ ունեցող շուրջ 1.100 անուն արտադրանք, որն ավելի քան երկու անգամ գերազանցում է 1975 թվականի մակարդակը:*

*Հիանալի հաղթանակ տարան հանրապետության գյուղի աշխատավորները: Նրանց հիրավի հերոսական աշխատանքի շնորհիվ հանրապետությունը հաջողությամբ կատարեց և գերակատարեց խաղողի, պտղի, հացահատիկի, բանջարեղենի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, խորդենու և անասնապահական բոլոր մթերքների արտադրության ու վաճառքի ինչպես պլանային առաջադրանքները, այնպես էլ սոցիալիստական պարտավորությունները: Այդ հաջողություններում, անտարակույս, հսկայական ներդրում ունեն գյուղական սկզբնական կուսակցական կազմակերպությունները: Գյուղական շատ կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները, օրինական հպարտությամբ խոսելով հանրապետության գյուղի աշխատավորներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ողջույնի նամակի մասին, միաժամանակ նշեցին, որ այն ոգևորում և պարտավորեցնում է իրենց՝ հնգամյակի հաջորդ տարիներին առավել բարձր ընագծեր նվաճելու համար:*

*Արդյունաբերության, կապի ձեռնարկությունների, շինարարական, տրանսպորտի կազմակերպությունների ժողովներում, ինչպես հաշվետու զեկուցում-*

ներում, այնպես էլ մտքերի փոխանակությանը մասնակցած կոմունիստների ելույթներում հիմնական շեշտը դրվեց այն բանի վրա, թե ինչպես է կատարվում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման և աշխատանքի որակի բարելավման՝ կուսակցության XXV համագումարի գլխավոր պահանջը։ Կոմունիստները, ըստ արժանվույն գնահատելով կատարված դրական աշխատանքը, ընդհանրացնելով կուտակված փորձը, միաժամանակ սկզբունքային դիրքերից վեր հանեցին այդ գործում տեղ գտած թերությունները, կոնկրետ առաջարկություններ արեցին՝ եղած ռեզերվներն օգտագործելու, ժողովրդատնտեսական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու համար։ Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ղափանի, Հրազդանի և մի շարք այլ քաղաքների ու շրջանների կուսակցական կազմակերպությունների ժողովներում կոմունիստները գործնական խոսակցություն բացեցին հանդիպական պլանների բացառիկ կարևոր նշանակության մասին, նշեցին դրանց համախմբող մեծ դերը։ Ժողովականները միաժամանակ խոսեցին այն մասին, որ հանդիպական պլանները հաճախ լարված չեն լինում։ Առանձին դեպքերում դրանք կազմելիս անտեսվում են աշխատավորության կարծիքները և այլն։

Շատ ժողովներում առանձնահատուկ նշանակություն տրվեցին գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, արտադրական հզորությունների, մեքենաների ու սարքավորումների ռացիոնալ օգտագործման հարցերին։ Նշվեց, որ կուսակցական կազմակերպությունները պետք է հետևողական աշխատանք տանեն արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրման, տնտեսավարման մակարդակի բարձրացման նպատակով։ Իսկ դրա համար անհրաժեշտ է, ամենից առաջ, բարձրացնել մասնագետների պատասխանատվությունը, ամեն մի աշխատողի վարպետությունը, նրա պրոֆեսիոնալ մակարդակը։ Շատ ժողովներում կոմունիստները շեշտեցին արտադրության ամեն մի տեղամասում կուսակցական հսկողության ուժեղացման անհրաժեշտությունը։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ նախորդ տարիների համեմատությամբ անցած հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում զգալիորեն ավելացել է ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկող հանձնաժողովների թիվը։

Հաշվետու-ընտրական ժողովներում մեծ տեղ հատկացվեցին նաև սոցիալիստական մրցության կազմակերպման, առաջավոր փորձի պրոպագանդման ու ներդրման հարցերին։ Խոսելով սոցիալիստական մրցության դաստիարակչական դերի մասին, Իջևանի շրջանի Սարիգյուղի սովխոզի կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի մասնակիցներն արտահայտեցին այն միտքը, որ պետք է մտածել սոցմրցության ձևերի հետագա կատարելագործման, նրա գործնականության բարձրացման մասին։ Մրցությունը ներկա փուլում կոչված է վճռական դեր խաղալու եղած ռեզերվների ու հնարավորությունների ըստ ամենայնի հայտաբերման ու օգտագործման, աշխատավորական մասսաների մոտ ստեղծագործական նոր լիցքի առաջացման գործում։ Այս պահանջների ոգով ցույց տրվեց տնտեսությունում սոցմրցության վիճակը և համակողմանիորեն վեր հանվեցին տեղ գտած լուրջ թերությունները։

Կոլտնտեսությունների, սովխոզների, գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների ժողովներում հանգամանորեն քննարկվեցին գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման, նրա հետագա մասնագիտացման ու համակենտրոնացման, հողագործական ու անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի ծավալների ավելացման հարցերը։ Առաջին պլան մղվեցին հողագործության կուլտուրայի անշեղ բարձրացման խնդիրները։

Ամենուրեք հաշվետու-ընտրական ժողովներում կոնկրետ միջոցառումներ մշակվեցին 1977 թվականը հաջողությամբ եզրափակելու և հնգամյակի երրորդ տարվա բարձր բերքի համար անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելու նպատակով։ Սիսիանի, Կրասնոսելսկի, Կալինինոյի և մի շարք այլ շրջան-



ների կոլտնտեսությունների ու սովխոզների կուսկազմակերպություններում լայն աջակցություն են գտել անասունների կազմակերպված ձմեռման նպատակով լայն տարածում գտած հայրենասիրական նախաձեռնությունները։ Այդ աշխատանքներն արդյունավետ կազմակերպելու համար շատ ժողովներում որոշում է ընդունվել անասնապահական ֆերմաներն ու համալիրները լրացուցիչ կարգով աշխատանքի գործուղելու մեծ թվով կոմունիստների ու կոմերիտականների։ Արտաշատի, Արարատի, Եղեգնաձորի, Աշտարակի, Թալինի շրջանների շատ ժողովներում շեշտվեց մեխանիզատորական կադրերի, անասնապահական ֆերմաներն ու համալիրներն սպասարկող մասնագետների որակավորման բարձրացման և պատրաստման ուղղությամբ տարվող աշխատանքների ուժեղացման անհրաժեշտությունը։

Կուսակցությունը մեզ սովորեցնում է քննադատորեն գնահատելու ձեռք բերված արդյունքները։ Ուստի և մենք չենք կարող աչք փակել այն բանի հանդեպ, որ ընդհանուր բավարար ցուցանիշների հետ մեկտեղ շարունակում են գոյություն ունենալ մի շարք լուրջ թերություններ ու բացթողումներ։ Հանրապետությունում դեռևս քիչ չեն այն ձեռնարկությունների, կառույցների, տնտեսությունների թիվը, որոնք դեռևս չեն կատարում պլանային առաջադրանքները։ Շատ ձեռնարկություններում և տնտեսություններում դեռևս ցածր է էկոնոմիկայի նկատմամբ կուսակցական ղեկավարման մակարդակը, կուսակցական կազմակերպություններն անբավարար են իրագործում իրենց համախմբող ու կազմակերպող դերը, անհրաժեշտ ազդեցություն չեն թողնում գործերի վիճակի վրա, հաշտվում են ստեղծված ոչ-նորմալ իրադրության հետ։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ նման ձեռնարկությունների ու տնտեսությունների կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները սրտացավությամբ և կուսակցական սկզբունքայնությամբ, իրենց կոլեկտիվների արտադրական գործունեության բարելավման նկատմամբ խոր շահագրգռվածությամբ քննարկեցին գործերի վիճակը։ Ժողովականներն առաջ քաշեցին ղեկավարման ոճի կատարելագործման, կադրերի պատասխանատվության բարձրացման, նրանց նախաձեռնության զարգացման, յուրաքանչյուր աշխատողի մոտ գիտակցական կարգապահության և թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի դաստիարակման անհրաժեշտությունը։

Լենինականի «Էլեկտրակենցաղսարք» գործարանի հաշվետու-ընտրական ժողովում կոմունիստներ Ա. Դավթյանը, Պ. Սուքիասյանը նշեցին, որ իրենց կոլեկտիվը բոլոր ցուցանիշներով տևականորեն ետ է մնում, թերակատարում է պլանային առաջադրանքները։ Մինչդեռ վիճակը կարելի է շտկել։ Անհրաժեշտ է բարելավել աշխատանքի կազմակերպումը, նյութերի ժամանակին ապահովումը, լիովին օգտագործել արտադրական հզորությունները, ամրապնդել արտադրական ու աշխատանքային կարգապահությունը, կայունացնել բանվորական կադրերը, բարձրացնել նրանց որակավորումը։ Գործերի վիճակի վրա ինչպես կարող էր բացասաբար չանդրադառնալ այն, որ միայն ընթացիկ տարում ձեռնարկությունում աշխատանքի է ընդունվել 159, իսկ ազատվել՝ 200 մարդ։

Ետ մնացող ձեռնարկությունների, կառույցների, տնտեսությունների կուսակցական հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը կարևոր նշանակություն տվեցին ՀԿԿ Կենտկոմը, տեղական կուսակցական մարմինները։ Նման շատ կազմակերպությունների ժողովներին մասնակցեցին ՀԿԿ քաղկոմ-շրջկոմների քարտուղարներ, ՀԿԿ Կենտկոմի ապարատի, մինիստրությունների, գերատեսչությունների պատասխանատու աշխատողներ։ Տնտեսական ղեկավարների և կուսկազմակերպությունների հետ մեկտեղ նրանք կոնկրետ միջոցառումներ մշակեցին ետ մնալն արագորեն հաղթահարելու նպատակով, օգնեցին մի շարք անհետաձգելի հարցերի լուծմանը։

Հանրապետության ողջ աշխատավորությունն անսահման երախտագիտությամբ ընդունեց Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը դադարեցնելու և նրա բազայի վրա մեքենաշինական ձեռնարկություն կառուցելու, հանրապետության ոռոգելի հողատարածությունների ընդլայնման և Երևան քաղաքում մետրոպոլիտեն կառուցելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ

մինիստրների խորհրդի որոշումները։ Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները, նշելով հանրապետության սոցիալ-տնտեսական կյանքում այդ որոշումների բացառիկ նշանակության մասին, իրենց շնորհակալական խոսքն էին ուղղում հարազատ կուսակցությանը, սովետական կառավարությանը, անձամբ ընկ. Լ. Ի. Բրեժնևին, մեր հանրապետության զարգացման ու հետագա բարգավաճման նկատմամբ ցուցաբերած ջերմ հոգատարության համար։ Ահա թե ինչ ասաց իր ելույթում Սիսիանի շրջանի Նորավանի սովխոզի մեխանիզատոր, «Պատվո նշան» շքանշանի ասպետ Կ. Դավթյանը. «Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմն ու սովետական կառավարությունը միշտ էլ ցուցաբերել և ցուցաբերում են անհրաժեշտ ուշադրություն։ Այդ են վկայում մեր հանրապետության մասին վերջերս ընդունված երեք շատ կարևորագույն որոշումները։ Դա մեր կուսակցության կողմից հետևողականորեն վարվող լենինյան ազգային քաղաքականության մարմնացումն է, հայ ժողովրդի նկատմամբ մեր կուսակցության հայրական հոգատարության վառ դրսևորումը։ Ինչպե՞ս կարելի է նման հոգատարությանը չպատասխանել հայրենանվեր գործերով։ Ես, որպես մեխանիզատոր և լենինյան կուսակցության անդամ, պատրաստ եմ կատարելու այն բոլոր առաջադրանքները, որ կդնի իմ առջև կուսակցական կազմակերպությունը»։

Հանրապետությունում վերջին ժամանակներս կարևոր նշանակություն է տրվում բնակչության սպասարկման կուլտուրայի բարձրացման հարցերին։ Կուսակցական, սովետական, արհմիութենական կազմակերպությունները հսկայական աշխատանք են տանում առևտրի ու հասարակական սննդի, կոմունալ-կենցաղային ու առողջապահական սպասարկման բարելավման ասպարեզում։ Հաշվետու-ընտրական ժողովներում նշելով այդ նպատակով ձեռնարկված միջոցառումների կարևորությունը և կատարված դրական տեղաշարժերը՝ կոմունիստները միաժամանակ քննադատորեն վեր հանեցին այդ գործում տեղ գտած լուրջ սխալներն ու թերությունները։

Մարտունու շրջանային կոոպերացիայի սկզբնական կուսկազմակերպության ժողովում կոմունիստ Ռ. Հունանյանն իր ելույթում նշեց, որ առևտրի ցանցում միանգամայն անբավարար ուշադրություն է նվիրվում սպասարկման կուլտուրայի բարձրացմանը, առևտրի կետերում սանիտարական վիճակի բարելավմանը, գնորդների նկատմամբ հարգալից վերաբերմունքի դրսևորմանը, իսկ առևտրի բնագավառը խցկված որոշ բախտախնդիր աշխատողներ իրենց արատավոր գործունեությամբ պարզապես ստվեր են գցում այդ բնագավառի մյուս ազնիվ ու բարեխիղճ աշխատողների վրա։ Կուսկազմակերպությունը չպետք է հանդուրժողականություն հանդես բերի նման մարդկանց նկատմամբ։ Կուսակցական ժողովը նորընտիր կուսբյուրոյի ուշադրությունը հրավիրեց թերությունների նկատմամբ անհաշտ պայքարի ուժեղացման անհրաժեշտության վրա և պահանջեց առավել հետևողականորեն իրականացնելու ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսակցական կազմակերպության վերահսկողության իրավունքը։

Ոչ պակաս սուր խոսակցություն ծավալվեց հանրապետության ավտոտրանսպորտի մինիստրության ապարատի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում։ Ըստ արժանվույն գնահատելով մինիստրության սիստեմի ձեռնարկությունների գործունեությունը և կատարված որոշակի դրական տեղաշարժերը, կոմունիստներն ավելի շատ խոսեցին տեղ գտած լուրջ և աղաղակող թերությունների մասին։ Նշվեց, որ ավտոտրանսպորտային ձեռնարկություններում դեռևս խիստ ցածր են աշխատանքային ու արտադրական կարգապահության մակարդակը, սպասարկման կուլտուրան՝ հատկապես մարդատար տրանսպորտի աշխատողների մոտ։ Սուր խոսակցություն բացվեց հատկապես քաղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքի վերաբերյալ։ Նշվեց, որ այդ գործում հստակ ու գիտական պլանավորման բացակայության, ավտոտրանսպորտային ձեռնարկությունների ղեկավարների անպատասխանա-



տու վերաբերմունքի, պետական ու կուսակցական կարգապահության անբավարար վիճակի հետևանքով լուրջ դժվարություններ են ստեղծվել բնակչության սպասարկման գործում, որն առաջ է բերում բնակչության իրավացի դժգոհությունը։ Ժողովում նշվեց, որ մինիստրության ապարատի կոմունիստների պարտքն է՝ խորությամբ վերլուծել բնակչությունից ստացված բողոքները, պարզել դրանց պատճառներն ու մեղավորներին, մշակել և կենսագործել կոմպլեքսային միջոցառումներ՝ ավտոտրանսպորտի աշխատանքը բարելավելու համար։

Հաշվետու-ընտրական ժողովներում խորությամբ քննարկվեցին գաղափարական-քաղաքական աշխատանքի հարցերը։ Վերլուծելով գաղափարական աշխատանքի վիճակը՝ կոմունիստները նշում էին, որ կուսակցական կազմակերպությունների աշխատանքում ավելի ցայտուն է դառնում մարդկանց դաստիարակության առնչվող պրոբլեմների կոմպլեքսային լուծման տենդենցը։ Կուսակցական կազմակերպությունները, հաշվի առնելով աշխատավորության տարբեր խավերի առանձնահատկությունները, ձգտում են ապահովել գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության սերտ միասնությունը։

Միաժամանակ ժողովականները վեր հանեցին այդ գործում տեղ գտած թերությունները։ Եղեգնաձորի, Արտաշատի, Գուգարքի, Կալինինոյի, Գորիսի և մի շարք այլ շրջանների ժողովներում փաստեր հիշատակվեցին, որ առանձին պրոպագանդիստական ու մասսայական քաղաքական միջոցառումներ, ձևականորեն անցկացնելու պատճառով, անհրաժեշտ ազդեցություն չեն թողնում մարդկանց գիտակցության և արարքների վրա։ Արտաշատի շրջանի Մխչյանի, Վ. Արտաշատի կոլտնտեսությունների, Եղեգնաձորի շրջանի Վերնաշենի սովխոզի և մի շարք այլ կուսկազմակերպությունների ժողովներում նշվեց, որ մարդկանց մոտ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակության գործում դեռևս ցածր է կոլեկտիվների դերը, պատշաճ պահանջկոտություն հանդես չի բերվում գործը լքողների, կարգապահությունը խախտողների նկատմամբ։

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները կոնկրետ միջոցներ են ձեռնարկել գաղափարական աշխատանքի բովանդակությունը խորացնելու, նրա ձևերն ու մեթոդները կատարելագործելու համար։

Հաշվետու-ընտրական ժողովներում կարևոր տեղ հատկացվեց կուսակցական կազմակերպությունների կազմակերպչորեն ամրապնդման, ներքին օղակին ցույց տրվող օգնության և ղեկավարման հետագա բարելավման, նրանց մարտունակության ամրապնդման ու հեղինակության բարձրացման, կոմունիստների ակտիվության և նախաձեռնության զարգացման պրոբլեմներին։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները վերջին ժամանակներս մեծ ուշադրություն են նվիրում կատարման ստուգման հետագա կատարելագործմանը, որոշումների կատարման համար կոմունիստների պատասխանատվության բարձրացմանը։ Եվ պատահական չէ, որ ժողովներում առանձնահատուկ սրությամբ քննարկվեցին այդ հարցերը։ «Հայարդմոնտաժ»-ի Կիրովականի վարչության կոմունիստները, օրինակ, իրենց հաշվետու-ընտրական ժողովում նշեցին, որ կազմակերպության ընդունած որոշումները զուրկ են կոնկրետությունից և որի պատճառով էլ դժվար է եղել հսկողություն սահմանել դրանց կատարման նկատմամբ։ Կոմունիստ բրիգադավար Ս. Սիմոնյանը իր ելույթում նշեց. «որ հաշվետու ժամանակաշրջանում կուսկազմակերպության բյուրոյի 17 նիստերում և 11 ժողովներում ընդունվել են տասնյակ որոշումներ։ Չենք առարկում, որ դրանք տպավորություն թողնող ցուցանիշներ են։ Բայց ինչ օգուտ դրանից, երբ ընդունված որոշումները չեն կատարվել և գործերի վիճակն էլ չի բարելավվել»։ Ժողովը կուսբյուրոյից պահանջեց բարձրացնել որոշումների կատարման համար հանձնարարություն ստացած կոմունիստների պատասխանատվությունը, պարտավորեցրեց կուսբյուրոյին առավել մեծ

տեղ հատկացնել որոշումների կատարման կապակցությամբ կոմունիստների հաշվետվությունները լսելու պրակտիկային։

Հաշվետու-ընտրական ժողովներում Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության մասին ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման լույսի ներքո խորությամբ վերլուծվեցին կուսակցության շարքերի աճի, նրա որակական կազմի բարելավման, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքները և նշվեցին այդ ասպարեզում հետագա գործունեության ծրագրերը։

Ժողովականները լուրջ ուշադրություն նվիրեցին սովետների և հասարակական կազմակերպությունների, մասնավորապես կոմերիտական կազմակերպությունների ղեկավարման հետագա ամրապնդման հարցերին։

Սկզբնական կուսկազմակերպություններում հաշվետվություններն ու ընտրություններն անցան կադրերին ներկայացվող պահանջների հետագա բարձրացման, կարգապահության ամրապնդման, պետական և տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում աշխատանքի իսկական կուսակցական ոճի հաստատման նշանաբանով։ Արժեքավորելով կադրերի աշխատանքի բարձր մակարդակը՝ կոմունիստները միաժամանակ սուր քննադատության ենթարկեցին այն ղեկավարներին, որոնք պատասխանատվություն հանդես չեն բերում հանձնարարված գործի նկատմամբ, հաճախ խուսափում են կոլեկտիվին հուզող հարցերի լուծումից։

Հաշվետվություններն ու ընտրությունները նպաստեցին սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավար մարմինների, սկզբնական կուսակցական կազմակերպության քարտուղարների որակական կազմի հետագա բարելավմանը։ Կուսակցական բյուրոների կազմում 540-ով ավելացել են բանվորների ու կոլտնտեսականների թիվը, 443-ով՝ կանանց թիվը։ Բանվորներն ու կոլտնտեսականներն այժմ կազմում են արդյունաբերական ու տրանսպորտային ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների կուսբյուրոների կազմի 55,2 տոկոսը։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների 99,8 տոկոսն ունի բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն, 31 տոկոսը կանայք են։ Արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներից յուրաքանչյուր երկրորդը՝ ինժեներատեխնիկական աշխատող է կամ գյուղատնտեսության մասնագետ։ Փոխվել է սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների 24,8 տոկոսը, որն այդ օղակի կադրերի կայունության վկայությունն է։

Հաշվետու-ընտրական կամպանիայի հաջող անցկացումը մեծ չափով պայմանավորված էր դրա խելացի նախապատրաստումով։ ՀԿԿ Կենտկոմում, կուսակցության քաղկոմ-շրջկոմներում ժամանակին նախապատրաստեցին և անցկացրին հրահանգչական խորհրդակցություններ։ Ժողովների նախապատրաստման ու անցկացման կարգի մասին երաշխավորական հրահանգներ են մշակել և ուղարկել սկզբնական կուսկազմակերպություններին ՀԿԿ Ստեփանավանի, Սպիտակի, Աբովյանի և մի շարք այլ շրջկոմներ։

Հաշվետու-ընտրական ժողովների ընթացքում կուսակցական աշխատանքը հարստացավ նոր ձևերով ու մեթոդներով, որոնք առավել ամուր կապ էին ստեղծում սկզբնական կուսկազմակերպությունների և ղեկավար մարմինների միջև։ Այսպես, ՀԿԿ Ազիզբեկովի, Գորիսի և մի շարք շրջկոմներ ժողովների մասնակիցներին ինֆորմացիա տվեցին ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման համար շրջկոմի ծավալած աշխատանքի մասին։ Նման կարգով ՀԿԿ Կենտկոմի գործունեության մասին շուրջ 1.400 սկզբնական կազմակերպությունների ժողովներում ինֆորմացիա տվեցին ՀԿԿ Կենտկոմի 177 անդամներ, անդամության թեկնածուներ, ՀԿԿ վերստուգիչ հանձնաժողովի անդամներ, ՀԿԿ Կենտկոմի ապարատի 80 պատասխանատու աշխատողներ։ Հաշվետու-ընտրական ժողովներին մասնակցեցին նաև մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ, նրանց ապարատների պատասխանատու աշխատողներ։



Կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեներն ամենօրյա հսկողություն էին սահմանել ժողովների ընթացքի նկատմամբ։ ՀԿԿ Կենտկոմը, կուսակցության բոլոր քաղկոմ-շրջկոմները բյուրոների նիստերում անդրադարձել են ժողովների ընթացքին, քննարկել արդյունքները։ Երևան քաղաքի, Արտաշատի, Սիսիանի, Իջևանի, Արարատի շրջկոմներում, Լենինականի, Կիրովականի, Դիլիջանի քաղկոմներում ամեն օր ամփոփվում էին նախորդ օրվա ժողովների արդյունքները, լսվում ամրացված ընկերների հաղորդումները, ի մի բերվում արված քննադատական դիտողությունները։ Եթե վերջիններս դուրս էին գալիս սկզբնական կուսկազմակերպությունների իրավասության շրջանակներից, ապա օպերատիվ կարգով դրանք ուղարկվում էին համապատասխան կազմակերպություններին՝ ընթացք տալու համար։ Աշխատանքի նման կազմակերպումը կարևոր դեր է խաղում կոմունիստների ակտիվության աճի, կատարման կազմակերպման ու վերահսկողության կատարելագործման, մասսաների շրջանում կուսկազմակերպությունների ազդեցության ուժեղացման գործում։

Ձեռնարկված միջոցները դրական ազդեցություն ունեցան հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների ճնշող մասում հաշվետու-ընտրական ժողովների խելացի նախապատրաստման և կազմակերպական-քաղաքական բարձր մակարդակով անցկացման վրա։ Այս առումով ուշագրավ էին Երևանի «Հայգորգ» ֆիրմայի, № 3 տեխնիկական ուսումնարանի, № 133 դպրոցի, Կիրովականի երկաթուղային հանգույցի, Մասիսի շրջանի Մարմարաշենի կոլտնտեսության, Նաիրիի շրջանի Պռոշյանի անվան սովխոզի և հանրապետության բազմաթիվ այլ սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները։

Հաշվետու-ընտրական կամպանիան միաժամանակ ցույց տվեց, որ առանձին կուսկազմակերպություններում, ժողովների նախապատրաստության գործում հապճեպություն ցուցաբերելու պատճառով, ժողովներն անցան կազմակերպական ու գաղափարական ցածր մակարդակով, կոմունիստների պասիվ մասնակցությամբ, կոնկրետ ու գործնական քննադատության և ինքնաքննադատության բացակայության պայմաններում։ Իջևանի № 17 թունելային ջոկատի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում բյուրոյի հաշվետվությունը տևեց ընդամենը 10 րոպե։ Գլխավոր թերությունն այստեղ հաշվետու ղեկուցման ժամանակի քիչ տևողությունը չէ, այլ այն, որ ղեկուցումը մակերեսային էր, առանց կոլեկտիվի գործերի խոր վերլուծության, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության։ Իսկ այլ կերպ էլ չէր կարող անցնել այդ կազմակերպության ժողովը, քանի որ կուսկազմակերպությունը կազմակերպչորեն ամրապնդված չէ, չի ապահովում արտադրության նկատմամբ կուսակցական ղեկավարումը, կոմունիստների ավանգարդային դերը, ցածր է նրանց հասարակական-քաղաքական ակտիվությունը։ Այս բոլորի հետևանքով էլ կոմունիստները ժողովում անչափ պասիվ էին։ Սևանի շրջանի Լճաշենի միջնակարգ դպրոցի կուսակցական հաշվետու-ընտրական ժողովում բացակայում էր քննադատությունը և հատկապես ինքնաքննադատությունը։ Ինչպես հաշվետու ղեկուցման մեջ, այնպես էլ ելույթներում շըրջանցվեցին դպրոցի ուսումնադաստիարակչական աշխատանքներում տեղ գըտած լուրջ թերությունները, կոլեկտիվում ստեղծված աշխատանքային անառողջ փոխհարաբերությունները, չնայած անչափ կարևոր էր դրանց խոր, սկըզբունքային քննարկման անհրաժեշտությունը։ Երևանի համակցված կերերի գործարանի սկզբնական կուսկազմակերպության ժողովում, ինչպես հարկն է, չլուսաբանվեց կուսկազմակերպության բյուրոյի, ինչպես նաև առանձին կոմունիստների գործունեությունը։ Հաշվետու ղեկուցման մեջ ուշադրությունից դուրս էին մնացել արտադրանքի որակի բարձրացման հարցերը, չնայած այն բանին, որ գործարանում այդ նպատակով բավարար աշխատանք չի տարվում, որի պատճառով և չի նվազում ստացվող բողոքների քանակը։ Ինչպես հարկն է չքննարկվեցին կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման,

վառնումներն ու յուրացումները կանխելու համար կուսկազմակերպության կատարած աշխատանքի հարցերը։

Հաշվետու-ընտրական ժողովները ցածր մակարդակով են նախապատրաստվել և անցկացվել նաև Երևանի համաշինարարական № 1 տրեստի «Հայշինինդուստրիա» միավորման, Երքաղսովետի գործկոմի կոմունալ ձեռնարկությունների վարչության, Շահումյանի անվան միջնակարգ դպրոցի, Ղուկասյանի շրջանի Սարիարի սովխոզի, Սպիտակի շրջանի Թափանլիի կոլտնտեսության, Նոյեմբերյանի շրջանի Այրումի № 7 շարժական մեքենայացված շարասյան, Նաիրիի ավտոտեխսպասարկման № 5 կայանի և մի շարք այլ սկզբնական կուսկազմակերպություններում։

ՀԿԿ Կենտկոմը, քաղկոմ-շրջկոմներն ամփոփել են հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները, ընդհանրացրել արված քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, կոնկրետ միջոցառումներ մշակել ընդունված որոշումների և քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործման համար։ Նորընտիր կուսբյուրոներից, նրանց քարտուղարներից, արտադրամասային կուսկազմակերպություններից ու կուսակցական խմբերից, բոլոր կուսակցական կոմիտեներից պահանջվում է խիստ հսկողության տակ առնելու յուրաքանչյուր դիտողության կամ առաջարկության կենսագործման ընթացքը։ Անհրաժեշտ է հոգ տանել ընտրովի կուսակցական ակտիվի ուսուցման գործի կազմակերպման մասին։ ՀԿԿ Կենտկոմը դեկտեմբեր ամսին Երևան, Լենինական և Կիրովական քաղաքներում անցկացրեց արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի, կապի կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կուսքարտուղարների 6-օրյա սեմինար պարապմունքներ, որոնց մասնակցեց ավելի քան 500 մարդ։ Կուսակցության քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պարտավոր են տեղերում կազմակերպել և անցկացնել կուսակցական մյուս օղակներում ընտրված ակտիվի՝ արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների, կուսխմբավարների, կուսբյուրոների անդամների ուսուցումը։

Կուսակցության քաղկոմ-շրջկոմները պետք է խորությամբ վեր հանեն սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքում տեղ գտած թերությունները, կոնկրետ միջոցառումներ մշակեն նրանց կազմակերպչորեն ամրապնդման, նրանց դերի ու նշանակության բարձրացման համար։ «Կուսակցական ղեկավարման մակարդակն անմիջականորեն կախված է այն բանից, թե որքան մարտականորեն ու նախաձեռնորեն են աշխատում սկզբնական կուսակցական կազմակերպությունները, որոնք կազմում են մեր կուսակցության հիմքը»,— ասաց ՍՄԿԿ XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 100)։

Այժմ, երբ մենք թևակոխել ենք տասնիրորդ՝ որակի և արդյունավետության հնգամյակի երրորդ տարին, գործունեության լայն ասպարեզ է բացվել կուսակցական, սովետական, տնտեսական, հասարակական բոլոր կազմակերպությունների առջև, միաժամանակ նոր, առավել բարձր պահանջներ են առաջադրվում նրանց գործունեությանը։

Այժմ կուսակցության քաղկոմ-շրջկոմների պլենումներում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում ամենուր քննարկվում են ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1977 թ.) պլենումի նյութերը։ Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ յուրաքանչյուր աշխատավորի հասցնել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի որոշումները, սահմանել յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատավորի կողմից դրանց իրականացման կոնկրետ խնդիրներն ու ժամկետները, մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու քաղաքական ողջ աշխատանքը նպատակամղել հնգամյակի երրորդ տարում հանրապետության առջև ծառացած մեծ ու պատասխանատու խնդիրների իրականացմանը։

# ԿՈԼԵԿՏԻՎԸ ԵՎ ՆՐԱ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊԼԱՆԸ

**Ֆ. Ս. ԶՎԱԿԵՐՅԱՆ**
Լենինականի տեքստիլ կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար

Կոմունիստական շինարարության բոլոր փուլերում ժողովրդատնտեսական կառավարման առավել հրատապ և կարևորագույն խնդիրը եղել և մնում է գիտականորեն մշակված և խորապես հիմնավորված պլանավորումը։ Մեր երկրի պետական պլանները կազմվում են հասարակական պահանջմունքների առավել ճշգրիտ ուսումնասիրության, երկրի տնտեսական հնարավորությունների գիտական կանխատեսումների հիման վրա։ Ներկա փուլում կուսակցության քաղաքականության կարևորագույն առանձնահատկությունն արտադրատեխնիկական, տնտեսական ու սոցիալական խնդիրների կոմպլեքսային լուծումն է։ ՍՄԿԿ XXV համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, խոսելով պլանավորման նշանակության մասին, նշեց, որ աջակցության է արժանի կոլեկտիվների սոցիալական զարգացման պլաններ կազմելու պրակտիկան։ Սոցիալական զարգացման պլանը բխում է կուսակցության առաջադրած գլխավոր խնդրի լուծման, բնակչության կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման շահերից։

Այդ խնդիրն լստ ամենայնի արտացոլվում է նաև ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, որը լայնորեն քննարկվեց մեր բովանդակ երկրի բոլոր անկյուններում։ Սահմանադրությունն օրենսդրական ուժ է տալիս մեր երկրի աշխատավորների կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը, նրա հոգևոր պահանջմունքների բավարարմանը։ Իսկ դա նոր հասարակարգ կառուցող մարդկանց նկատմամբ սովետական պետության և կոմունիստական կուսակցության ցուցաբերած ջերմ հոգատարության ամենացայտուն վկայությունն է։ «Սովետական պետությունը,— ասվում է ՍՍՀՄ Սահմանադրության 19-րդ հոդվածում,— նպաստում է հասարակության սոցիալական միատարրության ուժեղացմանը, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացմանը, ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների հետագա զարգացմանն ու մերձեցմանը»։

«Սոցիալական զարգացումը և կուլտուրան» գլխի մյուս հոդվածները ևս արծարծում են բնակչության կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանն առնչվող արմատական խնդիրներ։ Այսպիսով, սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ աճի ապահովումը եղել ու մնում է պետության հիմնական նպատակը։

Սովետական Միության արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններում սոցիոլոգիական ուսումնասիրությունների հիման վրա մշակված կոլեկտիվների սոցիալական զարգացման պլանները հաջողությամբ իրագործվում և տալիս են հրանալի արդյունքներ։ Այս առումով ուշադրության արժանի է Լենինգրադի «Սվետլանա» արտադրամիավորումում կուտակված հարուստ փորձը։ Լենինականի կրկնակի շքանշանակիր տեքստիլ կոմբինատի սկզբնական կուսկազմակերպություններն ու արտադրական կոլեկտիվները մեծ հետաքրքրությամբ ծանոթացան այդ միավորման կուսկոմիտեի քարտուղար Ի. Վ. Միխայլովի՝ «Լենինյան ուղիով» ամսագրի 1976 թ. № 9-ում տպագրված

Ձեռնարկության կուսակցական ու հասարակական կազմակերպություններն իրենց առաջնահերթ գործն են համարում երիտասարդությանն ընդգրկել ուսման մեջ, կազմակերպել նրանց կոմունիստական համակողմանի դաստիարակությունը: Այս խնդիրը ևս արտացոլվում է մեր բամբակագործական արտադրական միավորման տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային ծրագրում: Յուրաքանչյուր ուսումնական տարվա նախօրյակին ձեռնարկության և բազային դպրոցի համատեղ ուժերով անցկացվում է թերուս երիտասարդների հաշվառում: Այն անձանց հետ, ովքեր պատրաստակամություն հանդես չեն բերում շարունակելու ուսումը, կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները տանում են ագիտացիոն-մասսայական աշխատանք՝ ձգտելով նրանց ևս ուղարկել ուսումը շարունակելու: Ուսումնական տարվա առաջին օրերին կոմբինատի ԼԿԵՄ կոմիտեն զբաղվում է պարապմունքներին նրանց ակտիվ մասնակցությունն ապահովելու հարցով, իսկ հետագայում մըշտապես հետևում հաճախումներին: Դպրոցի դիրեկցիայի ներկայացրած ցուցակների համաձայն կուսակցական ու կոմերիտական կոմիտեները խրախուսում են կոլեկտիվի ուսման առաջավոր անդամներին, համապատասխան վերաբերմունք դրսևորում մյուսների նկատմամբ: Սերտ կապեր ենք հաստատել այն դպրոցների հետ, որտեղ սովորում են մեր բանվորները: Կուսկոմիտեն իր նիստերում պարբերաբար անդրադառնում է սովորող երիտասարդության կրթության հարցերին: Եվ դա ևս մեծապես նպաստում է դպրոցներում նրանց թվի ավելացմանը, ուսման որակի բարձրացմանը: Այժմ քաղաքի երեկոյան և հերթափոխային դպրոցներում սովորում են 384 տեքստիլագործներ:

Կոմբինատում աշխատող երիտասարդ բանվորների համար ստեղծված են միջնակարգ կրթություն ստանալու անհրաժեշտ պայմաններ: Որպես կանոն, նրանք չեն ծանրաբեռնվում հասարակական հանձնարարություններով, օգտվում են իրենց հասանելիք արձակուրդից, չեն մեկնում գործուղումների:

Սոցիալական զարգացման պլանում մեծ տեղ է տրվում կադրերի որակավորմանը, նրանց մասնագիտական պատրաստականության բարձրացմանը: Հայաստանի թեթև արդյունաբերության մինիստրության Երևանի ուսումնական կոմբինատում և երկրի այլ քաղաքներում կազմակերպվում են ինժեներատեխնիկական աշխատողների՝ արտադրությունից կտրված վերաորակավորման դասընթացներ: Վերջին վեց տարում այդ դասընթացներում սովորել է 159 տեքստիլագործ: Որակավորման դասընթացներ են կազմակերպվում նաև տեղում, աշխատանքին զուգընթաց: Կոմբինատի ուսումնադասընթացային հաստատությունում ուսանում են լաբորանտները, վարպետները, հաշվապահները:

Բանվորների որակավորման բարձրացումը կազմակերպվում է լայն ծրագրով: Ամեն տարի արտադրատեխնիկական, նպատակային նշանակման, առաջավոր փորձի ու մեթոդների ուսուցման դասընթացներում և դպրոցներում բանվորները սովորում են երկրորդ և երրորդ հարակից մասնագիտություններ: 1971—1976 թվականներին լրացուցիչ մասնագիտություններ են ձեռք բերել 1.505 բանվորներ, առաջավոր փորձի և մեթոդների ուսուցման դպրոցներում ուսանել են 1.794, նպատակային դասընթացներում՝ 1.122, արտադրատեխնիկական դասընթացներում՝ 5.211 բանվորներ:

Ուսուցման այս և մյուս օղակներում բանվորների որակավորման բարձրացման գործն ստանձնել են ձեռնարկության լավագույն մասնագետները՝ արտադրության ավագ, միջին և կրտսեր հրամկազմի ներկայացուցիչները, ինժեներատեխնիկական աշխատողները:

Առաջատար մասնագիտության բանվորներն իրենց աշխատափորձը հաղորդում են ետ մնացող և միջին մակարդակի բանվորներին, անփորձներին և նորեկներին: Տասնյակ կադրեր են պատրաստել ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, նախամանող բանվորուհի Գրիգելդա Գևորգյանը, ՍՍՀՄ պետական մրցանակի 1976 թ. դափնեկիր, ենթավարպետ Միհրան Ստեփանյանը, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, ջուլհակուհի Կլարա Սարգսյանը, Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանների ասպետ, նախամանող բանվորուհի Աստղիկ Առաքելյանը, ճանաչված ենթավարպետ, կոմբինատի կուսկոմիտեի անդամ Կարլեն Իսպիրյանը և շատ ուրիշներ: Նրանք հմուտ և



փորձառու վարպետ-դաստիարակներ են, հայրենասիրական նախաձեռնությունների հեղինակներ ու հետևորդներ:

Մեր կոմբինատի համար բարձրորակ բանվորական կադրեր են պատրաստում №№ 3, 17 և 48 պրոֆտեխուսումնարանները, ձեռնարկության ուսումնադասընթացային հաստատությունները: Վերջինիս կից բացվել է Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի մասնաճյուղի նախապատրաստական բաժնի երկու խումբ, որոնցում ընդգրկված են 30 լավագույն բանվորներ: Պարապմունքներն անցկացվում են ուսումնադասընթացային հաստատությունում:

Ամեն տարի ուսուցման կարճ տևողությամբ մեծ թվով կադրեր են պատրաստվում ուսումնադասընթացային հաստատությունում: Կրթության այս օջախն ապահովված է ուսման, հանգստի և ժամանցի լավագույն պայմաններով, մանկավարժական կադրերով, դասվում է երկրի համանման օրինակելի հաստատությունների շարքը: Եթե նախորդ հնգամյակի առաջին տարում այստեղ պատրաստվել են 280 մանողներ, փաթաթողներ, ջուլհակներ, ենթավարպետներ և այլ մասնագիտությունների բանվորներ, ապա տասներորդ հնգամյակի առաջին տարում նրանց թիվը հասել է 360-ի:

Սոցիալական զարգացման հեռանկարային պլանը բաղկացած է մի քանի հիմնական բաժիններից, որոնց մեջ ուրույն տեղ ունեն աշխատապայմանների բարելավումը և արտադրական խեղումների նախականխումը: Համառոտակիորեն անդրադառնանք այս երկու բաժիններին:

Կուսկազմակերպության մշտական հսկողությամբ հետևողականորեն շարունակվում է աշխատապայմանների բարելավման և ձեռքի աշխատանքի մեքենայացման գործը, արմատավորվում են տեխնոլոգիական առաջավոր եղանակներ, ստեղծվում են ժամանցի ու հանգստի լավագույն պայմաններ: Նախորդ հնգամյակում մանվածքային ու գործվածքային ֆաբրիկաների միջև 362 մետր երկարությամբ շահագործման է հանձնվել շղթայավոր հարահոսը՝ կիսապատրաստուկներ և տարաներ փոխադրելու համար: 350 մետր երկարությամբ շղթայավոր հարահոս է անցկացվել նաև մանվածքային ֆաբրիկայի տեսակավորման բաժնում:

Գեղեցիկ ձևավորված զբոսայգու տպավորություն է թողնում ձեռնարկության բակը: Այստեղ ստեղծվել են հանգստի և ժամանցի լավ պայմաններ: Ֆաբրիկաներում կան հանգստի սենյակներ, կարմիր անկյուններ, բանվորական ճաշարաններ, ցնցուղ-լոգարաններ ու հանդերձարաններ, առևտրական ու բուժական կետեր:

Հանգստի և ժամանցի լավագույն օջախների են վերածվել տեքստիլագործների մշակույթի պալատն ու «Արագած» մարզական ակումբը, որոնք ունեն հիանալի հարմարություններ: Հանգստի յուրահատուկ պայմաններ են ստեղծվել բանվորական հանրակացարաններում, պրոֆիլակտորիայում, նախակրթարաններում, պրոֆտեխուսումնարաններում, ուսումնադասընթացային հաստատությունում:

Սոցիալական զարգացման ընթացիկ ծրագիրը նախատեսում է այնպիսի միջոցառումներ, որոնց իրականացմամբ արմատապես կբարելավվեն աշխատապայմանները, կկրճատվեն աշխատատար ծանր գործողությունները, արտադրությունում առաջավոր տեխնոլոգիայի, մեքենայացման և ավտոմատացման ներդրմամբ կնվազի բանվորների պայմանական թիվը: Էական հաջողություններ ձեռք կբերվեն անվտանգության տեխնիկայի և աշխատանքի պաշտպանության դրվածքի բարելավման, մարդկանց առողջության ամրապնդման, կոմունիստական դաստիարակության համակարգի կատարելագործման, նրանց ստեղծագործական ունակությունների զարգացման ասպարեզներում: Այդ ամենը կխթանի ձեռնարկության տնտեսական վերելքը:

Արտադրանքի իրացման ծավալը 1975 թ. 93 մլն 218 հազարից տասներորդ հնգամյակի վերջում կհասնի 125 մլն 835 հազար ռուբլու, աշխատանքի արտադրողականությունը կաճի 16,7 տոկոսով: Նյութական խրախուսման ֆոնդի միջոցները 681 հազարից կհասցվի մեկ մլն 472 հազար ռուբլու, սոցիալ-

կուլտուրական միջոցառումների և բնակարանային ֆոնդինը՝ 138 հազարից՝ 584 հազարի։ Արտադրության ֆոնդի ծավալը կմեծանա 25,4 տոկոսով։

Տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային ծրագիրը մշակելիս՝ տեքստիլագործները հաշվի են առել մի շարք կարևոր գործոններ։ Նոր հնգամյակը արտադրության արդյունավետության բարձրացման և որակի ժամանակաշրջան է, հետևաբար, արտադրական ցուցանիշներն ուղիղ համեմատական են կոլեկտիվում տիրող ստեղծագործական մթնոլորտին և նրա անդամների համերաշխությանն ու համախմբմանը։ Ձեռնարկության հետագա առաջընթացի համար անհրաժեշտ է կոլեկտիվի բոլոր անդամներին մշտապես հաղորդել գիտելիքներ, մասնագիտական վարպետություն, բարձրացնել ինժեներատեխնիկական աշխատողների որակավորումը, ծավալել վարպետ-դաստիարակների մրցություն-համագործակցություն շարժումը։ Հարկ է հաշվի առնել աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացման համար այնպիսի կարևոր հանգամանքներ, ինչպիսիք են՝ աշխատավարձի համակարգի կատարելագործումը, կենցաղային, բժշկական սպասարկման, հանգստի, բնակարանային պայմանների բարելավումը, նյութական և բարոյական խրախուսման ձևերի լայն ներդրումը։

Հարուստ ու բազմազան են նոր հնգամյակում իրականացվող միջոցառումները։ Կբացվեն նոր հանդերձարաններ, կտեղադրվեն օդափոխիչ, խոնավացման ու օդաորակավորման սարքեր, կավելանա էլեկտրական կետերի թիվը, կբարելավվի արտադրամասերի լուսավորվածությունը։ Գործվածքային և մանվածքային արտադրություններում, աղմուկը նվազեցնելու նպատակով, կտեղակայվեն 330 միավոր անմաքոք հաստոցներ, 30 միավոր մանող փոքրածավալ և նախամանող մեքենաներ, որոնք բարձր արտադրողական են և դյուրին են սպասարկվում։ Օդափոխիչ սարք կդրվի վերջնամշակման ֆաբրիկայի հասունացնող արտադրամասում, կվերակառուցվի քիմիական կայանը, այն կհարմարեցվի կաուստիկ ներկանյութի մատուցմանը, կբարեփոխվի ներկանյութի տեղամասը։ Կստեղծվի անվտանգության տեխնիկայի կաբինետ։

Արտադրատեղամասերում շահագործման կհանձնվեն նոտադարձ մնացուկները և բամբակի մաղմզուկները ներծծող սարքեր ու փոշեծծիչներ, կկատարվեն արտադրական շինանյութերի գեղագիտական ձևավորման աշխատանքներ, որոնք հաճույք կպատճառեն բանվորներին։

Ընթացիկ տարում նախատեսվում է Կիրովականի մերձակայքում գտնվող Թեժ լեռան ստորոտին կառուցել 400 տեղանոց պիոներական ճամբար, որը կգործի շուրջ տարին։ Ամռանը այն կսպասարկի պիոներ-դպրոցականներին, ձմռանը՝ տեքստիլագործ բանվոր-ծառայողներին։ Կկառուցվեն նաև մարզադաշտ և ծածկված լողավազան։

Հատուկ ուշադրություն կնվիրվի բանվոր-ծառայողների հասարակական սննդի կազմակերպմանը։ Ճաշարանների նստատեղերը կավելանան 472-ով, դիետիկ սպասարկման տեղերը՝ 80-ով։ Կկրկնապատկվի լիովին մեքենայացված արտադրամասերի քանակը։ Մեծ ծավալի աշխատանքներ են կատարվելու միավորման Արթիկի մասնաճյուղում, Կիրովականի Հոկտեմբերի 40-ամյակի անվան մանվածքային և Ալավերդու գործվածքային ֆաբրիկաներում։

Ձեռնարկության տնտեսական և սոցիալական զարգացման ծրագրի հաջող կենսագործման նպատակով կուսկոմիտեին առընթեր ստեղծվել և գործում է կոորդինացնող և վերահսկող խորհուրդ։ Նրա կազմում ընդգրկված են կուսակցական-տնտեսական ղեկավար աշխատողներ, անվանի բանվորներ։ Խորհուրդն ամեն եռամսյակ նախապատրաստում և կուսկոմիտեի քննարկմանն է ներկայացնում սոցիալական զարգացման պլանի կատարման ընթացքին առնչվող հարցեր, համապատասխան գնահատական տալիս կատարված աշխատանքին, ձեռնարկում գործնական միջոցներ նկատվող բացերն ու թերությունները վերացնելու համար։

Կուսակցական կոմիտեն խորհրդակցությունների, սեմինարների և հավաքների միջոցով մշտապես վերահսկում է սոցիալական զարգացման պլանի անվերապահ կատարումը՝ հիմնական շեշտը դնելով որակի և արդյունավետության բարձրացման վրա։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՖԻՆԱՆՍԱՎՈՐՄԱՆ ԴԵՐԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ԳՈՐԾՈՒՄ

**Թ. Ա. ՉԱՏԻԿՅԱՆ**
ՀՍՍՀ ֆինանսների մինիստրի առաջին տեղակալ

ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ նպատակների իրագործմանն է ծառայում կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականությունը։ Նրա խնդիրն է գյուղատնտեսական արտադրությունը վերածել ժողովրդական տնտեսության բարձր զարգացած ճյուղի։ Գյուղատնտեսության արագընթաց վերելքի հարցը կուսակցությունը համարում է ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական, համակուսակցական, համապետական մեծ խնդիր։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականության կոնկրետ մարմնավորումը գյուղատնտեսության վերելքի կոմպլեքսային լայն ծրագիրն է, որը մշակվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումում։ Կյանքն ապացուցում է այդ քաղաքականության գիտական ու ռեալիստական էությունը, որի իրականացման շնորհիվ երկրի գյուղատնտեսությունը հաստատորեն կանգնել է ինտենսիվ զարգացման ուղու վրա։ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո անցած տարիներին մեկ բնակչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն աճել է գրեթե մեկ քառորդով, և դա այն դեպքում, երբ երկրի բնակչության թիվն ավելացել է 23 միլիոնով։ Կրկնապատկվել են գյուղատնտեսության էներգետիկ կարողությունները, բարձրացել է հացահատիկային և մյուս գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, անասունների և թռչունների մթերատվությունը։ Աշխատանքի արտադրողականությունն աճել է 58 տոկոսով։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի պայմաններում կուսակցության քաղաքականությունը որոշակի փոփոխություն մտցրեց նաև ազգային եկամտի բաշխման և օգտագործման մեջ։ Ժողովրդական տնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումների կազմում հետզհետե ավելացան գյուղատնտեսությանը հատկացվող միջոցները։ Եթե մինչև տասներորդ հնգամյակի սկիզբը երկրի գյուղատնտեսության մեջ կատարվել են ընդամենը 320 մլրդ ռուբլու կապիտալ ներդրումներ, ապա դրա 66,8 տոկոսը, կամ 213 մլրդ ռուբլին բաժին է ընկնում ութերորդ և իններորդ հնգամյակներին։

Երկրի էկոնոմիկայի ամրապնդումը կուսակցությանը հնարավորություն ընձեռեց գյուղատնտեսությամբ զբաղվող կազմակերպությունների օգտին լուծելու նաև պետության հետ ունեցած նրանց մի շարք ֆինանսական հարաբերությունները՝ գյուղատնտեսական մթերքների մթերման կայուն պլաններ, պլանից ավելի հանձնած մթերքների հավելավճարի սահմանումը, նոր գնման գները, սովխոզների նորմաներին համապատասխան կոլտնտեսականների աշխատավարձի երաշխավորված մինիմումի սահմանումը, կոլտնտեսություններն

ուղղակի վարկավորման փոխադրելը, եկամտահարկի նոր կարգ հաստատելը և այլն։

Գյուղատնտեսական մթերքների պետական գնման գների բարձրացման կապակցությամբ փոխվեց պետական բյուջեի կառուցվածքը, պակասեց հացամթերքների, յուղատու սերմերի, շաքարի, բրդի ու բամբակե կտորեղենի իրացումից ստացվող շրջանառության հարկը, ավելացավ կաթի, մսի, կարտոֆիլի և բանջարեղենի հաշվարկային ու մեծածախ գների տարբերությանը բյուջեից տրվող հատուցումը։ 1965 թվականից հետո գյուղում իրականացվող միջոցառումների շնորհիվ երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները շահեցին մոտ 126 մլրդ ռուբլի։ Բարձրացան կոլտնտեսությունների և սովխոզների շահութաբերությունը, գյուղի աշխատավորության եկամուտները։ 1975 թ. կոլտնտեսականների վարձատրությունը, 1965 թ. համեմատությամբ, ավելացավ մոտ 1,7 անգամ։ Ամրապնդվեց գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան։ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումից հետո երկրի գյուղատնտեսությունը շեշտակի վերելք ապրեց։ Ութերորդ հնգամյակում համախառն արտադրանքի միջին տարեկան աճը, յոթերորդ հնգամյակի համեմատությամբ, կազմեց 21 տոկոս, իսկ իններորդ հնգամյակում, ութերորդի համեմատությամբ՝ 13 տոկոս։ Այսպիսով, համախառն արտադրանքի աճը՝ վերջին երկու հնգամյակում կազմեց 37 տոկոս, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 1,6 տոկոսով։

Կուսակցության ու կառավարության միջոցառումների շնորհիվ նկատելի վերելք ապրեց նաև մեր հանրապետության գյուղատնտեսական արտադրությունը։ 1965 թվականից հետո, մեկ շնչի հաշվով, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացավ 27,7 տոկոսով։ Չնայած բնակլիմայական աննպաստ պայմաններին, իններորդ հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ, գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալն ավելացավ 22,4 տոկոսով, այդ թվում հանրային սեկտորում՝ 34,3։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը կատարվեց նրա ինտենսիվացման ճանապարհով։ Բարձրացավ հատիկային ու մյուս կուլտուրաների բերքատվությունը, անասնապահության մթերատվությունը, որը հիմնականում տեղի ունեցավ աշխատանքի արտադրողականության աճի հաշվին։ Գյուղատնտեսության բնագավառում եղած տեղաշարժերը կոմունիստական կուսակցության վարած տնտեսական ու քաղաքական գործունեության արգասիքն են։

Առաջիկայում առավել մեծ են գյուղատնտեսության առջև դրված խնդիրները։ «Գյուղատնտեսության հիմնական խնդիրն է,— ասված է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում,— ապահովել գյուղատնտեսական արտադրության հետագա աճն ու մեծ կայունությունը, ըստ ամենայնի բարձրացնել հողագործության և անասնապահության արդյունավետությունը՝ սննդամթերքների նկատմամբ բնակչության և հումքի նկատմամբ արդյունաբերության պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու, գյուղատնտեսական արտադրանքի պետական անհրաժեշտ ռեզերվներ ստեղծելու համար» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 293—294)։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի ավելի բարձր տեմպեր են նախատեսված նաև ՀՍՍՀ-ում։ Տասներորդ հնգամյակում մեր հանրապետությունում գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելանալու է տարեկան միջին հաշվով 22—25 տոկոսով։ Ընդ որում, հացահատիկային կուլտուրաների համախառն արտադրանքը՝ 23,9, մսինը՝ 26,6, կաթինը՝ 10,1, ձվինը՝ 50,8, բրդինը՝ 6,8 տոկոսով։ Այդպիսի աճը նախատեսվում է ապահովել գյուղատնտեսության արտադրության հետևողական ինտենսիվացման և նյութատեխնիկական բազայի ամրապնդման ճանապարհով։

Հնգամյակի տարիներին հանրապետության գյուղատնտեսությունն ստանալու է 7.800 տրակտոր, 10 հազար բեռնատար ավտոմեքենա, 800 հացահատիկ հավաքող կոմբայն, 900 էքսկավատորներ, 1.100 բուլդոզերներ, գյու-



ղատնտեսական շատ ու շատ այլ մեքենաներ, գործիքներ, սարքավորումներ և 2.214 հազար տոննա հանքային պարարտանյութ։

Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կազմելու են 1.310 մլն ռուբլի, այդ թվում պետական կապիտալ ներդրումները՝ 1.129 մլն ռուբլի, կոլտնտեսությունների հաշվին՝ 181 մլն ռուբլի։ Այդպիսով, գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելանալու են 447 մլն ռուբլով։ Եթե վեցերորդ հնգամյակում գյուղատնտեսության կապիտալ ներդրումները հանրապետության ամբողջ կապիտալ ներդրումների մեջ կազմել էր միայն 17,5 տոկոս, ապա տասներորդում այն կկազմի 25,3 տոկոս։ Փաստորեն գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումներն աճում են ինչպես բացարձակ գումարով, այնպես էլ՝ տեսակարար կշռով։

Ժողովրդական տնտեսության 1976—1980 թթ. պլանով նախատեսված գյուղատնտեսական մթերքների արտադրության աճը և կապիտալ ներդրումները լրիվ կերպով ապահովված են ֆինանսական ռեսուրսներով։ Տասներորդ հնգամյակի հաշվարկներով գյուղատնտեսության հատկացումները մեր հանրապետությունում կազմում են 1.540 մլն ռուբլի՝ իններորդ հնգամյակի 1.321 մլն ռուբլու փոխարեն։ Ընդ որում, բյուջետային միջոցների գերակշռող մասը (707.4 մլն ռ.) հատկացվելու է կապիտալ ներդրումների ֆինանսավորմանը։ Կապիտալ ներդրումների ծավալի մեջ բյուջետային ֆինանսավորումը կազմում է 54 տոկոս այն դեպքում, երբ գյուղատնտեսության ամբողջ ֆինանսավորման մեջ բյուջետային ֆինանսավորումը կազմում է ընդամենը 36 տոկոս։ Կոլտնտեսություններում այդ նպատակների համար հիմնականում ուղղվելու են զուտ եկամուտներից, ամորտիզացիայի մասհանումներից գոյացած գումարները և բանկային վարկը, իսկ պետական գյուղատնտեսական կազմակերպություններում՝ օգուտները, ամորտիզացիայից մասհանումները, բյուջետային միջոցները և բանկային վարկը։

Տասներորդ հնգամյակում զգալի չափով ավելանում են գյուղատնտեսական տեխնիկայի ձեռքբերման հատկացումները։ Նախորդ հնգամյակի համեմատությամբ 21,2 տոկոսով ավելի են ձեռք բերվելու հացահատիկ հավաքող կոմբայններ, 1,2 տոկոսով՝ տրակտորներ, 14,5 տոկոսով՝ բեռնատար ավտոմեքենաներ, իսկ հանքային պարարտանյութերը 1980 թվականին, 1975 թ. համեմատությամբ, հեկտարի հաշվով կավելանան 52 տոկոսով։

Գյուղատնտեսության կապիտալ ներդրումների ծավալը և տեխնիկայի ձեռք բերման ծախսերի հաշվարկները կատարվել են գործող գներով։ Այդ կապակցությամբ պահպանված է մեխանիզմների և սարքավորումների մեծածախ գների և բացթողման գների տարբերությանը բյուջեից հատուցման կարգը։

Գյուղատնտեսական տեխնիկայի, հանքային պարարտանյութերի ու թունաքիմիկատների արտադրության կառուցվածքի և օգտագործման ծավալի, ինչպես նաև դրանց գների փոփոխման կապակցությամբ, գների տարբերության հատուցումը բյուջեից, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելանում է ավելի քան 2 անգամ։ Գյուղատնտեսական ամբողջ տեխնիկայի հատուցումներն ավելանում են 13 տոկոսով։

Կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման հերթական միջոցառումներից է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու, դրա պահպանումը բարելավելու, կոլտնտեսություններն ու սովխոզները մեխանիզատորների կադրերով ապահովելու և նրանց գյուղատնտեսության մեջ ամրացնելու մասին» որոշումը։

Սոցիալ-տնտեսական կարևոր նշանակություն ունեցող այդ փաստաթղթում նշված են մեքենաների ու սարքավորումների շահագործումը, դրանց սպասարկումն ու պահպանումը կատարելագործելու մի ամբողջ շարք միջոցառումներ։ Մեծ ուշադրություն է հատկացվում կադրերի պատրաստականությանը, աշխատանքի և արտադրության կազմակերպման առաջավոր մեթոդների տարածմանը, մեխանիզատորների սոցիալիստական մրցության զարգացմանը։ Մեքենաների արտադրողականության հետագա բարձրացման էական նախադրյալներից է գյուղատնտեսությամբ զբաղվող կազմակերպությունների ինժե-

ներատեխնիկական ծառայությունների ամրապնդումը։ Կարևորվեցին արդյունավետ աշխատանքի բարոյական ու նյութական խթանման միջոցառումները. արտադրական նորմաները գերակատարելու, տեխնիկայի ծառայության ժամկետը երկարաձգելու, երկարատև աշխատանքային ստաժի համար խրախուսվելու են մեխանիզատորները։

Տասներորդ հնգամյակում մեծ ուշադրություն է նվիրվում հողերի մելիորացմանը։ Այդ կարիքների համար նախատեսված է 336 մլն ռուբլի կամ գյուղատնտեսության մեջ ներդրվող կապիտալ ներդրումների 26 տոկոսը։ Կավարտվի Ախուրյանի, Ազատանի, Ջողազի ջրամբարների և մի շարք ջրհան կայանների շինարարությունը։ Կսկսվի Թալինի ջրանցքի երկրորդ հերթի, Բժնիի, Գետիկի ջրամբարների և մի շարք այլ ջրատնտեսական օբյեկտների շինարարությունը։ Իռիգացիոն մեծ աշխատանքներ կծավալվեն Արարատյան դաշտավայրում։ Կաղազերծվեն 27 հազար հեկտար աղուտներ և չորացնելու միջոցով օգտագործելի կդարձվեն ավելի քան 33 հազար հեկտար խոնավ հողեր։ Միայն Արարատյան դաշտավայրի հողերի մելիորացման աշխատանքների ֆինանսավորման համար կհատկացվի 54 մլն ռուբլի բյուջետային միջոցներ։ Հնգամյակի ընթացքում ոռոգելի հողատարածությունները կավելանան ավելի քան 20 հազար հեկտարով։ Մեծ ծավալի տեխնիկական աշխատանքներ կկատարվեն գործող ոռոգիչ սիստեմի տեխնիկական վիճակը բարելավելու նպատակով։

Մելիորատիվ նպատակների համար հատկացվող միջոցների օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու համար իրականացվելու են մի շարք միջոցառումներ։ Ոռոգելի դարձած հողերը պետք է շահագործման հանձնվեն պլանավորվող տարվա նոյեմբերի մեկից ոչ ուշ, հատուկ ուշադրություն է դարձվելու հողերի իռիգացման և ջրաշինարարական կոմպլեքս միջոցառումների իրականացման վրա։ Կուլտուրտեխնիկական միջոցառումները, գյուղատնտեսական հիվանդությունների և վնասատուների, հողերի էռոզիայի դեմ պայքարի աշխատանքները ֆինանսավորվելու են կապիտալ ներդրումների նպատակով հատկացված գումարների հաշվին։ Նշված միջոցառումները նպաստելու են հողերի մելիորացման աշխատանքները ժամկետին ավարտելուն։

Պետական բյուջեից միջոցներ են հատկացվում նաև միջտնտեսային ոռոգման սիստեմների վերանորոգման, ջրային տնտեսության կազմակերպությունների, ագրոքիմիական, զոոանասնաբուժական ծառայությունների կարիքների համար։ Պետական բյուջեի հաշվին խոշոր աշխատանքներ են կատարվելու երկրի հողային կադաստր կազմելու նպատակով։ 1976—1980 թթ. գյուղատնտեսության օպերացիոն ծախսերը հասնելու են 72,8 մլն ռուբլու։

ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրանքների կատարումն ապահովելու կարևոր պայմաններից են գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, անարտադրողական ծախսերի կրճատումը և կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեության շահութաբերության բարձրացումը։ Հնգամյակի սկզբից և եթ նախատեսվել և իրականացվում են խոշոր միջոցառումներ կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման, ֆինանսավարկային հարաբերությունների բարելավման ասպարեզում։ Տնտեսապես թույլ կոլտնտեսությունների ու սովխոզների բանկային վարկերի պարտքերի դուրս գրումը, կաթի պետգնման գների բարձրացումը, գյուղատնտեսական մթերքների վաճառքի կարգի բարելավումը, սովխոզների կապիտալ ներդրումների ֆինանսավորումը և վարկավորման հարցերի լուծումը զգալիորեն պարզեցրին ու հեշտացրին տնտեսության կառավարման գործը, նպաստեցին գյուղատնտեսության արտադրության վերելքին։

Մեծ նշանակություն է տրվում գյուղատնտեսական մթերքների գնման պլանավորման սիստեմի բարելավմանը։ Պետությանը պլանից դուրս հացահատիկի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, մսի, ձվի, կաթի ու բրդի վաճառքի գները բարձրացվում են 150 տոկոսով, որը շահագրգռում է տնտեսություններին՝ ավելացնելու նշված մթերքների արտադրությունը և գերակատարելու գյուղատնտեսական մթերքների պետական վաճառքի կայուն պլանները։

Կայուն պլանների գերակատարման չափերի նորմավորման կապակցությամբ կոլտնտեսությունների և պետական բյուջեի շահերի ճիշտ զուգակցման



նպատակով մասամբ բարձրացվեց գյուղատնտեսական մի շարք մթերքների՝ հացահատիկի, շաքարի ճակնդեղի, մսի, կաթի, ձվի, բրդի գնման գները։ Գների այդպիսի փոփոխության շնորհիվ միայն 1976 թ. երկրում կայուն պլանների կատարման դիմաց վճարումներն ավելացան 2 մլրդ ռուբլով, իսկ պլանից ավելի վաճառքի դիմաց 150 տոկոսով, հատուցումների գումարը կազմեց 1,9 մլրդ ռուբլի։

Կայուն պլանների քաղաքականությունը զգալիորեն բարձրացրեց գյուղատնտեսական մթերքների արտադրության և վաճառքի պլանավորման հեղինակությունը։ Ճիշտ է, բայց լարված կայուն պլանները հնարավորություն կընձեռեն գյուղատնտեսական մթերքների վաճառքի հասույթն ավելի հիմնավորված վերաբաշխել կոլտնտեսությունների ու սովխոզների միջև և պայմաններ ստեղծել դրանց տնտեսության ամրապնդման, թույլ տնտեսություններն առաջավորների մակարդակին բարձրացնելու համար։

Շրջանների և տնտեսությունների գյուղատնտեսական մթերքների գնման պլանները մշակելիս անհրաժեշտ է օբյեկտիվորեն մոտենալ ամեն մի տնտեսության, հաշվի առնել դրանցից յուրաքանչյուրի ռեալ հնարավորությունները և խուսափել չհիմնավորված պլաններ սահմանելուց, հանգամանք, որը կարող է հակառակ ազդեցություն ունենալ տնտեսությունների համաչափ զարգացման վրա։ Ահա թե ինչու գյուղատնտեսական և պլանավորող մարմինները պետք է լուրջ ուշադրություն հատկացնեն մթերքների վաճառքի պլանավորման գործի բարելավմանը։

Սովխոզներն իրենց ընդլայնված վերարտադրությունն իրականացնում են սեփական միջոցների հաշվին։ Այդ միջոցներով են կատարում արտադրական օբյեկտների կառուցման, հիմնական հոտի ձևավորման, շրջանառության միջոցների աճի և այլ միջոցառումների ֆինանսավորումը։ Նշված նպատակների համար, բացի նրանց օգուտներից, ֆինանսավորման աղբյուր են ծառայում նաև բանկային վարկը և բյուջետային հատկացումները։

Նոր ձեռնարկությունների կառուցման, ջերմոցային կոմբինատների, արդյունաբերական եղանակով կաթի արտադրության համալիրների, բնակարանային շինարարության, դպրոցական, առողջապահական ու մանկական հաստատությունների, ակումբների, բաղնիքների և կուլտուր-կենցաղային նշանակության այլ օբյեկտների, մելիորատիվ աշխատանքների, ոռոգման սիստեմի սարքավորումների ֆինանսավորումը բոլոր սովխոզներում, անկախ դրանց տնտեսական հզորությունից, իրականացվում է պետական բյուջեի հաշվին։ Դա կարևոր պայման է սովխոզների տնտեսական հզորության ամրապնդման ու բազմապատկման համար։

1977 թվականից ինչպես սովխոզների, այնպես էլ գյուղատնտեսական մյուս պետական կազմակերպությունների կապիտալ ներդրումների ծավալը սահմանվել է՝ առանց ցույց տալու ֆինանսավորման աղբյուրները։ Դա մեծապես պարզեցրել, հեշտացրել է բարձր շահութաբերությամբ գործող սովխոզների պլանավորման, ինչպես նաև ֆինանսական ռեսուրսների օգտագործման գործը։ Գյուղատնտեսական ձեռնարկությունների վերադաս կազմակերպություններին (տրեստներ, արտադրական վարչություններ, գերատեսչություններ) մեծ հնարավորություններ է ընձեռվել կապիտալ ներդրումների վերաբաշխման, տնտեսական խթանման ֆոնդերում եղած գումարների լրիվ ու արդյունավետ օգտագործման համար։

Բյուջետային ֆինանսավորման օգնության կարիք ունեցող սովխոզների շարքին են դասվում վնասներով աշխատող և մինչև 10 տոկոս շահութաբերություն ունեցող սովխոզները։ Դրանք ներկայացվում են առանձին ցուցակով, որը հաստատում է միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդը։

Վնասով աշխատող և ցածր շահութաբերություն ունեցող սովխոզներին բյուջեից ֆինանսավորելը նպատակամղված է այն բանին, որ կարճ ժամկետում բարձրացվի այդ սովխոզների տնտեսական մակարդակը։ Սակայն պետության կողմից տրվող ֆինանսական հատկացումները սովխոզների ղեկավարներին չի ազատում բյուջետային միջոցները խնայողաբար ու արդյունա-

# ԹՌՉՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԵՆՍԱԲԱՆԱԿԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

**Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

*ԹՌՉՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆՆ անասնաբուծության ամենավաղահաս և բարձրարդյունավետ ճյուղերից է։ Վերջին տասնամյակներում գյուղատնտեսական արտադրության այդ ճյուղն աշխարհի զարգացած երկրներում, ինչպես և Սովետական Միությունում, հզոր վերելք ապրեց։ Դա գիտատեխնիկական առաջընթացի ուղղակի արդյունքն է։ Այդ տարիներին թռչնաբուծությունը կազմակերպվեց ինդուստրիալ հիմունքներով և վերածվեց արդյունաբերական արտադրության տարատեսակի։ Այս ամենը կենսաբանական գիտությունների, մասնավորապես գենետիկայի, ֆիզիոլոգիայի ու սելեկցիայի նվաճումների և ժամանակակից կատարելագործված տեխնոլոգիայի լայն արմատավորման արգասիք է։ Թռչնաբուծության այդպիսի բուռն զարգացման և մթերատվության բարձրացման գործում կարևոր է գյուղատնտեսական թռչունների արժեքավոր կենսաբանական առանձնահատկությունների արդյունավետ օգտագործումը։ Գյուղատնտեսական թռչունները (հատկապես հավերը, որոնք կազմում են ամբողջ թռչնագլխաքանակի 90 տոկոսը), ինչպես ամբողջ աշխարհում, նույնպես և Սովետական Միությունում, տնտեսական առումով աչքի են ընկնում կենսաբանական մի շարք արժեքավոր առանձնահատկություններով։ Դրանք են՝ սաղմնային շրջանի շատ կարճ տևողությունը (ընդամենը 21—22 օր), պտղի զարգացումը բեղմնավորված ձվի մեջ մոր արգանդից դուրս՝ արհեստական ինկուբացիայի պայմաններում, բազմապտղությունը և բազմացման բարձր գործակիցը (տարվա ընթացքում մեկ ածանից կարելի է ստանալ 150—200 և ավելի սերունդ), վաղահասությունը (5—6 ամսական հասակում վառեկներն սկսում են ձվարկումը և արագ բարձրացնում ձվատվության մակարդակը), ամենակերությունը, կերի շատ բարձր մթերահատույցը (թռչունների մատղաշը կյանքի հենց առաջին շաբաթներից ապահովում է կերի շատ բարձր հատուցում՝ 1 կգ քաշաճի վրա ծախսվում է 2,5—3 կերամիավոր, մոտ երկու անգամ քիչ, քան ամենավաղահաս գյուղատնտեսական կենդանունը՝ խոզինը, նյարդային համակարգի հարմարվողականությունը։*

*Ընտանի թռչունների բացառիկ արժեքավոր կենսաբանական առանձնահատկություններից է և այն, որ սեռահասուն շրջանում նրանց ձվարանում գոյանում են մի քանի հազար ձվաբջիջներ։ Մեր լաբորատորիայում կատարված հետազոտություններից պարզվեց, որ չզինված աչքով սեռահասուն հավի ձվարանի արտաքին կեղևային շերտում կարելի է հաշվել ավելի քան 2.000 ձվաբջիջ՝ 1 միլիմետր և ավելի տրամագծով։ Այլ հեղինակների տվյալներով, հաջողվում է չզինված աչքով հաշվել 3.600 և ավելի ձվաբջիջ (իսկ միկրոսկոպիկ չափերի ձվաբջիջների թիվը հասնում է ավելի քան 12.000-ի)։ Չնայած այդ մեծ ռեզերվին, լավագույն ածաններն անգամ իրենց կյանքի ընթացքում (2,5—3 տարում) տալիս են ընդամենը 500—600, բացառիկ դեպքում՝ մինչև*



*1.500 ձու, կամ իրենց ֆիզիոլոգիական պատենցիալի միայն 20—25 տոկոսը։ Ուշագրավ է, որ վերջին տարիներին հայտաբերվել են մի քանի տասնյակ ռեկորդիստներ, որոնց տարեկան ձվատվությունը հասնում է 365-ի, այսինքն՝ նրանք ձվարկում են ամեն օր։ Այս փաստերը ցույց են տալիս, որ հավերը ֆիզիոլոգիապես ունակ են շատ բարձր մթերատվության։ Խնդիրն այն է, որ հայտնաբերվեն և օգտագործվեն ֆիզիոլոգիագենետիկական և կենսաքիմիական այն մեխանիզմները, որոնք կարգավորում, խթանում են թռչունի վերարտադրական գործառությունը՝ ֆունկցիան։*

*Վերը նշվեց թռչնաբուծությունն արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու բացառիկ կարևոր նշանակությունը։ Բայց դրա ընթացքում նկատվում էին նաև մի շարք բացասական երևույթներ։ Մասսայաբար վանդակային պահվածքի փոխադրելու և շահագործման ինտենսիվացման հետևանքով սկսեց թուլանալ թռչունի կենսունակությունը, նվազեց օրգանիզմի դիմադրողականությունը, գլուխ բարձրացրին մի շարք սուր-վարակիչ և շատ վտանգավոր հիվանդություններ (լեյկոզներ, նեյրոլիմֆոմատոզ, Մարեկի հիվանդությունը, ռասպիրատոր միկոպլազմոզ և այլն)։ Վանդակային պահվածքի պայմաններում նկատելիորեն կրճատվեց վառեկների ինտենսիվ ձվատվության տևողությունը։ 150—180 օրական հասակում, երբ սկսվում է վառեկների ձվարկումը, դրանք փոխադրվում են արտադրական տեղամասեր և ընդամենը 8—9 ամիս անց արագ նվազում է դրանց ձվատվությունը։*

*Թռչնաբուծական տնտեսություններն ստիպված են լինում 14—15 ամսական երիտասարդ հավերին խոտանել և մսամթերման հանձնել, քանի որ դրանց հետագա օգտագործումը դառնում է ոչ շահութաբեր։ Ահա թե ինչու թռչունների մթերատու կյանքի երկարացման պրոբլեմը վաղուց արդեն կարևորագույն նշանակություն է ձեռք բերել։ Պետք է ասել, որ այդ պրոբլեմը դեռևս անցյալ դարի վերջերից հետաքրքրել է գիտնականներին. նրանք ուղիներ են որոնում հաղթահարելու թռչունի վերարտադրական գործառության վաղ վրա հասնող ընկճումը։ Սույն պրոբլեմով սկսեցին հետաքրքրվել, հատկապես, մեր դարի երկրորդ կեսից։ Այդ տարիներին արտասահմանում հրապարակվեցին մի քանի տասնյակ աշխատություններ, որտեղ նկարագրված են փորձերի ու դիտարկումների արդյունքները։ Ավելի ուշ՝ 60—70-ական թվականներին, ՍՍՀՄ-ում նույնպես սկսեցին հետաքրքրվել թռչունների մթերատու կյանքի երկարացման հարցերով։*

*Մեր հանրապետությունում առաջին անգամ այդ նպատակով հետազոտություններ ձեռնարկվեցին ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի՝ Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի գյուղատնտեսական կենդանիների և թռչունների բազմացման ֆիզիոլոգիայի և վերարտադրական գործառության խթանման լաբորատորիայում։ Հետազոտությունների նպատակն էր կենսաբանական և ֆիզիկական ուժեղ ներգործիչների, ստրես-գործոնների օգնությամբ փետրափոխության ոչ բնական շրջանում առաջացնել հավերի արհեստական (ստիպողական) փետրափոխություն և վերականգնել մեծահասակ՝ ծերացող թռչունների ընկճված վերարտադրական գործառությունը, մասնավորապես՝ ձվարկումը։ Այդ նպատակով ներկայումս հիմնականում օգտագործվում է փորձարարական երեք մեթոդ— հորմոնալ, քիմիական և կլասիկ։ Մենք ընտրեցինք վերջինը, հաշվի առնելով, որ այն համեմատաբար ավելի պարզ է, իր բնույթով կենսաբանական և միաժամանակ հնարավորություն է ընձեռում տնտեսել կերը, էլեկտրաէներգիան ու բանվորական ուժը։ Այդ մեթոդի էությունը հետևյալն է։ Երբ 14—15 ամսական երիտասարդ հավերի ձվատվությունը, հատկապես վանդակային պահվածքի պայմաններում, սկսում է արագ նվազել, կազմելով ընդամենը 20—25 տոկոս (նորմալ ձվատվության կեսից էլ պակաս), դրանց 3—4 օրով լրիվ զրկում են կերից ու ջրից, միաժամանակ, կիսով չափ կրճատում բնական լուսային օրվա տևողությունը։ Այդ ստրես-գործոնների ազդեցությամբ 6—8 օր անց լիովին դադարում է ածանների ձվատվությունը։ 8-րդ օրվանից թռչունն ստանում է օրական 30 գ խտացրած կեր՝ օրական պահանջի մոտ 20 տոկոսը, 10-րդ օրվանից վերականգնվում*

փոխարինությունների կիրառման տեխնոլոգիան, հատկապես անաս-
նաբուժական և զոոտեխնիկական միջոցառումների տեսանկյունից:

Մոտալուտ հեռանկարային ժամանակաշրջանում տեսական-փորձարարական հետազոտությունների նպատակն է գտնել թռչունների մթերատու կյանքի հետագա երկարացման նոր ուղիներ, ձվարկման երկրորդ ցիկլը դարձնել ռեալ, լիարժեք, միաժամանակ ձգտել իրականացնել ձվատվության երրորդ ցիկլը: Այս հարցերը հաջողությամբ կլուծվեն այն ժամանակ, եթե ձեռք բերված նվաճումները արտադրական լայն փորձարկման ենթարկվեն, հայտաբերվեն թերությունները, մշակվեն լրացուցիչ միջոցառումներ դրանց վերացման նպատակով: Դժբախտաբար, հարկ է ասել, որ թե՛ մեր ողջ երկրում, թե՛ մեզ մոտ՝ Հայաստանում, արդյունաբերական թռչնաբուծության բնագավառի մասնագետները և տնտեսությունների ղեկավարներն այս ասպարեզում դեռևս ռեալ քայլերի չեն դիմել: Ժամանակն է դաշնակցել գիտահետազոտական ինստիտուտների և գիտնականների հետ, գործնական քայլեր կատարել գիտության այդ կարևոր նվաճումն արտադրության մեջ արմատավորելու համար:

Գիտատեխնիկական հեղափոխության հետագա առաջընթացը, մասնավորապես կիրառական ֆիզիոլոգիայի ու կենսաքիմիայի նորանոր նվաճումները հնարավորություն կընձեռեն ավելի խոր թափանցելու կենդանի օրգանիզմի կենսագործունեության նրբին մեխանիզմների ընդերքը, բացահայտելու դրանց առանձնահատկությունները և ուղիներ նշելու օրգանիզմի պոտենցիալ հնարավորությունների առավելագույն օգտագործման համար: Ընտանի թռչունների մթերատու կյանքի երկարացումը կպահանջի նրանց կերակրման, պահվածքի, զոոհիգիենիկ և անասնաբուժական սպասարկման արմատական բարելավում և տեխնոլոգիական պրոցեսների հետագա կատարելագործում: Դրա շնորհիվ հնարավոր կլինի բավարարել ժողովրդական տնտեսության շահերը, բնակչության օրավուր աճող պահանջները թռչնաբուծական մթերքների նկատմամբ:

# ԲԵՌՆԱՏԱՐ ԱՎՏՈՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՇԱՀԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Հ. Վ. ՄԱՔՍԱՊԵՏՅԱՆ**
Տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ընդունած ՍՍՀՄ ժողովրդական
տնտեսության զարգացման 1976—1980 թվականների
հիմնական ուղղություններում նշված է տրանսպորտի կարևոր խնդիրը՝ ավելի
լրիվ և ժամանակին բավարարել ժողովրդական տնտեսության և բնակչության
պահանջմունքները փոխադրումների գործում, արագացնել բեռների առաքումը
և ուղևորների փոխադրումները՝ ամբողջ տրանսպորտային սիստեմի կարողու-
թյան էական մեծացման ու նրա աշխատանքի որակի բարձրացման, ինչպես
նաև երկրի տնտեսական շրջանների միջև տրանսպորտային կապերի բարե-
լավման հիման վրա:

Ավտոմոբիլային տրանսպորտը, լինելով ընդհանուր տրանսպորտի անբա-
ժանելի մասը, իրենից ներկայացնում է աշխատավոր մասսաների աշխատան-
քային և ստեղծագործական գործունեության լայն ասպարեզ: Հայրենական ավ-
տոմոբիլային տրանսպորտի պատմությունն սկսվում է սովետական իշխանու-
թյան առաջին դեկրետներով: 1918 թվականի մայիսի 18-ին Ժողկոմխորհն ըն-
դունեց «Հանրապետության ավտոմոբիլային տնտեսության վերակառուցման
և կենտրոնացման մասին» դեկրետը, որը սկիզբ դրեց ավտոմոբիլային տրանս-
պորտի կենտրոնացված կառավարմանը և նախադրյալներ ստեղծեց դրա նյու-
թական բազայի՝ ավտոմոբիլային արդյունաբերության զարգացման համար:

Մեր երկրի հնգամյակների պատմության մեջ ավտոմոբիլային կարող են
կոչվել առաջին և իններորդ հնգամյակները. առաջին հնգամյակի տարիներին
(1928—1932 թթ.) հիմնվեց ավտոմոբիլային արդյունաբերությունը, իններորդ
հնգամյակում այն հասավ երկու միլիոնի սահմանագծին՝ հինգ տարում աճեց
2,2 անգամ: Ավտոսիրողների համար իններորդ հնգամյակը նշանավորվեց
2,2 անգամ: Ավտոսիրողների համար իններորդ հնգամյակը նշանավորվեց
Վոլգայի ավտոմոբիլային գործարանի կառուցման ավարտով. սկսվեց «Ժիգու-
լիների» մասսայական արտադրությունը: Իսկ տասներորդ հնգամյակում շա-
րունակվեց Կամայի ավտոմոբիլային գործարանի կառուցումը: Առաջին «Կա-
մազները» թողարկվեցին ՍՄԿԿ XXV համագումարի նախօրեին: Երբ ԿԱՄԱԶ-ը
հասնի իր նախագծային հզորությանը, մեկ տարում կարտադրի 150 հազար
ծանր բեռնատար ավտոմոբիլներ և 250 հազար դիզելային շարժիչներ:
ԿԱՄԱԶ-ի շարժիչներով կբանեն ո՛չ միայն բեռնատար ավտոմոբիլները, այլև
ժամանակակից ավտոբուսները: Դրանք հզորագույն շարժիչներ են, որոնց
միագումար հզորությունը 52 միլիոն ձիաուժ է: Բեռնատար ավտոմոբիլների
և ավտոբուսների տեխնիկական ընդհանուր մակարդակը զգալիորեն կբարձրա-
նա, և դա համապատասխանում է ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրանքին.
«Զգալիորեն բարձրացնել ավտոմոբիլների տեխնիկական մակարդակը, որա-
կական և շահագործական ցուցանիշները: Ընդլայնել դիզելների կիրառումն
ավտոմոբիլաշինության մեջ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 280):

Սովետական Միությունում ավտոմոբիլաշինության զարգացումն իրակա-
նացվում է միասնական հեռանկարային տիպաժով, որը տեխնիկայի պատմու-
թյան մեջ նոր հասկացություն է: Ավտոմոբիլների տիպաժը պարբերաբար
մշակվող և բարեփոխվող մեքենաների հեռանկարային շարքն է: Ամեն մի ժա-
մանակաշրջանի համար տիպաժներն արտահայտում են հայրենական ավտո-

մոբիլաշինության զարգացման ամբողջական, առավել նպատակահարմար տեխնիկական քաղաքականությունը։ Ներկայումս գործում է 1971—1980 թթ. տասնամյակի համար հաստատված տիպաժը։ Այսպիսով, իններորդ և տասներորդ հնգամյակներում ավտոմոբիլաշինության բնագավառում տեխնիկական քաղաքականությունն ընդհանուր է։

ՍՍՀՄ տրանսպորտային համակարգում ավտոմոբիլային տրանսպորտի դերն անշեղորեն մեծանում է։ Ներկայումս բեռնատար ավտոմոբիլային տրանսպորտի մասնակցությունը բեռների ընդհանուր փոխադրումներում 80 տոկոսից ավելի է։ Համապատասխան ցուցանիշը Հայկական ՍՍՀ-ի համար ավելի բարձր է և կազմում է 90 տոկոս։ Տասներորդ հնգամյակում ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը ՍՍՀՄ-ում կմեծանա 42, ՀՍՍՀ-ում՝ 49,2 տոկոսով։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում դրված է աշխատանքի արդյունավետության և արտադրողականության առավել բարձրացման խնդիր, որը հատկապես հրատապ է ավտոմոբիլային տրանսպորտի համար. մի բնագավառ, ուր ներգրավված է երկրի ամեն մի տասնչորսերորդ աշխատավորը։ Բանվորների և ծառայողների թվի աճի տեմպերն այս բնագավառում զգալիորեն գերազանցում են ինչպես ժողովրդական տնտեսության մեջ, այնպես էլ տրանսպորտի մյուս բնագավառներում զբաղված բանվորների ու ծառայողների ընդհանուր թվի աճին։ Այդ պատճառով ավտոմոբիլային տրանսպորտի հետագա զարգացումը պետք է ընթանա աշխատանքի արտադրողականության բարձրացման նշանաբանով, որին պետք է հասնել գլխավորապես առաջատար տեխնիկայի կիրառմամբ։

Երկրի ավտոմոբիլային տրանսպորտը զարգանում է չափազանց արագ տեմպերով։ Վերջին քանհինգ տարիների ընթացքում բեռնաշրջանառությունը 20 մլրդ տոննա-կիլոմետրից աճեց 350 մլրդ տոննա-կիլոմետրի, այսինքն՝ ավելի քան տասնյոթ անգամ։ Փոխադրումների ծավալը նույն ժամանակամիջոցում մեծացավ ավելի քան տասնմեկ անգամ և հասավ մինչ այդ աննախադեպ թվի՝ 21 մլրդ տոննայի։ Ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառության և փոխադրումների ծավալի աճի տեմպերը Հայկական ՍՍՀ-ում ավելի բարձր են, որը բացատրվում է հանրապետության աշխարհագրական առանձնահատկություններով և տրանսպորտի մյուս ձևերի համեմատաբար թույլ զարգացմամբ։ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը Հայաստանի կոմկուսի XXVI համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշել է, որ հանրապետության ավտոմոբիլային տրանսպորտի աշխատողները հասել են որոշակի հաջողությունների։ Ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը իններորդ հնգամյակում աճել է ավելի քան երկու անգամ։ Միաժամանակ խիստ քննադատեց այդ բնագավառի էական թերությունները։

Բեռնատար ավտոմոբիլային փոխադրումների միջին հեռավորությունը Սովետական Միությունում կազմում է մոտ 16 կմ, արտասահմանյան մի շարք երկրներում այն՝ մինչև 400—500 և ավելի։ Հեռավոր փոխադրումներում ավտոտրանսպորտի մեծ մասշտաբի օգտագործումը բացատրվում է, տրանսպորտի մյուս ձևերի հետ համեմատած, բեռների փոխադրման առավել մեծ արագությամբ, միջանկյալ պահեստների (իրենց բարդ մեքենայացմամբ հանդերձ) անհրաժեշտության բացակայությամբ, արկղային թանկարժեք տարաները թեթև փաթեթավորումով փոխարինելու հնարավորությամբ և այլն։ Նման փոխադրումների ժամանակ բեռը հասցվում է սկզբնական կետից մինչև վերջնական կետ, այսինքն՝ իրագործվում է «դռնից-դուռ» տրանսպորտային աշխատանքը։ Սակայն միջքաղաքային, միջշրջանային բեռնատար փոխադրումների լայն ծավալման, հետևապես ընդհանուր բեռնաշրջանառության մեջ ավտոտրանսպորտի տեսակարար կշռի մեծացման համար անհրաժեշտ են մեծատոննաժ, բազմասռնի ավտոգնացքներ և համապատասխան ավտոմոբիլային ճանապարհներ։

Բանն այն է, որ ինչպես գոյություն ունեցող, այնպես էլ կառուցվող տե-



ղական ճանապարհների գերակշռող մասն ունի թեթև ծածկույթ։ Ճանապարհների ամրության և դրանց պահպանման նկատառումներով թույլատրելի առավելագույն բեռնվածքը մեկ սռնուց հավասար է վեց տոննայի, իսկ կրկնակի սռնիներից՝ տասնմեկ տոննայի։ Հետևապես, այդ տիպի ճանապարհների վրա անթույլատրելի է ո՛չ միայն մեծատոննաժ ավտոմոբիլների (օրինակ ԲԵԼԱԶ-ների), այլև, այսպես կոչված, Ա խմբի բոլոր ավտոմոբիլների շահագործումը, որոնց սռնային բեռնվածությունը 10 տոննա է։ Այսպիսով, ներկայումս միջքաղաքային և միջշրջանային ավտոմոբիլային փոխադրումների համար կարող են կիրառվել սահմանափակ սռնային բեռնվածություն ունեցող ավտոմոբիլներ, որոնք պատկանում են Բ խմբին։ Կամազի ավտոմոբիլային գործարանը 1976 թվականից արտադրում է թեթևացած տիպի եռսռնային ավտոմոբիլներ և ավտոգնացքներ, որոնց բեռնունակությունը հավասար է 14—16 տոննայի։ Այս ավտոգնացքները լայնորեն կարելի է օգտագործել ընդհանուր օգտագործման ճանապարհների ամբողջ ցանցում։

Հայտնի է, որ ավտոմոբիլային փոխադրումների ծախսերը նվազագույն կլինեն այն դեպքում, եթե պարկի կառուցվածքը ըստ բեռնվածության համապատասխանի բեռնաշրջանառության բնույթին։ Սակայն փոխադրումների պահանջարկի և ավտոմոբիլների արտադրության միջև եղած կապը խախտված է։ Հաշվումները ցույց են տալիս, որ պարկի բեռնունակության առավել նպատակահարմար կազմը պետք է ունենար բեռնունակության հետևյալ շարքը. մինչև 2 տոննա բեռնունակության ավտոմոբիլներ՝ 24 տոկոս, 2—5 տոննա բեռնունակության՝ 45 տոկոս և 5 տոննայից բարձր բեռնունակության ավտոմոբիլներ՝ 31 տոկոս։ Մինչդեռ երկրի ավտոմոբիլային պարկի կազմում գերակշռում են 2,5—5 տոննա բեռնունակություն ունեցող երկսռնանի ԳԱԶ և ԶԻԼ տիպի ավտոմոբիլները (ամբողջ պարկի մոտ 86 տոկոսը), բարձր բեռնունակության ավտոմոբիլները՝ մոտ 7 տոկոս. այդպիսին է նաև մինչև 1 տոննա բեռնունակություն ունեցող ավտոմոբիլների տեսակարար կշիռը։ Երկրի պարկում առայժմ լիովին բացակայում է 1—2 տոննա բեռնունակության ավտոմոբիլների խումբը։

Ավտոմոբիլային փոխադրումների գերակշռող մասը մասսայականն է, որը տնտեսապես առավել շահավետ է կատարել մեծաքանակ պարտիաներով։ Փոխադրումների խոշորացումը և բոլոր մասսայական փոխադրումներում մեծ բեռնունակության ավտոմոբիլների և ավտոգնացքների կիրառումը հնարավորություն կընձեռի կրճատելու կադրերը։ Ուստի, մեծ ուշադրություն է հատկացվում բարձր բեռնունակության ավտոմոբիլների և ավտոգնացքների տեսակարար կշռի բարձրացմանը։

Փոքր բեռնունակության ավտոմոբիլների պահանջարկը ՍՍՀՄ-ում մեծ է և անընդհատ աճում է երկրի տնտեսական զարգացման և բնակչության կենցաղային սպասարկման բարելավմանը զուգընթաց։ Դրանց պակաս լինելու պատճառով փոքրաքանակ փոխադրումների զգալի մասը կատարվում է ԳԱԶ և ԶԻԼ միջին բեռնունակության ավտոմոբիլներով, այսինքն՝ աննպատակ ծախսվում են մետաղ, վառելիք, դողեր։ Ժողովրդական տնտեսության համար առավել անհրաժեշտ է ֆուրգոն տիպի թափքով և 0,3—1 տոննա բեռնունակություն ունեցող ավտոմոբիլները, որոնք նախատեսված են փոքրաքանակ և սպասարկող փոխադրումներ կատարելու նպատակով։

Այդ խմբի վարորդների աշխատանքի արտադրողականությունն ամենացածրն է, իսկ փոխադրումների ինքնարժեքը՝ բարձր։ Մինչդեռ այժմ դրված է ավտոմոբիլային տրանսպորտում աշխատանքի արտադրողականության բարձրացման և դրա հիման վրա վարորդների թվի կրճատման հարցը։ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Դ. Պ. Վելիկանովը նշում է, որ այդ խմբի ավտոմոբիլների ճնշող մեծամասնությունը պետք է շահագործվի առանց պրոֆեսիոնալ վարորդի։ Այդ ավտոմոբիլները պետք է դիտվեն որպես ժողովրդական տնտեսության տվյալ բնագավառը սպասարկողների աշխատանքի մեքենայացման միջոց, որպեսզի տվյալ անձը, որը մասնագիտությամբ վարորդ չէ, իր հիմնական պարտականությունների հետ զուգընթաց, վարի ավտոմոբիլ, բեռնի և բեռնաթափի այն։ Ավտոմոբիլի նման օգտագործման պայ-

մաններում նրա օրական միջին վազքը և արտադրողականությունը կլինեն ավելի ցածր, քան եթե աշխատեր պրոֆեսիոնալ վարորդ: Սակայն տնտեսապես դա արդարացվում է: Այդ իսկ նպատակով առաջիկայում միջնակարգ դպրոցի շրջանավարտները պետք է իմանան ավտոմոբիլ վարել:

Կատարելագործվելու է նաև մինչև 1 տոննա բեռնունակություն ունեցող ավտոմոբիլների կառուցվածքը (այդ թվում՝ առաջին հերթին, ԵՐԱԶ-ների կառուցվածքը): Անհրաժեշտ է շեշտակիորեն բարձրացնել դրանց հուսալիությունը, նվազեցնել տեխնիկական սպասարկումների պահանջը և ավելացնել վազքը՝ սպասարկումից սպասարկում: Վերջին հաշվով, անհրաժեշտ է ստեղծել այնպիսի ավտոմոբիլներ, որոնք ամբողջ ծառայության ժամկետում կարողանան գործել առանց ընթացիկ և կապիտալ նորոգումների: Ցանկալի է, որ նման մեքենաներ արտադրի Երևանի ավտոգործարանը:

Ավտոմոբիլների տեխնիկական շահագործման և նորոգման աշխատատարության իջեցման համար կարևորագույն նշանակություն ունի 1972 թվականին սկիզբ առած սոցիալիստական մրցության նոր ձևը: Մոսավտոզիլ միավորման, Գլավմոսավտոտրանսի և Նամի-ի գիտնականների կոլեկտիվների գիտատեխնիկական համագործակցության պայմանագրով նախատեսված էր մշակել և կենսագործել ԶԻԼ—130 ավտոմոբիլների ընտանիքի հուսալիությունը բարձրացնող միջոցառումներ: Պայմանագրում նախատեսված էր մեծացնել ավտոմոբիլների միջկապիտալ նորոգումների ռեսուրսը մինչև 350 հազար կմ, պակասեցնել պահեստամասերի ծախսը 10—30 տոկոսով, իջեցնել տեխնիկական սպասարկումների աշխատատարությունը 25 տոկոսով: Պայմանագրի կատարման արդյունքների ամփոփումը ցույց տվեց, որ միայն տեխնիկական սպասարկումների և ընթացիկ նորոգումների աշխատատարության իջեցման շնորհիվ 1975 թ. Գլավմոսավտոտրանսի տարեկան տնտեսումը կազմել է 500 հազար ռուբլի:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ խրախուսեց ավտոմոբիլիստների այդ նախաձեռնությունը: Ավտոմոբիլների հուսալիության բարձրացման նման պայմանագրերով հանդես եկան նաև Ուկրաինայի և Բելոռուսիայի արտադրական ու գիտական մի շարք կոլեկտիվներ: Սակայն սոցիալիստական մրցության այս նոր ձևը արժանի արձագանք չգտավ մեր հանրապետության համապատասխան կոլեկտիվներում: Հայգյուղինստիտուտի «Ավտոմոբիլներ» ամբիոնի առաջարկությունները (որտեղ երկար տարիներ հաջողությամբ հետազոտվում են ավտոմոբիլի հուսալիության պրոբլեմները) ՀՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության և Երևանի ավտոմոբիլային գործարանի ղեկավարության կողմից պատշաճ աջակցության չարժանացան:

Ներկայումս ավտոմոբիլների արտադրությամբ ՍՍՀՄ-ը դառնում է աշխարհի առաջատար պետություններից մեկը: Մեր ավտոմոբիլաշինությունը մասսայական ձևով կամ մեծաքանակ սերիաներով արտադրում է 224 մոդելի բեռնատար, 62 մոդելի թեթև մարդատար ավտոմոբիլներ, 35 մոդելի ավտոբուսներ, 47 մոդելի կցորդներ և կիսակցորդներ: Տասներորդ հնգամյակում առանձնապես հրատապ է դառնում բեռնատար ավտոմոբիլների մասնագիտացման պրոբլեմը: Մասնագիտացումն արտահայտվում է նրանով, որ ամեն մի տեսակի բեռի համար կիրառվում են դրա յուրահատկություններին առավել հարմար ավտոմեքենաներ: Մասնագիտացված ավտոմոբիլների տարատեսակներից են ինքնաթափ մեքենաները, լցովի և սորուն տարբեր բեռների համար ավտոմոբիլ-ցիստեռներ, զանազան տեսակի ֆուրգոններ, սառնարաններ, պանելատարներ, կոնտեյներատարներ և այլն:

Մասնագիտացված ավտոմոբիլների լայն կիրառումը տնտեսապես արդյունավետ է: Ունիվերսալ թափքի համեմատությամբ, մասնագիտացված թափքի որոշ ծանրացումը լրիվին փոխհատուցվում է բեռի պահպանմամբ և բեռնման, բեռնաթափման ժամանակի տնտեսմամբ: Այդ պատճառով առաջիկայում, օրինակ, հացահատիկի փոխադրման համար, կկիրառվեն փոշուց, քամուց, անձրևից, արևից պաշտպանող, մասնագիտացված, փակ թափքեր: Այդպիսի թափքում տեղակայված ջեռուցիչը փոխադրման ընթացքում կպահպանի հացահա-



տիկի չորացումը: Արագ փչացող պարենամթերքի փոխադրման համար լայնորեն կկիրառվեն ֆուրգոն տիպի թափքերի սառեցման առաջատար մեթոդներ և այլն:

Հանրապետության ձեռնարկություններն այս բնագավառում որոշակի աշխատանք են կատարում: Այսպես, Երևանի ավտոգործարանի կոնստրուկտորական բյուրոյի կոլեկտիվը զբաղված է թափք-սառնարանների, իզոթերմիկ և այլ տիպի թափքերի ստեղծմամբ: № 4 ավտոտրեստի ձեռնարկությունները հացի և հացամթերքների փոխադրումների համար շահագործում են իրենց ստեղծած ավտոֆուրգոնները: Սակայն անելիքները դեռ շատ են: Օրինակ, չի լուծված հանքային ջրերի փոխադրումը ձմեռային պայմաններում, մանավանդ հեռավոր տարածությունների համար (Ջերմուկ—Երևան), ավտոմոբիլային փոխադրումների ընթացքում անասունների և թռչունների կենդանի քաշի մեծ կորուստներ են լինում մասնագիտացված թափքերի բացակայության պատճառով:

Ըստ երևույթին, ապագայում բեռնատար ավտոմոբիլային տրանսպորտի մասնագիտացման պրոբլեմը կվերաճի ավտոմոբիլային փոխարինվող թափքերի պրոբլեմի: Ավտոմոբիլային փոխարինվող թափքերի, կոնտեյներների և պակետների կիրառումն առավել արդյունավետ է: Դժվար է գերագնահատել հատավաճառ և տարայով ապրանքների լրիվ կոնտեյներացման առավելությունը: Այն հնարավորություն է ընձեռում շեշտակի իջեցնելու ձեռքի աշխատանքի ծախսը բեռնավորման և վերաբեռնավորման աշխատանքների ընթացքում և արագացնելու բեռների փոխադրումը:

Կոնտեյներացումը հնարավորություն է ընձեռում կրճատելու և՛ բանվորական ուժը, և՛ ծածկված պահեստների պահանջը, և՛ պարապուրդները բեռների փոխադրման, վագոնների, ավտոմոբիլների բեռնավորման ու բեռնաթափման աշխատանքների մեքենայացման շնորհիվ և այլն:

Մեր երկրում տարածված են 2,5 և 5 տոննանոց ունիվերսալ կոնտեյներները, սակայն կյանքը պահանջում է առավելապես կիրառել մեծատոննաժ կոնտեյներներով կատարվող փոխադրումները: ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց արտադրել 10, 20, 25 և 30 տոննանոց կոնտեյներներ: Ստեղծվել և շահագործման է հանձնվել կոնտեյներատար ավտոմոբիլներ՝ ԶԻԼ—130 Վ 1 և երկառանցի ՄԱԶ—504 Վ թամբային քարշակներ, եռառանցի՝ երկառանցի կիսակցորդով ՄԱԶ—515 քարշակը: Սակայն այդ ավտոմոբիլներն ունեն առանցքին մեծ բեռնվածություն (պատկանում են Ա խմբին) և կարող են օգտագործվել բացառապես կապիտալ ծածկույթ ունեցող ճանապարհների վրա: Ընթացիկ հնգամյակում Կամայի ավտոմոբիլային գործարանը կսկսի կիսակցորդով թամբային քարշակի արտադրանքը՝ 20 տոննանոց կոնտեյներների փոխադրման համար, որը օգտագործելի է երկրի ամբողջ ճանապարհային ցանցում: Դա բավականաչափ լայն նյութական բազա կհանդիսանա փոխադրումների կոնտեյներացման մասին կուսակցության որոշումների իրականացման համար:

Անհրաժեշտ է հաշվի առնել, որ մասնագիտացված բեռնատար ավտոտրանսպորտը պահանջում է փոխադրումների ռացիոնալ կազմակերպում, միատեսակ տրանսպորտային միջոցների տնտեսապես շահավետ պահպանում, տեխնիկական շահագործումն ու նորոգումը պահանջում են մասնագիտացված փոխադրումների կենտրոնացում՝ ինքնուրույն ավտոտրանսպորտային ձեռնարկություններում:

Փոխադրումների նման կազմակերպումը ավտոմոբիլային տրանսպորտը կդարձնի ժողովրդական տնտեսության տվյալ սպասարկող ճյուղի տեխնոլոգիական պրոցեսի բաղկացուցիչ օղակը:

Վերջին տասնհինգ տարիներին՝ 1960—1975 թթ. ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունն ավելացել է 3,3 անգամ, այն դեպքում, երբ բեռնատար ավտոմոբիլների արտադրությունն աճել է ընդամենը 1,5 անգամ: Ավտոմոբիլային պարկի նման անբավարար համալրումը կասեցնում է ամորտիզացիոն ժամկետներն անցած ավտոմոբիլների դուրս գրումը: Այդ ժամանակաշրջանում 8 և ավելի տարի շահագործվող ավտոմոբիլների տեսակարար կշիռն զգալիորեն ավելացավ: Այդպիսի ավտոմոբիլների շահագործումն անշահավետ և աննպատակահարմար է, որովհետև նրանց արտադրողականու-

թյունը փոքր է, իսկ փոխադրումների ինքնարժեքը՝ մեծ։ Հաշվարկները ցույց են տալիս, որ իններորդ տարին շահագործվող ավտոմոբիլի տարեկան վազքը և արտադրողականությունը երկու անգամ ավելի ցածր են, քան առաջին տարում։ Հիմնականում դրա հետևանքով է, որ ավտոմոբիլային բեռնատար փոխադրումների ինքնարժեքը բավական մեծ է, 10 տոննա/կմ, միջին հաշվով, գնահատվում է մոտ 70 կոպեկ։ Ավտոմոբիլների ծառայության ժամկետի չարդարացված երկարացման հետևանքով ստացվում է պահեստամասերի գերաճ, մեծանում են կապիտալ և ընթացիկ նորոգումների ծախսերը և այլն։

ՍՄԿԿ XXV համագումարը մեծ ուշադրություն դարձրեց աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման, ձեռքի աշխատանքի կրճատման, աշխատանքի կազմակերպման կատարելագործման հարցերի վրա՝ արտադրության և կառավարման բոլոր բնագավառներում։ Դա լիովին վերաբերում է ավտոմոբիլային տրանսպորտին, որտեղ տարբեր գերատեսչությունների, բազմաթիվ գաճաճ տնտեսությունների առկայությունը հանգեցնում է ադմինիստրատիվ կառավարող անձնակազմի աննպատակահարմար ուռճացման։ Բեռնատար ավտոմոբիլների կենտրոնացումն ավտոտրանսպորտային խոշոր տնտեսություններում այժմ խիստ կարևոր է։

Մեր հանրապետությունում գաճաճ ավտոտնտեսությունները հարյուրների են հասնում։ Այդ տնտեսություններում ավտոմոբիլները չափազանց անշահավետ են օգտագործվում։ Ցածր է արտադրողականությունը և բարձր փոխադրումների ինքնարժեքը։ Դա ունի նաև չափազանց անցանկալի սոցիալական հետևանքներ. բարոյալքվում են այդ տնտեսությունների վարորդները, որոնք սովորում են «ազատ» կյանքի և ապօրինի վաստակի։ Մանր և նույնիսկ միջին տնտեսությունների կատարած բոլոր տեսակի փոխադրումները տեխնիկատնտեսական ավելի բարձր ցուցանիշներով կարող են իրականացվել ընդհանուր օգտագործման խոշոր ավտոտրանսպորտային ձեռնարկությունների կողմից։ Դա հնարավորություն կընձեռի նաև շեշտակիորեն կրճատելու գերատեսչական տրանսպորտի աշխատանքում գոյություն ունեցող զուգահեռականությունը։ Առավել նպատակահարմար է կիրառել վարձույթային սկզբունքը՝ ընդհանուր օգտագործման ձեռնարկությունից բեռնատար ավտոմոբիլներ հատկացնելու ձևը (ինչպես դա արվում է ծառայողական պարկերի թեթև մարդատար ավտոմոբիլային պարկերում)։ Այդ դեպքում ավտոմոբիլների տեխնիկապես պատրաստ վիճակում պահելու պարտականությունը կընկներ ընդհանուր օգտագործման ձեռնարկության վրա։

Գերատեսչական բեռնատար փոխադրումներն արդարացվում են միայն այն դեպքերում, երբ դրանք ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղի հիմնական արտադրության տեխնոլոգիայի օրգանական բաղկացուցիչ օղակն են։ Մեր կարծիքով, ավտոտրանսպորտային գերատեսչական տնտեսություններում պետք է կենտրոնացված լինեն միայն մասնագիտացված տրանսպորտային միջոցները, որոնք իրենց հիմնական պարամետրերով ամենից ավելի են համապատասխանում տվյալ փոխադրումներին և ապահովում են դրանց կատարման բարձր արդյունավետությունը (օրինակ՝ հանքաքարի փոխադրումը Քաջարանում, հանքային հանածոների փոխադրումը ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության հանքավայրերից և այլն)։

Հանրապետության ավտոմոբիլային ողջ տրանսպորտի կառավարումը, անկախ դրա գերատեսչական պատկանելությունից, պետք է կենտրոնացվի, առանց որի հնարավոր չէ ավտոմոբիլային տրանսպորտում կատարելապես իրականացնել գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները և ապահովել դրա առավել արդյունավետ օգտագործումը։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության 1976—1980 թթ. զարգացման հիմնական ուղղություններում պարզ ասված է. «Նախատեսել ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի առավել արագ զարգացում... Իրականացնել ավտոտրանսպորտային միջոցների հետագա համակենտրոնացումն ավտոմոբիլային խոշոր տնտեսություններում» (Նույն տեղը, էջ 309)։



# ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՓԱՌԱՎՈՐ ԷՋԵՐ

ՄԱՍՍԱՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ դաստիարակությունը կոմունիստական կուսակցության քաղաքական գործունեության կարևոր բնագավառներից է։ «Պրոլետարական ինտերնացիոնալիզմը,— ասված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, — կոմունիստների գործունեության կարևորագույն, կյանքում ստուգված սկզբունքն է։ Դրանով է տոգորված գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի ողջ բովանդակությունը»։

Պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը դեռևս հեղափոխությունից առաջ, անդրադառնալով բանվոր դասակարգի ինտերնացիոնալ դաստիարակության հարցին, նշել է, «Եթե մենք ուզում ենք սոցիալիզմին հավատարիմ լինել, մենք արդեն այժմ պետք է վարենք մասսաների ինտերնացիոնալիստական դաստիարակությունը...» (Երկեր, հ. 22, էջ 476)։ Կոմունիստական կուսակցության ինտերնացիոնալիստական գործունեության, ժողովուրդների բարեկամության ամրապնդման լենինյան ազգային իմաստուն քաղաքականության արգասիքը նախընթաց ժամանակաշրջանի մեր քաղաքական ու տնտեսական խոշոր նվաճումներն են։ Այդ իրողությունը պատշաճ կերպով արժեքավորեց ՍՄԿԿ XXV համագումարը։ «Անցած կես դարի աշխատանքային մեծագործությունների, Հայրենական մեծ պատերազմի մարտական սխրագործությունների մեջ,— համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը,— աճեց և կոփվեց մեր երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների անխախտ միասնությունը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 112)։

Ինտերնացիոնալ դաստիարակությունն այժմ էլ, զարգացած սոցիալիզմի պայմաններում, վճռական դեր է խաղում ՍՍՀՄ ժողովուրդների բազմակողմանի, բարեկամական կապերի ամրապնդման, կուսակցության XXV համագումարի առաջադրած տնտեսական ու սոցիալ-կուլտուրական վիթխարի խնդիրների լուծման, համաշխարհային հեղափոխական շարժման հետագա զարգացման, միջազգային կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միասնության ամրապնդման ու ծավալման գործում։

Մեր կուսակցության, նրա բոլոր ջոկատների հեղափոխական տարեգրությունը հարուստ է ինտերնացիոնալիզմի լավագույն ավանդույթներով։ Այս առումով խորհրդանշական է նաև Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ինտերնացիոնալիստական գործունեությունը։

Դեռևս դարասկզբին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները, հաշվի առնելով երկրամասի բնակչության բազմազգ կազմը (25 ազգ, ազգություններ ու ցեղեր), ղեկավարվելով ազգային հարցի վերաբերյալ լենինյան տեսությամբ, մասսաներին հմտորեն դաստիարակում էին դասակարգային միասնության, ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։ 1905—1907 թթ. ռուսաստանյան առաջին բուրժուադեմոկրատական հեղափոխության տարիներին երկրամասի պրոլետարիատն ու աշխատավոր գյուղացիությունը բոլշևիկների ղեկավարությամբ դասակարգային համերաշխության, ինտերնացիոնալ համախմբվածության փայլուն օրինակներ ցույց տվեցին։ 1913 թ. փետրվարին Վ. Ի. Լենինը Ա. Մ. Գորկուն գրել է. «Մեզ մոտ և Կովկասում ս.-դ. վրացիները + հայերը + թաթարները + ռուսները աշխատում էին միասին, տասը տարուց ավելի միասնական ս.-դ. կազմակերպության մեջ։ Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում» (Երկեր, հ. 35, էջ 79)։

Հայտնի է, որ Անդրկովկասի աշխատավորության դասակարգային կռիվները միահյուսվում

էին համառուսաստանյան բանվորական շարժմանը, որի հորձանուտն էին նետվել տարբեր ազգությունների ներկայացուցիչներ: Այսպես, Ճիաթուրիի տասը հազարանոց բանվորների 1913 թ. ավելի քան մեկուկես ամիս տևած գործադուլը բնորոշ էր տարբեր ազգությունների բանվորների համերաշխությամբ ու սերտ համագործակցությամբ: Այստեղ դասակարգային պայքարի բովում վառ կերպով դրսևորվեց բանվորների ինտերնացիոնալ միասնությունը. նրանց միջև ազգային երկպառակություն հրահրելու ձեռնարկատերերի փորձերն ու նյութած խարդավանքներն ապարդյուն անցան: Բոլշևիկների ղեկավարությամբ ստեղծված գործադուլային կոմիտեն «Գործադուլավորներին» վերնագրով թռուցիկ էր հրապարակել. «...թաթարները (ադրբեջանցիները— Ս. Ք.), հայերը և հույները ցուցաբերեցին բանվորական համերաշխության զարմանալի կայունություն: Նրանք անսասան տարան բոլոր գրոհները և անգամ հաշտվեցին Ճիաթուրիից վտարվելու մտքի հետ, բայց ձեռնամուխ չեղան աշխատանքի: Այսպես վարվեցին ո՛չ միայն գործադուլավորները, այլև ուրիշ տեղերից եկածները, խաբեությամբ Բաթումից կանչված թաթարներն ու հայերը, իմանալով, որ իրենք բերվել են գործադուլավորների տեղն աշխատելու, եղբայրաբար գրկախառնվեցին նրանց հետ, նրանց ցանկացան հաջողություն և ետ վերադարձան: Այս բոլորը կոտրեց տերերի համառությունը և նրանց միջև արդեն... խոսակցություններ սկսվեցին զիջումների վերաբերյալ...»[1]: Այդ գործադուլը, որը վերջացավ բանվորների հաղթանակով, լավագույն դպրոց էր երկրամասի բազմազգ պրոլետարիատի հետագա պայքարի ծավալման համար: Այն մեկ անգամ ևս վկայեց, որ բանվոր դասակարգի ուժը նրա միասնության մեջ է:

Երկրամասի պրոլետարիատի դասակարգային պայքարի և ինտերնացիոնալ համերաշխության փայլուն օրինակ էր Բաքվի նավթարդյունաբերության բանվորների՝ Ստ. Շահումյանի, Մ. Ազիզբեկովի, Ի. Ֆիոլետովի ղեկավարած ընդհանուր գործադուլը, որն իր վրա սևեռեց համառուսական պրոլետարիատի ուշադրությունը: Բաքվի 50 հազարանոց գործադուլավոր բանվորները 1914 թ. հունիս—հուլիս ամիսներին աներեր պայքարում էին նավթարդյունաբերողների դեմ՝ իրենց առաջադրած ընդհանուր պահանջները կատարելու համար: Գործադուլային կոմիտեի հրապարակած թռուցիկներից մեկում ասված է. «Բոլոր ազգությունների բանվորներ՝ թաթարներ, պարսիկներ, հայեր, վրացիներ, խտացրեք ձեր շարքերը, ձգտեցեք, որպեսզի

[1] «Исторический Архив», № 1, 1953 стр. 124—125:



այժմ աշխատող ֆիրման կանգ առնի, այնտեղ է մեր գործերի ճակատագիրը:

Ընկերնե՛ր, ձեզ է ուղղված ամբողջ ռուսական գիտակից պրոլետարիատի հայացքը: Նա ձեզ եղբայրական ողջույն է հղում, նա ցանկանում է, որ դուք հաղթեք: Խտացրեք շարքերը: Համարձակորեն դեպի պայքար»[1]:

Ուշագրավ է, որ Մոսկվայի, Պետերբուրգի, Թիֆլիսի, Վարշավայի, Ռիգայի, Լոձի և մի շարք այլ արդյունաբերական կենտրոնների բանվորներ իրենց համերաշխությունը հայտնեցին պայքարի դրոշ պարզած Բաքվի հերոսական պրոլետարիատին, դրամական միջոցներ ուղարկեցին և գործադուլ հայտարարեցին: Այդ օրերին Թիֆլիսի բանվորները գրել էին. «Սրտագին ողջույն Բաքվի գործադուլավոր բանվորներին: Մենք՝ Թիֆլիսի տրամվայի երթևեկության մի խումբ բանվորներ, խիստ բողոք ենք արտահայտում այն դաժանությունների դեմ, որոնք ուղղված են գործադուլի ճնշմանը:

Ընկերներ, ձեզ փայլուն հաղթանակ ենք ցանկանում այդ անսովոր մարտում: Ընդունեցեք մեր սրտագին բարևները և համակրանքը, մենք ձեզ հետ ենք»[2]:

Երկրի տարբեր քաղաքներից ու ծայրամասերից ստացված նման բազմաթիվ հուզիչ նամակները ոգևորում էին Բաքվի բանվորներին՝ իշխող կարգերի դեմ մղած պայքարում, հավատ ներշնչում սոցիալական ու ազգային-ազատագրական պայքարի հաղթանակի նկատմամբ: Գործադուլը դադարեցվեց միայն առաջին համաշխարհային պատերազմն սկսվելու պատճառով:

Անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունները հաջողությամբ գլխավորում էին երկրամասի բազմազգ պրոլետարիատի ու աշխատավոր գյուղացիության հեղափոխական պայքարը, դաստիարակում նրանց պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով, դասակարգային համերաշխության, Ռուսաստանի պրոլետարիատի ու նրանց խնդիրների ընդհանրության ոգով և հասնում շոշափելի արդյունքների: Այդ գործունեությունն առավել աշխուժացավ 1917 թ. փետրվարյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ, երբ տապալվեց ցարիզմը, ու երկրում ստեղծվեցին բուրժուա-դեմոկրատական կարգեր: Ռուսաստանն իր պատմության մեջ վիթխարի սոցիալ-քաղաքական առաջընթաց քայլ կատարեց՝ վերջ տալով միահեծանությանը:

Բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակը բարձրացրեց մասսաների հեղափոխական ակտիվությունն ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Անդրկովկասում: Բոլշևիկյան թերթերն արտահայտում էին երկրամասի պրոլետարիատի ազգային և ինտերնացիոնալ շահերը: Ստ. Շահումյանի նախաձեռնությամբ հրատարակվող «Սոցիալ-դեմոկրատ» բոլշևիկյան թերթը պարզ ու հստակ գրում էր. «Բանվորների շահերը միատեսակ են, լինեն նրանք հայ թե ռուս, վրացի թե ադրբեջանցի: Ընկերնե՛ր, դասակարգային պայքարի ձեր փորձը պետք է, որ բացի ձեր աչքերը:

[1] Ադրբեջանական ՍՍՀ, պետական պատմական արխիվ, ֆ. 509, գ. 5, թ. 18:

[2] ՍՍՀՄ պետական կենտ. պատմ. արխիվ, ֆ. 102, գ. 5, մաս 11, հատ. 2, թ. 97:

Ձեր ձեռքը մեկնեք ռուս, ադրբեջանցի, վրացի ընկերներին և նրանց հետ ստեղծեք մի անխորտակելի եղբայրական ընտանիք:

...Հայ բանվորների համար և ընդհանրապես հայ ժողովրդական մասսաների համար ուրիշ ավելի կարևոր բան չկա, քան վճռականորեն... պայքարել ինտերնացիոնալ իդեալների համար:

Հայ ընկերներ, մենք կոչ ենք անում ձեզ... Բազմացնել մեր ինտերնացիոնալ շարքերը»[1]:

Բաքվի, Թիֆլիսի, Ալեքսանդրապոլի, Գանձակի, Բաթումի և այլ բոլշևիկյան կազմակերպությունները թե՛ բանավոր կրակոտ խոսքով, թե՛ մամուլի միջոցով շերտավորված գործունեություն էին ծավալում բանվորների, գյուղացիների, զինվորների, մտավորականության, բոլոր ազգերի աշխատավորության շրջանում: Այդ ժամանակահատվածում կազմակերպական, պրոպագանդիստական, ինտերնացիոնալիստական բազմաբեղուն գործունեությամբ աչքի էին ընկնում Ստ. Շահումյանը, Ն. Նարիմանովը, Ս. Օրջոնիկիձեն, Ս. Կիրովը, Ա. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Ի. Ֆիոլետովը, Յա. Զևինը, Վ. Նանեյշվիլին, Ա. Միկոյանը, Ա. Ամիրյանը, Մ. Օրախելաշվիլին, Ֆ. Մախարաձեն, Ս. Էֆենդիևը, Դ. Բունյաթ-Զադեն, Բ. Սարդարովը, Ստ. Ալավերդյանը, Պ. Արվելաձեն, Գ. Ստուրուան և ուրիշներ:

Անդրկովկասի պրոլետարիատը, բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ, դաշնակցելով աշխատավոր գյուղացիության հետ, պայքար է ծավալում երկրամասում սովետական իշխանության հաղթանակի համար:

Հեղափոխությունից հետո Անդրկովկասում դրությունը բարդացել էր: Միանալով օտարերկրյա իմպերիալիստներին, իշխող դասակարգերը, բուրժուանացիոնալիստական կուսակցությունների հետ միասին, փորձում էին մթագնել աշխատավորների քաղաքական գիտակցությունը: Երկրամասի ռազմահեղափոխական սովետը կոչ արեց բոլոր ազգերի զինվորներին, բանվորներին ու գյուղացիներին՝ միասնաբար, մեկ եղբայրական ընտանիքի նըման պայքարելու ընդհանուր թշնամու՝ բուրժուազիայի դեմ, որը ցանկանում է եղբայրասպան պատերազմ հրահրել:

Հաշվի առնելով հեղափոխական իրադրությունը երկրամասում՝ Կովկասյան գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար Ստեփան Շահումյանը 1918 թ. հունվարի 31-ին հատուկ կոչով դիմում է բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների բոլոր սովետներին, Կովկասի բոլոր բանվորներին ու գյուղացիներին՝ պահանջելով վերջ դնել Կովկասի հակահեղափոխությանը, ստեղծել նոր բանվորագյուղացիական, սովետական իշխանություն: Միաժամանակ, նա անարգանքի սյունին է գամում ռեակցիոն բուրժուական, կալվածատիրական ազգային խորհուրդներին, կոմիսարիատին, բուրժուանացիոնալիստական կուսակցություններին, որոնք տանում էին երկրամասը դեպի հակահեղափոխություն ու ազգամիջյան պատերազմներ: Կոչը վերջանում է հետևյալ խոսքերով. «Կովկասը կանգնած է անդունդի եզրին: Փրկեցեք նրան: Ստեղծեցեք այստեղ ինտերնացիոնալ բանվորագյուղացիական կառավարություն, որը, Ռուսաստանի սովետական կենտրոնների ու ժողովրդական կոմիսարների սովետի հետ սերտ միասնություն ստեղծելով, վերջ կդնի Կովկասի հակահեղափոխությանը և երկրի բանվոր ու գյուղացի բնակչությանը կառաջնորդի դեպի լուսավոր ապագան, դեպի սոցիալիզմի թագավորությունը» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, 1902—1918, Հայպետհրատ, Երևան, 1948 թ., էջ 528):

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների եռանդուն գործունեության շնորհիվ երկրամասի աշխատավորները աստիճանաբար համախմբվում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո, լավ ըմբռնելով, որ իրենց միակ հուսալի բարեկամը ռուսական պրոլետարիատն է, Սովետական Ռուսաստանը: Նրանք միաժամանակ ուժեղացնում էին պայքարը տիրող կարգերի դեմ: Կուսակցական կազմակերպությունները բանվորներին մղում էին գործադուլի, առավել գիտակիցներին ընդգրկում կուսակցության մեջ, կազմակերպում էին զեկուցումներ հատկապես ընթացիկ քաղաքականության հարցերի շուրջ, ղեկավարում գյուղացիական ապստամբությունները կալվածատերերի դեմ: Գյուղացիությունը բոլշևիկների ազդեցությամբ բռնագրավում էր կալվածատերերի, բեկերի հողերը, որոշ դեպքում՝ նրանց ունեցվածքը: Առանձնապես հաջող էր Սարիղամիշի բոլշևիկների պայքարը՝ Ստ. Ալավերդյանի գլխավորությամբ: Սարիղամիշի գյուղական սովետում 1917 թ. դեկտեմբերին քննարկվում էր այն հարցը, թե ո՞ր իշխանությունը ճանաչել՝ Ռուսաստանի ժողկոմսովե՞տը, թե՞ Անդրկով-

[1] «Սոցիալ-դեմոկրատ» № 1, 18 ապրիլի 1917 թ.:

կասի կոմիսարիատը: Չնայած լսեռների ու մենշևիկների ելույթներին, ներկաների մեծամասնությունը քվեարկում է բոլշևիկների օգտին և միակ իշխանությունը ճանաչում սովետական իշխանությունը (տե՛ս «Кавказский рабочий» № 215, 1917 թ. դեկտեմբերի 3):

Սարիղամիշի բոլշևիկյան սովետը նույն բովանդակությամբ որոշում ընդունեց դեկտեմբերի 13-ին: Համադանի կայազորի բոլշևիկյան կազմակերպության ջանքերով վրացի, հայ, օսեթ զինվորները բանաձև են ընդունում ազգային գնդեր կազմակերպելու դեմ և միակ իշխանությունը ճանաչում Ռուսաստանի ժողովրդական կոմիսարների սովետը՝ Լենինի գլխավորությամբ: Անդրկովկասի բոլշևիկյան հնագույն կազմակերպություններից մեկը՝ Հաղպատի կազմակերպությունն իր 1918 թ. հունվարի 20-ի ժողովում, որտեղ ներկա էր 200 մարդ, լսելով Ա. Երիցյանի զեկուցումը Ռուսաստանի նոր սովետական կառավարության, ժողկոմսովետի գործունեության, հաշտության, հողի մասին, միաձայն որոշում է՝ ժողկոմսովետը ճանաչել որպես միակ օրինական իշխանություն, ամեն կերպ աջակցել նրա միջոցառումների կենսագործմանը և Անդրկովկասյան կոմիսարիատն ու նրա վարած քաղաքականությունը համարել հակահեղափոխական, բանվոր դասակարգի և գյուղացիության շահերի համար վնասակար: Նույն ոգով գործում էին Ղարսի, Բորչալուի, Էջմիածնի, Ջալալօղլու և մի շարք այլ սկզբնական կուսակցական կազմակերպություններ:

Բաքվի Պիտոևի, Միրզոևի, Սաբունչիի, Բիբի-Հեյբաթի նավթահորերի սկզբնական կուսակցական կազմակերպությունները բանվորներին իրազեկ էին դարձնում սովետական իշխանության ձեռնարկումներին, հօգուտ նրա ծավալում պրոպագանդիստական գործունեություն, կոչ անում տապալել մուսավաթական հակահեղափոխական կառավարությունը:

Ուշագրավ է Սուխումի բոլշևիկյան կազմակերպության հեղափոխական ակտիվ գործունեությունը: 1918 թ. մարտի սկզբներին, հաշվի անելով, որ Սուխումի օկրուգային իշխանությունը ցրվել է, դրա հետևանքով կատարվում են ո՛չ միայն մթերային ու ֆինանսական քաղաքականության կոպիտ խախտումներ, այլև կողոպուտ, մարդասպանություն և այլ անարխիստական արարքներ, Գուդաուտայի, Գագրայի, Գումիստայի գյուղացիական բոլշևիկյան սովետները կարմիրգվարդիականների օգնությամբ վերցնում են իշխանությունն իրենց ձեռքը՝ ստեղծելով գյուղացիական դեպուտատների օկրուգային սովետ: Բոլշևիկները գրավում են օկրուգային կենտրոնի՝ Սուխումի հեռագրատունը, փոստը և ուրիշ կառավարական հիմնարկություններ: Ստեղծվում է ռազմահեղափոխական կոմիտե, որն ակտիվ գործունեություն է ծավալում բոլոր գյուղերում բոլշևիկյան սովետներ կազմակերպելու համար: Նա կոչ է անում աջակցել Ռուսաստանի սովետական իշխանությանը, միակ ինտերնացիոնալիստական կառավարությանը՝ ժողկոմսովետին, բոլոր ազգերի աշխատավոր ժողովրդի շահերի միակ պաշտպանին:

Սուխումի ռազմահեղափոխական կոմիտեի օրգան «Сухумская правда» թերթը իր 1918 թ. ապրիլի 17-ի № 2-ում մերկացնում է Անդրկովկասյան սեյմի սևհարյուրակային քաղաքականությունը և կոչ անում՝ բոլոր ձևերով ու մեթոդներով, բոլոր հնարավոր միջոցներով աջակցել Ռուսաստանի սովետական իշխանությանը: Նույն թերթը ապրիլի 21-ի առաջնորդողում կոչ է անում՝ անզիջում պայքարել ձեռք բերած ազատության պաշտպանության համար. «...Ինքներդ կառուցեք ձեր նոր կյանքը, բանվորական, գյուղացիական աշխատավոր մասսաներ, միասնաբար գնացեք դեպի ընդհանուր նպատակ՝ դեպի սոցիալիզմ» («Сухумская правда» № 6, 21 ապրիլի 1918 թ.):

Սուխումի ռազմահեղափոխական կոմիտեն մայիսի 11-ին հեռագրում է Վ. Ի. Լենինին և Գ. Կ. Օրջոնիկիձեին, խնդրելով օգնություն ցույց տալ իրենց՝ մենշևիկյան կառավարության զորքերի դեմ մղվող անհավասար մարտերում: Մայիսի 17-ին թերթը կոչ է անում կարմիրգվարդիականներին՝ համառ կերպով պաշտպանել Սուխումի նորաստեղծ սովետական իշխանությունը:

Իրենց ինտերնացիոնալիստական ակտիվ գործունեությամբ աչքի են ընկնում Բաթումի առևտրական նավահանգստի, Անդրկովկասյան երկաթգծի գլխավոր արհեստանոցի, Տկվիբուլիի ածխահանքերի բոլևիկյան կազմակերպություններն ու հեղափոխական բանվորները, Զուգդիդիի, Լեչխումի գավառների, Կոդորի, Սամուրզաքանի, Մանգլիսի, Դուշեթի, Ախալքալակի, Գորիի շրջանների կուսակցական կազմակերպությունները և առաջադեմ գյուղացիները:

Բոլշևիկյան տեղական կազմակերպությունները ՌՍԴ(բ)Կ երկրային կոմիտեի հենարանն էին, լայն մասսաների շրջանում հեղափոխական, ինտերնացիոնալիստական աշխատանք ծավալելու գործում:

1918 թ. ապրիլի 13-ին Կովկասի արտակարգ կոմիսարը զեկուցում է ՌՍՖՍՀ ժողկոմսովետ. «...ադրբեջանական չքավորությունն այժմ համախմբվում է բոլշևիկների և սովետների շուրջը: Բաքվի նավթահանքերում առանձին բախումներ չեն եղել: Հայ, ադրբեջանցի և ռուս բանվորներից կազմված կարմիր գվարդիան պաշտպանում է նավթահորերը»[1]:

Ուշագրավ է, որ երկրամասի գյուղացիությունը ևս ընդգրկվում էր հեղափոխական շարժման մեջ: Փաստերը վկայում են Ադրբեջանի, Վրաստանի ու Հայաստանի գյուղացիական ապստամբությունների և նրանց կողմից կալվածատերերից հողը խլելու, գյուղացիական սովետներ ստեղծելու և իշխանության դեմ զենք գործադրելու մասին: Ադրբեջանական բանվորության ու գյուղացիության շրջանում այդ ժամանակահատվածում ինտերնացիոնալիստական ակտիվ գործունեություն ծավալեց «Հումմեթ» կազմակերպությունը՝ Ն. Նարիմանովի, Մ. Ազիզբեկովի, Հ. Սուլթանովի, Ս. Էֆենդիևի և ուրիշների ղեկավարությամբ:

Հեղափոխության մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը միշտ հետևում և ուղղություն էր տալիս Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ինտերնացիոնալիստական գործունեությանը: Նա պահանջում էր մայրենի լեզվով թարգմանել ու հրատարակել սովետական իշխանության բոլոր դեկրետները:

Լենինի նախաձեռնությամբ 1918 թ. ստեղծվում են հայկական և մուսուլմանական գործերի կոմիսարիատներ, որոնք աշխատավորների շըրջանում ինտերնացիոնալիստական լայն գործունեություն ծավալեցին մայրենի լեզվով: Այդ կոմիսարիատները, բացի հրատարակչական գործունեությունից, Անդրկովկաս էին ուղարկում քաղաքականապես հասուն և փորձառու պրոպագանդիստներ, որոնք մայրենի լեզվով պրոպագանդում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները, բանվորագյուղացիական մասսաներին համախմբում սովետական իշխանության դրոշի ներքո: 1918 թ. հուլիսին Լենինը կարգադրում է ազգությունների գործերի կոմիսարիատին՝ մուսուլմանական գործերի կոմիսարիատի միջոցով պարզելու, թե բանվորագյուղացիական կառավարության ինչպիսի դեկրետներ, որոշումներ են թարգմանվել մուսուլմանական լեզուներով, քանի օրինակ և քանիսն են տպագրվել:

Ինչպես կուսակցական կազմակերպությունների, այնպես էլ ազգային գործերի կոմիսարիատների գործունեությունը հեղափոխականացնող մեծ դեր խաղաց Անդրկովկասի աշխատավորների շրջանում: Վերջիններս գիտակցեցին, որ սոցիալական ու ազգային ազատություն կստանան, ինքնուրույն պետականության կըրհասնեն միայն սովետական իշխանության օրոք և սովետական իշխանության հաղթանակը կարելի է ապահովել միայն բոլոր ազգերի աշխատավորների միասնական պայքարով, միայն Սովետական Ռուսաստանի օգնությամբ: Ռուսաստանի ծայրամասերի, հատկապես Անդրկովկասի աշխատավորներն այդ ինտերնացիոնալիստական գաղափարների ազդեցությամբ շարունակում էին պայքարը՝ հանուն սովետական իշխանության հաղթանակի: «Կուսակցության ղեկավարությամբ,— ասված է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշման մեջ,— դասակարգային մարտերում ծնվում, ամրապնդվում ու կոփվում էին համառուսաստանյան պրոլետարիատի միասնությունն ու մարտական ընկերությունը: Պետրոգրադի և Մոսկվայի, Կիևի և Օդեսայի, Իվանովո-Վոզնեսենսկի և Նիժնի-Նովգորոդի, Խարկովի և Եկատերինոսլավի, Բաքվի և Թիֆլիսի, Մինսկի և Վիլնոյի, Ռիգայի և Ռևելի, Կազանի և Դոնի-Ռոստովի, Դոնբասի և Ուրալի, ուրիշ շատ արդյունաբերական կենտրոնների բանվորները հանդես էին գալիս որպես հզոր ինտերնացիոնալ ուժ»:

Բաքվի բազմազգ բանվորների համաքաղաքային միտինգը 1920 թ. հունվարի 7-ին որոշել էր. «Եթե Ադրբեջանական կառավարությունը չհամաձայնի դուրս գալու Դենիկինի դեմ, այդ ժամանակ Բաքվի պրոլետարիատը, Ադրբեջանի գյուղացիության հետ միասին, մուսավաթական կառավարության գլխի վրայով, իսկ հնարավոր է նրա դիակի վրայով, իր եղբայրական ձեռքը կմեկնի հեղափոխական Ռուսաստանին, ռուսական ու համաշխարհային ռեակցիայի դեմ մղվող պայքարում»[1]:

Դաշնակցության տխրահռչակ տիրապետության դժնդակ օրերին, հայ ժողովուրդը գտնվում էր ֆիզիկական բնաջնջման եզրին: Եվ միայն կոմունիստական կուսակցության, Սովետական Ռուսաստանի եղբայրական, ինտերնացիոնալիստական օգնության շնորհիվ հայ ժողովուրդը ձեռք բերեց ազգային, սոցիալիստական պետականություն:

Հայկական գործերի կոմիսարիատը 1919 թ. Արտաշես Կարինյանի խմբագրությամբ հրատարակում է «Կարմիր դրոշակ» թերթը, որի յուրաքանչյուր համարում լույս էին տեսնում Անդրկովկասի և Հայաստանի աշխատավորության կոմունիստական կազմակերպությունների ուժերի մոբիլիզացմանն ուղղված կոչեր ու լոզունգներ. «Միմիայն պրոլետարական հեղափոխության հաղթանակով կազատագրվեն ճընշված ազգերը», «Կեցցե՛ վրացի, թուրք և հայ պրոլետարների համերաշխ սոցիալիստական կուռ բանակը», «Կորչե՛ն նրա թշնամի բուր-

---

[1] *ՄԼԻ ադրբեջանական մասնաճյուղի արխիվ, ֆ. 5, ց. 1, գ. 21, թ. 1:*

[1] «Труды», *ՄԼԻ ադրբեջ. ֆիլիալ, 1948 թ., գիրք 9, էջ 80:*

ժուաները, բեգերը, ազնվականները» և այլն:

1921 թ. ապրիլի 14-ին Կովկասի կոմունիստներին հղած իր նշանավոր նամակում Վ. Ի. Լենինը գրում է. «Ջերմագին ողջունելով Կովկասի սովետական հանրապետություններին, ես ինձ թույլ եմ տալիս հույս հայտնել, որ նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402):

Անդրկովկասի ժողովուրդները, բոլշևիկների ղեկավարությամբ, պատվով կատարեցին մեծ առաջնորդի պատգամը: Սովետական կարգերի շնորհիվ ժողովուրդների սերտ համագործակցության արդյունքը եղավ այն, որ արմատապես փոխվեց անդրկովկասյան հանրապետությունների դեմքը, երկրամասը ամբողջովին վերածնվեց: Միայն սովետական իշխանությունը բերեց հայ ժողովրդին իսկական ազատություն, անկախություն և հասցրեց ազգային վերածննդի:

Զինված լենինյան ինտերնացիոնալիստական գաղափարներով՝ Անդրկովկասի եղբայրական ժողովուրդներն օգնության ձեռք էին մեկնում միմյանց: 1921 թ. փետրվարի 23-ին Ադրբեջանի և Վրաստանի սահմանամերձ քանդված կամուրջը վերականգնվել էր: Այդ առթիվ կայացավ կառուցողների միտինգ, որին մասնակցում էին ադրբեջանցիներ, հայեր, վրացիներ, ռուսներ և այլ ազգությունների ներկայացուցիչներ: Միտինգը շնորհավորական հեռագիր է հղում Վ. Ի. Լենինին.

«Թանկագին Վլադիմիր Իլյիչ:

Մենք՝ Վրաստանի և Ադրբեջանի սահմանամերձ Փոյլի կամրջի կառուցողներս, բոլոր բանվորներս, գյուղացիներս, նախկին ռազմագերիներս, զինվորներս, Բաքվի ու երկաթուղու բանվորներս, ընդամենը 1.200 մարդ, վերջացնելով նորոգման աշխատանքները, բացելով գնացքների երթևեկությունը, շնորհավորում ենք միջազգային եղբայրության ու համաշխարհային հեղափոխության առաջնորդին, ընկեր Լենինին: Մենք որոշեցինք Փոյլի կամուրջը կոչել լենինյան, որպեսզի այդ կամուրջը լինի վրացական ու ռուսական պրոլետարիատի համատեղ աշխատանքի ու բարեկամության առաջին հուշարձան, երկու ազգերն այնպես միաձուլվեն, ինչպես մենք ամուր միացրինք Քուռ գետի երկու ափը: Թանկագին համաշխարհային հեղափոխության առաջնորդ, ընկեր Լենին, չմոռանանք, որ այդ կամրջով ժողովուրդը ձգտում է դեպի Ձեզ, ամբողջ աշխարհի բանվորների ու գյուղացիների ազատարարը» («Бакинский рабочий», № 43, 23-ը փետրվարի, 1921 թ.):

Հիրավի, առավել բազմազգ և առավել գյուղացիական Անդրկովկասում տարվող ինտերնացիոնալիստական աշխատանքը բոլշևիկյան կուսակցության տիտանական գործունեության օրգանական մասն էր: Սովետական իշխանության հաստատումը Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակն է, որի աննախադեպ նվաճումները լավ են գիտակցում ու գնահատում Անդրկովկասի ժողովուրդները:

Վեց տասնամյակ է անցել Հոկտեմբերի հերոսական օրերից, և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սերմերը ծլել ու ծաղկել են սովետական պարարտ հողում: Մեր բազմազգ ժողովուրդների միջև հաստատվել ու ամրապնդվել է իսկական եղբայրական բարեկամություն: Սովետական եղբայրացած ազգերը, ոգեշնչված հարազատ կուսակցության XXV համագումարի պատմական որոշումներով, նոր բնագծեր են նվաճում մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում:

Ս. Մ. ԲԱՌՅԱՆ



# ՀԱՄԵՍՏ ՆՎԵՐ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԸՆԹԵՐՑՈՂԻՆ

**ԱՄՈՒՐ ԵՎ ՄԻԱՁՈՒՅԼ ԵՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հանրապետությունների եղբայրական բարեկամությունն ու միասնությունը... Ապահովվել է բոլոր ազգերի ու ազգությունների փաստական հավասարությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, ծաղկել է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, հաստատվել է աշխատավոր մարդկանց իսկական եղբայրություն՝ անկախ նրանց ազգությունից, եղբայրություն, որը զոդված է արմատական շահերի, նպատակների և մարքս-լենինյան գաղափարախոսության ընդհանրությամբ:**

**Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թ. հունվարի 31-ի որոշումից քաղված այս հատվածն է ընտրված իբրև բնաբան մեր մեծ Միության եղբայրական հանրապետություններին նվիրված 15 բրոշյուրների համար, որ լույս է ընծայել «Հայաստան» հրատարակչությունը:**

**Ստորև ներկայացնում ենք մեր հզոր ու անպարտ, միաձույլ հայրենիքի 15 հանրապետություններին նվիրված գրքույկները, որոնք ունեն ճանաչողական մեծ նշանակություն:**

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՌՈՒՍԱՍՏԱՆ

ՌՍՖՍՀ-ն Միության մեջ առաջինն է և՛ իր բնակչության թվով ու տարածքով, և՛ բնական ռեսուրսների անսպառ պաշարով ու արդյունաբերական, գյուղատնտեսական արտադրանքով: Առաջին անգամ այստեղ ոտքի ելավ ժողովուրդը ընդդեմ շահագործողների: Պատահական չէ, որ «Ավրորայի» համազարկը որոտաց ռուսական հողում, ուր ծնվեց պրոլետարական հեղափոխության նոր տիպի կուսակցության՝ կոմունիստական կուսակցության առաջնորդը՝ Լենինը: Նրա ղեկավարությամբ Ռուսաստանի բանվոր դասակարգն առաջինը տապալեց ցարիզմն ու բուրժուական իշխանությունը, աշխարհում առաջինը հիմնեց սովետական պետություն և հաղթանակով դուրս գալով դաժան փորձություններից՝ ծավալեց խաղաղ շինարարությունը:

Հնգամյակից հնգամյակ ամրապնդվեց, հարստացավ երկիրը: Աննախընթաց տեմպերով սկսեցին զարգանալ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, առևտուրը, տրանսպորտը: Սակայն ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակմամբ ընդհատվեց երկրի խաղաղ շինարարությունը: Կուսակցության կոչով սովետական բոլոր ժողովուրդները ռուս ժողովրդի հետ ոտքի ելան պաշտպանելու սոցիալիստական հայրենիքը: Գերմանիայի կապիտուլյացիան մի անգամ ևս լիովին դրսևորեց սովետական բազմազգ ժողովուրդների անընկճելի ոգին, սոցիալիստական երկրի անպարտելիությունն ու ուժը:

ՍՍՀՄ-ի ընդհանուր տարածքի ավելի քան $^3/_4$-ը զբաղեցնող ՌՍՖՍՀ-ն պատերազմից հետո ո՛չ միայն կարողացավ վերականգնել իր քայքայված տնտեսությունը, այլև եղբայրական ձեռք մեկնեց մյուս հանրապետություններին:

Ռուսաստանում են գտնվում Միության ամենախոշոր ձեռնարկություններն ու արդյունաբերական կենտրոնները: Սիբիրը, Հեռավոր Արևելքը, Մերձավոր Հյուսիսն այսօր դարձել են գիտության ու կուլտուրայի կենտրոններ: Օրեցօր տարածվում է դարի խոշորագույն ինտերնացիոնալ կառույցը՝ ավելի քան 3.600 կմ երկարությամբ ԲԱՄ-ը, որի միջոցով տնտեսական շինարարության մեջ կընդգրկվի ավելի քան 1 միլիոն քառ. կմ տարածք, այսինքն այնքան, որքան Ֆրանսիան, Իտալիան ու Մեծ Բրիտանիան միասին առնված, կշահագործվեն հումքահանքային հարուստ ռեսուրսներ, կկառուցվեն արտադրական հայյուրա-

վոր նոր ձեռնարկություններ ու համալիրներ, կկենդանանան անմարդաբնակ ամայի շատ տարածություններ: Այդ ամենը մեծապես կնպաստի ո՛չ միայն ՌՍՖՍՀ-ի, այլև ողջ երկրի տնտեսական պոտենցիալի մեծացմանը:

Մեծ է ռուս ժողովրդի բարերար ազդեցությունը հարևան ազգերի ու ազգությունների վրա: Այդ արգասիք է նաև այն բանի, որ մինչև հեղափոխությունը Ռուսաստանը կայսրության առավել զարգացած մասն էր: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներին և կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության սկզբունքներին հավատարիմ ռուս պրոլետարիատը հեղափոխության առաջին իսկ օրերից եղբայրական օգնություն է ցույց տալիս տնտեսական զարգացման ավելի ցածր մակարդակի վրա գտնվող ազգերին ու ժողովուրդներին, այժմ էլ օգնում՝ կենսագործելու ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, տասներորդ հնգամյակի կանխագծումները:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՈՒԿՐԱԻՆԱ

Մեծ է Կիևյան Ռուսիայի դերը արևելասլավոնական ցեղերի միավորման գործում: Չնայած XII դարում Կիևյան Ռուսիան արդեն մասնատվել էր ինքնուրույն փոքր իշխանությունների, այն կարողանում է հերոսաբար դիմագրավել մոնղոլաթաթարական, լեհական, շվեդական արշավանքներին: Իր անկախության համար մղվող պայքարում Ուկրաինային օգնում էր Ռուսաստանը: 1654 թ. Ուկրաինան միացվում է Ռուսաստանին: Հետագայում այստեղ ևս զարգանում է կապիտալիզմը, Դոնբասում և Մերձդնեպրյան շրջանում ստեղծվում են մետալուրգիական գործարաններ, Ուկրաինան դառնում է հացահատիկի խոշորագույն արտադրողը: Սակայն ուժեղանում է և աշխատավորության շահագործումը, որը և հանգեցնում է հեղափոխական շարժման, գյուղացիական ապստամբությունների: Նախահեղափոխական տարիներին Ուկրաինայում գործել են կուսակցության այնպիսի ականավոր անդամներ, ինչպիսիք են՝ Վ. Դ. Բոնչ-Բրուևիչը, Կ. Ե. Վորոշիլովը, Գ. Ի. Պետրովսկին, Ռ. Ս. Զեմլյաչկան, Դ. Ի. Ուլյանովը, Մ. Ի. Ուլյանովան...

Ցարիզմի տապալումից հետո հանրապետության խոշոր քաղաքներում հիմնվում են սովետներ: 1918 թվականի վերջերին արդեն Ուկրաինայի մեծ մասում հաստատվում են սովետական կարգեր:

Միության ոչ մի հանրապետություն տնտեսապես այնքան չի քայքայվել ինտերվենցիայի և Հայրենական մեծ պատերազմի տարիներին, որքան Ուկրաինան: Բուրժուական տնտեսագետները պատերազմի վնասները վերացնելու համար նախատեսել էին 50—100 տարի: Մինչդեռ սովետական ողջ ժողովուրդը և՛ նյութապես, և՛ բանվորական ուժով օգնության հասավ, ու 5 տարում ո՛չ միայն վերականգնվեց Ուկրաինան, այլև աճեց ու հզորացավ, դառնալով Սովետական Միության և ամբողջ Եվրոպայի զարգացած արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու արվեստի, կուլտուրայի խոշոր կենտրոններից մեկը:

Իր տնտեսական հզորությամբ Ուկրաինական ՍՍՀ-ն այսօր երկրորդն է ՍՍՀՄ հանրապետությունների շարքում: Քարածխի, գյուղատնտեսական մեքենաների, սարքավորումների, թեթև ու սննդի արդյունաբերության հիմնական մատակարարն է այն, Միության գլխավոր մետալուրգիական բազան: Ուկրաինան միաժամանակ զարգացած գյուղատնտեսության երկիր է, տալիս է Միության գյուղատնտեսության համախառն արտադրանքի ավելի քան $^1/_5$-ը: Ինչպես մեր ամբողջ բազմազգ հայրենիքի, նույնպես և Ուկրաինայի աշխատավորությունը ջանք չի խնայում կենսագործելու տասներորդ հնգամյա պլանը: Ժողովուրդների լենինյան բարեկամությամբ, նրանց եղբայրական համագործակցությամբ զորացած Ուկրաինան, սովետական մյուս հանրապետությունների հետ, աշխատանքային հերոսագործություններով ընթանում է դեպի ապագան:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԵԼՈՌՈՒՍԻԱ

Ցարական կայսրության ագրարային հետամնաց ծայրամասը՝ անանցանելի ճահիճների ու անտառների երկիր Բելոռուսիան, միայն սովետական կարգերի օրոք արմատապես վերափոխվեց՝ վերածվելով հզոր ինդուստրիայով, առաջավոր գյուղատնտեսությամբ, բարձր զարգացած գիտությամբ ու կուլտուրայով բարգավաճ հանրապետության:

Միության մեջ հայտնի են բելոռուսական հաշվիչ մեքենաները, հեռուստացույցները, ռադիոընդունիչները, լուսանկարչական ապարատները, ժամացույցները, սառնարանները, կապի մեքենաները և այլն:

Հայրենական մեծ պատերազմում դրսևորվեց իր սոցիալիստական նվաճումների, ազատության ու անկախության պաշտպանության համար ոտքի ելած բելոռուս ժողովրդի բուռն ատելությունը բռնության նկատմամբ: Բելոռուսական հողի ազատագրման համար հերոսաբար մարտնչել են նաև հազարավոր հայ զինվորներ, սպաներ ու գեներալներ, որոնցից 8-ը ստացել են Սովետական Միության հերոսի կոչում:

Պատերազմների ավերակներից ու մոխրից է բարձրացել այսօրվա Բելոռուսիայի մայրաքաղաք Մինսկը: Բելոռուս ժողովրդի հերոսական աշխատանքի մարմնացումը, սովետական եղբայրական հանրապետությունների օգնության խորհրդանիշն է այն՝ ճարտարապետական գեղեցիկ համալիրներով ու ընդարձակ հրապարակներով, նորակառույց թաղամասերով: Մինսկը դարձել է գիտության ու կուլտուրայի խոշոր կենտրոն: Մայրաքաղաքի Լենինի պողոտայում է գտնվում այն փոքրիկ փայտյա տնակը, որտեղ 1917 թ. հոկտեմբերի 25-ին (նոյեմբերի 7-ին) Մինսկի սովետը հրապարակեց իշխանությունն իր ձեռքը վերցնելու մասին № 1 հրամանը:

Սերտ են Սովետական Բելոռուսիայի եղբայրական կապերը մեր երկրի մյուս հանրապետությունների հետ: Հայկական ու Բելոռուսական ՍՍՀ-ների միջև հաստատվել և զարգանում են տնտեսական, աշխատանքային ու կուլտուրական կապեր: Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը սոցմրցման մեջ է Մինսկի տրանսֆորմատորների գործարանի հետ: Բելոռուս ժողովրդի ներկայացուցիչներն ակտիվ մասնակցում են Հայաստանի ամենակարևոր ժողովրդատնտեսական կառույցի՝ Արփա—Սևան թունելի շինարարությանը:

Բելոռուսիայի աշխատավորները նոր, փառապանծ գործերով դիմավորեցին մեծ Հոկտեմբերի 60-ամյակը: Ձեռնամուխ լինելով տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարմանը՝ հանրապետության աշխատավորները ձգտում են հասնել արտադրանքի գլխավոր տեսակների առավելագույն աճի:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՈՒԶԲԵԿՍՏԱՆ

Վաթսուն տարի առաջ, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ, նոր դարագլուխ բացվեց ուզբեկ ժողովրդի համար: Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ սովետական պետության հրապարակած «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան» ի լուր համայն աշխարհի հայտարարեց, որ վերացվում է ժողովուրդների միջև դարերով ստեղծված տնտեսական և կուլտուրական անհավասարությունը, դրվում բարեկամության ու փոխօգնության հիմքը:

Կենսագործելով մեր կուսակցության ինդուստրացման քաղաքականությունը՝ Ուզբեկստանի աշխատավորները կառուցեցին մեքենաշինական գործարաններ, էլեկտրակայաններ, քիմիական ձեռնարկություններ, տեքստիլ կոմբինատներ... Ուզբեկստանն այժմ հայտնի է իր արտադրած բամբակե նրբաթելով, մետաքսով, կարակուլե մորթիներով, կանեփաթելով: Ստեղծվել է կուլտուր-լուսավորական, բուժհիմնարկությունների լայն ցանց:

Սովետական կարգերի շնորհիվ ազատագրվեց դարերով իրավազուրկ, անգրագետ ուզբեկ ստրկուհին՝ դառնալով նոր կյանքի կերտման ակտիվ մասնակիցը:

1906 թ. ցարական կառավարության լուսավորության մինիստրության պաշտոնաթերթը հայտնում էր, որ Թուրքեստանյան երկրամասը 4.600 տարի անց միայն կհասնի համատարած գրագիտության: Բայց 60 տարիների ընթացքում այստեղ ո՛չ միայն վերացել է անգրագիտությունը, այլև հիմնվել են երկու համալսարան, 41 տարբեր բուհեր:

1966 թ. ապրիլի 26-ի երկրաշարժը կործանեց, փլատակների վերածեց Ուզբեկստանի մայրաքաղաք Տաշքենդի կեսը: Օգնության հասավ բազմազգ սովետական ժողովուրդը: Կուսակցության ու սովետական կառավարության հոգատարության, Ուզբեկստանի ժողովրդի անձնուրաց աշխատանքի շնորհիվ և մեր երկրի բոլոր ժողովուրդների օգնությամբ կարճ ժամանակամիջոցում վերականգնվեց Միջին Ասիայի արդյունաբերական խոշոր կենտրոն Տաշքենդը:

Անկեղծ ու սրտագին է ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը, ամուր, ինչպես գրանիտ, վճիտ, ինչպես աղբյուրի ջուր, ջերմ ու լուսավոր, ինչպես արևը:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՂԱԶԱԽՍՏԱՆ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը խոշոր շրջադարձ էր ղազախ ժողովրդի կյանքում:

Կանգնելով մեծ Հոկտեմբերի ազատաբար դրոշի ներքո, մեր երկրի մյուս բոլոր ժողովուրդների հետ մեկտեղ, ղազախ ժողովուրդը ևս կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կերտեց նոր, դասակարգային ու ազգային ճնշումից ազատ կյանք:

Մեր երկրի ժողովուրդների եղբայրությամբ ու փոխօգնությամբ վերածնված Ղազախստանը նախկին քոչվորական, խավարի մեջ խարխափող երկրից դարձել է աշխարհին հայտնի հզոր ածխավազանների ու հսկա էլեկտրակայանների, պողպատի ու պղնձի, ցինկի ու անագի, քիմիայի, հացահատիկի, բազմաճյուղ անասնապահության հանրապետություն:

Խամ ու խոպան հողերի յուրացման շնորհիվ օգտագործելի են դարձել միլիոնավոր հեկտար նոր հողատարածություններ: Քոչվոր անասնապահների ու քարավանային կածանների, անծայրածիր անմարդաբնակ տափաստանների ու կիսաանապատների երկիրն այսօր բնորոշվում

է բարձր զարգացած ծանր արդյունաբերությամբ և հացահատիկային հզոր տնտեսությամբ:

Սովետական իշխանության տարիներին վերելք ապրեց ղազախ ժողովրդի կուլտուրան: Ստեղծվեցին մշակույթի մի շարք նոր ճյուղեր, զարգացան ժողովրդական կրթությունը, գիտությունն ու պրոֆեսիոնալ արվեստը:

Բազմազգ է Ղազախական ՍՍՀ-ն: Այնտեղ ապրում են մոտ 110 ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ, որոնք մեկ միասնական ընտանիքում, համատեղ կերտում են նոր կյանքը, իրենց ավանդը ներդնելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում:

Ղազախ ժողովուրդը, վստահ իր լուսավոր ապագային, նորանոր բնագծեր է նվաճում տնտեսական ու կուլտուրական շինարարության ոլորտներում:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆ

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթական դրոշը ծածանվեց նաև Վրաստանում: 1921 թ. փետրվարին Վրաստանում հռչակվեց սովետական իշխանություն: Պատմական կարճ ժամանակամիջոցում Վրաստանը դարձավ բարձր զարգացած արդյունաբերության, բազմաճյուղ հանրային գյուղատնտեսության, ծաղկուն կուլտուրայի երկիր:

Վրացական ՍՍՀ-ն բազմազգ հանրապետություն է: Այնտեղ համատեղ ապրում, աշխատում ու ստեղծագործում են հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, հույներ և աբխազներ: Նրանք ջանք չեն խնայում՝ զարգացնելու հարազատ հանրապետության տնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան:

Վրացական ՍՍՀ-ն Սովետական Միության լավագույն կուրորտային հանրապետություններից է: Բարենպաստ կլիմայական պայմանները, սքանչելի բնությունը հիմք են հանդիսացել առողջարանների, հանգստյան տների, տուրիստական բազաների, պիոներական ճամբարների ստեղծման համար:

Հատկապես հանրաճանաչ են Վրաստանի լեռնալանդշաֆտային-կլիմայական, բալնեո-կլիմայական, բալնեոլոգիական, ծովային ցեխաբուժական առողջարանները:

Վրաստանը երկրին տալիս է բարձրորակ մանգան, պողպատի համաձուլվածքներ ու խողովակներ, ազոտային պարարտանյութեր, էլեկտրաքարշեր, ավտոմոբիլներ ու տրակտորներ, մետաղահատ հաստոցներ, ճշգրիտ սարքեր, կտորեղեն, կոշկեղեն, տրիկոտաժեղեն, թեյ, ծխախոտ, գինի, կոնյակ, պահածոներ:

Հանրապետության զարգացման համար խոշոր նշանակություն ունեն երկրի այլ շրջաններից ներմուծվող ապրանքները— գունավոր մետաղները, անտառանյութը, քիմիկատները. ծավալվում են միութենական այլ, հատկապես Անդրկովկասյան հանրապետությունների՝ Հայաստանի և Ադրբեջանի տնտեսական կապերը:

Սովետական բազմազգ ժողովուրդների եղբայրության, փոխադարձ օգնության շնորհիվ վրաց ժողովուրդը Հոկտեմբերի 60-ամյակը դիմավորեց ժողովրդական տնտեսության և այլ բնագավառներում ձեռք բերած աննախադեպ նվաճումներով:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆ

Հեղափոխությամբ վերածնվեցին մեր մեծ Միության բազում ազգերը: Խավարից, հետամնացությունից նրանք հասան կուլտուրայի ու գիտության բարձունքներին: Այդ ուղին է անցել և Սովետական Ադրբեջանը: Հոկտեմբերյան հեղափոխությունից մի քանի օր անց Բաքվում իշխանությունն անցավ սովետներին. Ստ. Շահումյանի ղեկավարությամբ հիմնվեց Բաքվի ժողկոմխորհը: Սակայն կոմունայի դեմ կատաղի պայքար ծավալեցին բուրժուանացիոնալիստական կուսակցությունները, և ընկավ կոմունան: Մուսավաթականները դաժան դատաստան տեսան կոմունարների հետ: Բայց Բաքվի պրոլետարիատն աննկուն էր, և 1920 թվականի ապրիլի 28-ին նրա պայքարը պսակվեց հաղթանակով. Ադրբեջանում հաստատվեց սովետական իշխանություն:

Ինչպես ողջ երկրում, Ադրբեջանում ևս ծավալվեց սոցիալիստական հասարակության կառուցումը: Աստիճանաբար վերականգնվեց մուսավաթական իշխանության շրջանում քայքայված տնտեսությունը: Սկսեց զարգանալ ինդուստրիան, հատկապես՝ նավթարդյունաբերությունը: Աննախընթաց վերելք ապրեցին գիտությունն ու կուլտուրան:

Ադրբեջանը բազմազգ հանրապետություն է, ուր բնակվում, կողք-կողքի աշխատում են ՍՍՀՄ-ի գրեթե բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները:

Սովետական Ադրբեջանն այսօր հայտնի է գազի, քիմիական, շինանյութերի արդյունաբերությամբ, էլեկտրամեքենաշինությամբ ու սարքաշինությամբ, ձկնարդյունաբերությամբ, իր հանգստի և առողջարանային վայրերով: Նոր ձեռնարկություններ են հիմնվել հանրապետության մինչ այդ հետամնաց շատ շրջաններում, վերափոխվել է և ադրբեջանական գյուղը: Հանրային դաշտերում բանում են ժամանակակից մեքենաները, ստեղծվել է բազմաճյուղ գյուղատնտեսություն:



Առավել պայծառ են հանրապետության հեռանկարները: Կենսագործելով XXV համագումարի որոշումներն ու տասներորդ հնգամյակի կանխագծումները՝ Ադրբեջանի աշխատավորությունը սովետական ողջ ժողովրդի հետ կառուցում է կոմունիզմ:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԼԻՏՎԱ

1940 թ. հուլիսի 21-ին Լիտվայում վերստին հռչակվեց սովետական իշխանություն: 1940 թ. օգոստոսին ՍՍՀՄ Գերագույն սովետն ընդառաջեց Լիտվայի աշխատավորության ցանկությանը, և Լիտվան դարձավ մեր հանրապետությունների եղբայրական ընտանիքի իրավահավասար անդամը:

Սկսվեց Լիտվայի սոցիալիստական վերակառուցման ժամանակաշրջանը: Եղբայրական հանրապետությունների օգնությամբ Լիտվայի աշխատավորությունը ձեռնամուխ եղավ նոր կյանքի կերտմանը: Սակայն ֆաշիստական Գերմանիայի հարձակմամբ խանգարվեց ողջ սովետական ժողովրդի խաղաղ, ստեղծագործ աշխատանքը:

Պատերազմը սովետական բազմազգ ժողովրդի եղբայրության ու բարեկամության մի նոր փորձություն էր: Պատերազմի հաղթական ավարտից հետո լիտվական ժողովուրդը ևս անցավ ստեղծագործ աշխատանքի, քայքայված տնտեսության վերականգնմանը: Ստեղծվեց և հաջողությամբ զարգանում է ծանր արդյունաբերությունը՝ հաստոցաշինությունը, նավաշինությունը, սարքաշինությունը, էլեկտրամեքենաշինությունը, ռադիոտեխնիկան ու քիմիան: Սովետական իշխանությունը նոր հեռանկարներ բացեց լիտվական ժողովրդի հոգևոր մշակույթի, նրա գրականության ու արվեստի, գիտության ծաղկման ու բարգավաճման համար. ակնբախ է առաջընթացը ժողովրդական լուսավորության ասպարեզում:

Զարգացավ նաև Լիտվայի գյուղատնտեսությունը: Լիտվացիները, ինչպես և մեր Միության բոլոր ժողովուրդները, ձեռնամուխ լինելով ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած վիթխարի խնդիրների իրականացմանը, լի են վճռականությամբ՝ նոր լական ավանդ մուծելու սոցիալիստական հայրենիքի հետագա ամրապնդման ու բարգավաճման գործում:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄՈԼԴԱՎԻԱ

Շատ հողմեր են անցել ՍՍՀՄ եվրոպական մասի հարավ-արևմուտքում, Պրուտ և Դնեստր գետերի միջագետքում գտնվող երկրի՝ Մոլդավիայի վրայով— թագավորական-բոյարական Ռումինիայի, հակահեղափոխական նացիոնալիստների իշխանություն, քաղաքացիական կռիվներ սովետական իշխանության ներքին ու արտաքին թշնամիների դեմ... Կռիվներ, ուր իրենց խիզախությամբ, հեղափոխության գործին նվիրվածությամբ աչքի են ընկել այնպիսի լեգենդար հերոսներ, ինչպիսիք են՝ Գ. Կոտովսկին, Ս. Լազոն, Ա. Կրուսերը, Ի. Ֆեդկոն...

1940 թ. օգոստոսին Մոլդավական ինքնավար հանրապետությունը վերածվում է միութենական հանրապետության: Սկսվում է սոցիալ-քաղաքական խոշոր վերափոխությունների շրջանը, որն ընդհատվում է գերմանական ֆաշիզմի դաժան օկուպացիայով: Եղբայրական ժողովուրդների օգնությամբ ազատագրված Մոլդավիայում հետպատերազմյան հնգամյակներում ծավալվում է ժողովրդական տնտեսության աննախընթաց վերելքը:

Ժամանակակից ինդուստրիալ-ագրարային երկիր է Մոլդավիան: Սննդի ու թեթև արդյունաբերության զարգացմամբ աչքի ընկնող այս հանրապետության մակնիշն են կրում մեր Միության տարբեր վայրերի դաշտերը հերկող տրակտորները, բերքահավաք կոմբայնները, արդյունաբերական տարբեր ձեռնարկություններում բանող կենտրոնախույս պոմպերը, էլեկտրաշարժիչները, ուժային տրանսֆորմատորներն ու էլեկտրասարքավորումները: Հատկապես տնային տնտեսուհիների գոհունակությանն են արժանացել մոլդավական սառնարաններն ու լվացքի մեքենաները:

Բարեկամական սերտ կապերով միութենական մյուս հանրապետությունների, հատկապես Ուկրաինայի հետ կապված մոլդավ ժողովուրդը, որ ջանք չի խնայում ՍՄԿԿ XXV համագումարի `առաջադրանքները կատարելու համար, ձեռնամուխ է եղել տասներորդ հնգամյակի խնդիրների լուծմանը: Հնգամյակ, որի հաջող կատարման գրավականն առաջին երկու տարվա հասումներն են ժողովրդական տնտեսության, հասարակական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԼԱՏՎԻԱ

Մեծ Հոկտեմբերի, սովետական ժողովուրդների բարեկամական օգնության շնորհիվ ցարական ինքնակալության, «սեփական» և այլազգի հարստահարիչների դեմ մղած հեղափոխական պայքարով լատիշ աշխատավորները ձեռք բերեցին իրենց ազատությունը: Ահա թե ինչու յուրաքանչյուր լատվիացու համար այնքա՜ն թանկ են մեծ Հոկտեմբերի նվաճումները, Սովետական Միության ժողովուրդների լենինյան բարեկամությունը, խաղաղության պահպանման գործը:

րին հաղթանակն էր Հայրենական մեծ պատերազմում: Իսկ դրանից երեք տարի անց, հոկտեմբերյան արտասովոր ցուրտ մի գիշեր, տարերային աղետը ավերակների վերածեց հանրապետության 100-ամյա մայրաքաղաքի՝ Աշխաբադի և Գյոգթեփեի շրջանները: Փրկիչ միջոցներով շտապօգնություն հասան փրկարար ջոկատները մեր հայրենիքի բոլոր ծայրերից և «առաջին հերթին նրա հարևան հանրապետությունների՝ Ուզբեկստանի, Ադրբեջանի, ինչպես նաև Հայաստանի ու Վրաստանի աշխատավորները»: Կոմունիստական կուսակցության, սովետական կառավարության հոգատարության շնորհիվ թուրքմեն ժողովուրդը կարողացավ կարճ ժամանակամիջոցում վերացնել երկրաշարժի հետևանքները:

Եղբայրական ժողովուրդների անխախտ ընտանիքում ծաղկում, բարգավաճում է Սովետական Թուրքմենիան:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԷՍՏՈՆԻԱ

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի հաջորդ օրը սովետական իշխանություն հաստատվեց Էստոնիայում: Սակայն 1918 թ. հակահեղափոխությունը, օտարերկրյա ինտերվենցիայի օգնությամբ, վերահաստատեց այնտեղ բուրժուական կարգեր: 1940 թ. Էստոնիայում վերականգնվեց սովետական իշխանությունը, ստեղծվեց Էստոնական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը. սկսվեց սոցիալիզմի խաղաղ շինարարությունը, որը, սակայն, կասեցվեց ֆաշիստական զավթիչների հարձակմամբ: Օկուպացվեց Էստոնիան: Ազատագրվելուց հետո, մեր երկրի ժողովուրդների անշահախնդիր փոխօգնությամբ, Էստոնիան բուժում է պատերազմի վերքերը, տնտեսական, հասարակական ու կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզներում հասնում աննախընթաց հաջողությունների:

Քաղաք-թանգարան են կոչում մեր Միության՝ տնտեսապես ու կուլտուրապես ամենազարգացած հանրապետություններից մեկի՝ Էստոնիայի մայրաքաղաք Տալլինը: Միությունում և նրա սահմաններից դուրս հայտնի են տալլինյան էքսկավատորները, կիսահաղորդիչները, սնդիկային ուղղիչներն ու չափիչ սարքերը, համերգային դաշնամուրները, ջահերն ու կահույքը, զբոսանավերը... Էստոնիայում զարգացած են մեքենաշինությունը, թերթաքարային արդյունաբերությունը, էլեկտրաէներգետիկ, շինանյութերի, փայտամշակման, անտառային, տեքստիլ, սննդի արդյունաբերությունը:

Հանրապետության խոշոր քաղաքներից է Տարտուն, որի համալսարանում (Դորպատի) ուսանել է հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը: Նրա տուն-թանգարանի առջև բարձրացող աղբյուր-հուշարձանի վրա կարդում ենք. «Այս աղբյուրի պես և Արարատի նման թող հավերժ լինի բարեկամությունն էստոն և հայ ժողովուրդների, որի սկզբնավորողն էր Աբովյանը»:

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման նոր ուղիներ է բացում տասներորդ հնգամյակը, որը ծառայելու է ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացմանը, գիտության, կուլտուրայի զարգացմանը, արտադրուժերի կատարելագործմանը: Էստոն ժողովուրդը ևս քաջ գիտակցում է, որ ՍՄԿԿ XXV համագումարի, ինչպես և տասներորդ հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքների հաջող կատարման գրավականը ո՛չ միայն ամբողջ ազգային հանրապետության, այլև սովետական ողջ Միության միասնական ժողովրդատնտեսական համալիրի պոտենցիալն է, նրա հզորությունն ու ընձեռած հնարավորությունները:


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

**ԱԴՈՅԱՆ Ա. Դ.** (գլխավոր խմբագիր), **ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.** (պատասխանատու քարտուղար), **ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՋՅԱՆ Թ. Դ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.** (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033 Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 01251 Պատվեր 2609 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$ Տիրաժ 15.900 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 63840 նիշ: Ստորագրված է տպագրության 11/I 1978 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խաչհակյան փող. № 28:*






# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության (Հիմնական օրենքի) նախագծի և նրա համաժողովրդական քննարկման արդյունքների մասին: *(Զեկուցում ՍՍՀՄ Գերագույն սովետի իններորդ գումարման յոթերորդ արտահերթ նստաշրջանում): «Հայաստան» հրատ., 1977:*

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրություն (Հիմնական օրենք): *«Հայաստան» հրատ., 1977:*

ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎ: *Համառոտ կենսագրական ակնարկ: «Հայաստան» հրատ., 1977:*

Մեծ Հոկտեմբերի ուղիով: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

Ս. ՇՏԵՄԵՆԿՈ— Գլխավոր շտաբը պատերազմի տարիներին: *Գիրք 2: «Հայաստան» հրատ., 1977:*

Ծ. ԱՂԱՅԱՆ— Մեծ Հոկտեմբերը և համաշխարհային հեղափոխական պրոցեսը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Մ. ՔՈԹԱՆՅԱՆ— 10-րդ հնգամյակը խոշոր քայլ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

Ս. ԱՄԻՐՅԱՆ— Զարգացած սոցիալիզմի բանվոր դասակարգը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Ի. ԱՐԱԲՅԱՆ— Դատախազական հսկողություն աշխատանքային օրենսդրության կատարման նկատմամբ: *«Հայաստան» հրատ., 1977:*

Ա. ՀԱՅՐԻՅԱՆ— Հարցազրույց 3.060 ընտանիքի հետ: *«Հայաստան» հրատ., 1977:*

Շ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ— Արդի էկոլոգիական իրադրությունը և հասարակական սիստեմները: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

**Влияние Великого Октября на развитие мирового коммунистического движения.** М., Политиздат, 1977.

Ф. Дзержинский—**Избранные произведения.** В двух томах. Т. I. 1897—1923. Изд. 3, перераб. и доп. Т. 2. 1924—1926. М., Политиздат, 1977.

**Феликс Эдмундович Дзержинский.** Биография. М., Политиздат, 1977.

Э. Тадевосян—**Научный коммунизм—социально-политическая теория марксизма.** М., Политиздат, 1977.

В. Колосок — **Горком партии и забота о быте трудящихся.** М., Политиздат, 1977.

**Партийная организация в условиях производственного объединения.** М., Политиздат, 1977.

**Социально-экономические проблемы развитого социализма.** Материалы Всесоюзной научно-теоретической конференции «XXV съезд КПСС и развитие марксистско-ленинской теории». Москва. 4—6 октября 1976 года. М., Политиздат, 1977.

В. Касьяненко—**КПСС—вождь Октября и коммунистического строительства в СССР.** М., «Знание», 1977.

С. Ковалев—**Октябрь и формирование советского человека.** М., «Знание», 1977.

С. Александров—**Мировой революционный процесс—воплощение идей Октября.** М. «Знание», 1977.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՆԾՈՒԽ ԱՅՐՎՈՂ ՇԼԱՄ

*Շլամը, այսինքն՝ նավթանյութեր պարունակող թափոնները, որ պիտանի չեն կրկնօգտագործման համար, նախկինում կա՛մ լցվում էին կոյուղու խողովակները, կա՛մ այրվում ձորակներում։ Այդպիսով աղտոտվում էին շրջակայքը և մթնոլորտը։ Նման թափոնները մեծաքանակ են հատկապես ավտոմոբիլային գործարաններում, ավտոտնտեսություններում ու գարաժներում։*

*Մոսկվայում թողարկվող «Վիխր» սարքերն ունեն երկու տարբերակ. շարժական՝ ժամում 300 կգ արտադրողականությամբ և մշտական, որով նախատեսված է ժամում մշակել մինչև 10 տոննա շլամ։ Նման սարքերում թափոնները նախ ավտոմատ կերպով չորացվում են, ապա՝ այրվում բարձր ջերմաստիճանում և խտացված մաքուր օդն արտանետում մթնոլորտ։ Այդպիսով ապահովվում են օրգանական նյութերի լրիվ օքսիդացումը, անծուխ և անհոտ այրումը և, միաժամանակ, արտանետվող գազերի բաղադրատարրերի խտացումը սանիտարական նորմաներին համապատասխան։*

## ԻՆՉ Է ԵՂԵԼ ՍԱՌՆԱՐԱՆԻՆ

*Սառնարանային ագրեգատի անսարքությունները կարող է հայտաբերել ախտորոշիչ նոր սարքը*

*Սառնարանային ագրեգատի ախտորոշիչ նոր սարքը կարող է հայտաբերել վնասվածքը— փաթույթի ստատորի կտրվածքն ու միացումը, կոմպրեսոր-շարժիչի վիճակը, նորմայով թույլատրելի հզորության պահպանումը։ Հայտաբերված բոլոր թերությունները և վերանորոգման աշխատանքների արժեքն անմիջապես գրանցվում են սարքի լուսատախտակին։ Սարքն ունի էլեկտրաշարժիչի փաթույթում կարճ միացումը բացահայտող բլոկ։ Սարքի միջոցով վնասվածքի վրա ծախսվող ժամանակի կրճատման շնորհիվ տարեկան տնտեսվում է 100 հազար ռուբլի։*

## ՔԱՆԻ ԴԵՌ ՏՐՈՓՈՒՄ Է ՍԻՐՏԸ

*Կրակովի տեխնոլոգիական ակադեմիայի սարքաշինական լաբորատորիայում լեռնափրկարար ծառայության համար նախագծվել է յուրատեսակ ձայնորսիչ, որով փլվածքի ժամանակ կարելի է որոշել հանքափորի տեղը։ Գերզգայուն այդ սարքն ունակ է գրանցելու մարդու սրտի զարկերը՝ մի քանի մետր հաստությամբ հանքաշերտի միջով։ Որևէ խոռոչ հանքապատերին հասցվող զարկերն այն որսում է անգամ 400 մետրից։ Սարքը կարելի է օգտագործել երկրաշարժերից կամ այլ աղետներից վնասված շրջանների բնակչության փրկության համար։*

## ՍՊԻՏԱԿՈՒՑ ԵՎ ԴԵՂԱՆՅՈՒԹ՝ ՋՐԱՄԲԱՐՆԵՐԻՑ

*Անասնապահական ֆերմաներին պրոտեին են մատակարարում Բուլղարիայի հարավում գտնվող ոչ խոր ջրամբարների կասկադները։ Այն ստացվում է տաք հանքաջրերում աճող մանր ջրիմուռներից. հանքաջրերին ավելացվում է աղ։ Նման արտասովոր ֆերմայում բարձր բերք ստանալու տեխնոլոգիան մշակվել է ԲԺՀ, ՉՍՍՀ, ՌԺՀ և ՍՍՀՄ մասնագետների համատեղ ջանքերով։ Բուլղար գիտնականներն այժմ նույն եղանակով սկսել են աճեցնել ջրիմուռների այլ տեսակներ. դրանց բիոմասսայից ստացվում են սնրնդապրոտեին և սպիտակուց, որը հիանալի բուժում է վերքերն ու խոցերը։ Այն կանխում է բորբոքային պրոցեսները և ակտիվացնում հյուսվածքների վերականգնումը։ Կառուցվում է ևս մեկ ջրավազան, որտեղ բացօթյա կաճեցվեն յուրատեսակ մանր ջրիմուռներ՝ որպես վիտամինային արտադրության հումք։ Դրանց բջջահյութը պարունակում է A, B և C վիտամիններ։*

## ՑՈՐԵՆԻ ՆՈՐ ՍՈՐՏ

*Բուլղարիայում տեղական «Ռումելիա» սորտի հիման վրա ստացվել է 10066—44 սելեկցիոն ցորենը։ Այն կիսագաճաճ, պառկելադիմացկուն սորտ է և կայուն՝ հիվանդությունների նկատմամբ։ Չորս տարի նոր ցորենը հեկտարից տվել է, միջին հաշվով, 82 ցենտներ բերք, իսկ 1976 թ.՝ 104,8 ցենտներ։ Այն նաև վաղահաս է, ցրտադիմացկուն. խոշորահատիկ այս ցորենից ստացվում է համեղ լավ հաց։*